ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք





# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922թ.

12



ԴԵԿՏԵՄԲԵՐ • 1986

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ



ՄԱՐԴԿԱՅԻՆ ԳՈՐԾՈՆ. ԱԿՏԻՎԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



ԺԱՄԱՆԱԿ ԵՎ ՄԱՐԴԻԿ



ՀԻՇԱՐԺԱՆ ՏԱՐԵԹՎԵՐ





Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝
գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—36
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11







# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՃԱԿԱՏԻ ԱՌԱՋԻՆ ԳԾՈՒՄ

Ռ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆ ԱՅՍՕՐ առանձնահատուկ ուշադրու-
թյուն է դարձնում հասարակական գիտություններին՝
որպես ընթացող վերակառուցման հաստատուն գաղափարական հիմքի: ՍՄԿԿ
XXVII համագումարի այս հիմնադրույթն իր հետագա զարգացումն ստացավ
«Կոմունիստ» հանդեսի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, երկրի բարձ-
րագույն ուսումնական հաստատությունների հասարակագիտական ամբիոնն-
րի վարիչների համամիութենական խորհրդակցությունում ընկ. Մ. Ս. Գոր-
բաչովի ելույթում: Կուսակցության կողմից հասարակական գիտություններին
ներկայացվող նոր պահանջների, բարձրագույն դպրոցի վերակառուցման կան-
խագծումների առնչությամբ հատուկ կարևորություն են ձեռք բերում հասա-
րակական գիտությունների հետագա զարգացման, բուհական դասավանդման
կատարելագործման, հասարակության առջև ծառացած արդիական հարցերի
լուծման գործում նրանց դերի բարձրացման խնդիրները:
Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1986 թվականի հոկտեմբերյան պլենու-
մում ասվեց, որ ի կենսագործումն «Հայաստանի հանրապետական կուսակ-
ցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան
պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտ-
նի որոշման՝ գաղափարախոսական աշխատանքի մակարդակի բարձրացման,
կոմունիստական դաստիարակության գործի բարելավման ուղղությամբ մեզա-
նում քիչ աշխատանք չի կատարվել: Միաժամանակ ՀԿԿ Կենտկոմի առաջին
քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցման մեջ ամենայն խստապահան-
ջությամբ վերլուծվեցին թերություններն ու բացերը, մատնանշվեցին դրանց
վերացման գործնական ուղիները: Պլենումը մեզ նպատակամղում է զգաստո-
րեն չափակշռել արվածը, բացահայտել նեղ տեղերը, հիմնովին, խորությամբ
վերակառուցել մարդկանց հետ տարվող գաղափարախոսական աշխատանքը,
արմատավորել գործունեության նոր ոճ և մեթոդներ: Ելնելով կուսակցության
առաջադրած խնդիրներից՝ փորձենք վերլուծել հանրապետությունում հասա-
րակական գիտությունների զարգացման ներկա վիճակը:
Ճշմարտությունը պահանջում է ասել, որ վերջին տարիներին դիտվում է
հասարակական գիտությունների շրջադարձի միտում դեպի կյանքի պրակտիկ
պահանջները: ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի փիլիսոփայության և իրա-
վունքի, պատմության ինստիտուտներում, Երևանի պետական համալսարա-
նի հասարակագիտական որոշ ամբիոններում արդեն իսկ որոշակի փորձ է
կուտակված գիտահետազոտական թեմատիկայի արդիականացման, մանրա-
թեմայնության հաղթահարման, գիտահետազոտական պլանների առանցքային
պրոբլեմների կոլեկտիվ մշակման գործում: Հետաքրքրություն են ներկայաց-

նում գիտատեխնիկական առաջընթացի մեթոդաբանական և տեսական պրոբլեմներին նվիրված հետազոտությունները, որոնք կատարվել են հանրապետության փիլիսոփաների և սոցիոլոգների կողմից: Երևանի պետական համալսարանում հաջողությամբ մշակվում են հասարակական հարաբերությունների վերարտադրության, փաստարկման ընդհանուր տեսության, սոցիալիզմի քաղաքական սիստեմի հետագա զարգացման և կառավարման պրոբլեմները: ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտն ավարտել է Հայ ժողովրդի պատմության ութհատորյակի հրատարակման բազմամյա աշխատանքը, մի շարք արժեքավոր գործեր է հրապարակել նվիրված հայ-ռուսական հարաբերություններին: ՀԿԿ Կենտկոմի կուսպատմության ինստիտուտի—ՍՄԿԿ Կենտկոմի մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի մասնաճյուղի կողմից իրականացվեց Վ. Ի. Լենինի Երկերի Լիակատար ժողովածուի 55 հատորների հրատարակումը, որը նշանակալի երևույթ է հանրապետության հասարակական-քաղաքական կյանքում: Սկսված է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Երկերի հրատարակությունը 50 հատորով, Վրաստանի և Ադրբեջանի համանուն ինստիտուտների հետ պատրաստված կոլեկտիվ մենագրությունը նվիրված է ներկա փուլում ազգային կուլտուրաների փոխներձեցման և հարստացման պրոցեսի կուսակցական ղեկավարման հարցերին:

Տնտեսագիտական պրոֆիլի մի շարք ինստիտուտներ ներկայումս ուսումնասիրում են հանրապետությունում հասարակական արտադրության ինտենսիվացման հրատապ պրոբլեմները, ակտիվորեն մասնակցում տնտեսական գիտափորձին: Գիտությունների ակադեմիայի տնտեսագիտության ինստիտուտը պլանավորող մարմիններ է ներկայացրել մի շարք պրակտիկ հանձնարարականներ, որոնք վերաբերում են մեր հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրներին: Ժողովրդական տնտեսության ինստիտուտի մասնագետներն աշխատում են հանրապետության համար կարևոր՝ լեռնային և նախալեռնային շրջանների հետագա զարգացման պրոբլեմի մշակման վրա և այլն:

Նշելով մեր ձեռքբերումները, այդուհանդերձ, հարկավոր է ասել, որ հասարակական, մասնավորապես՝ բուհական գիտության զարգացման գործում, ուր կենտրոնացված է հանրապետության հասարակագետ-գիտնականների կեսից ավելին, առկա են լուրջ թերություններ: Հասարակագիտական ամբիոնների (գիտական կոմունիզմի, կուսպատմության, քաղաքատնտեսության և փիլիսոփայության) գիտահետազոտական թեմատիկ պլաններին մոտիկից ծանոթանալը հանգեցնում է այն եզրակացության, որ դրանց մեծ մասը դեռևս անբավարար է կապված հասարակական պրակտիկային, սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման, ներկա փուլում գաղափարախոսական աշխատանքի կարևորագույն պրոբլեմների մշակման հետ: Բացի այդ, հասարակագիտական մի շարք ամբիոնների գործունեությունը նպատակաուղղված չէ գիտական այն խնդիրների լուծմանը, որոնք դրված են տվյալ բուհի առջև: Ավելին, բացակայում է մասնագիտացումը այն պրոբլեմների հետազոտման գործում, որոնք, ելնելով տվյալ բուհի պրոֆիլից, նպատակահարմար է ուսումնասիրել հենց այդտեղ: Հասարակագիտական ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում այս առնչությամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Մեզ կենսականորեն անհրաժեշտ է հասարակագիտության ամբողջ ճակատի վճռական շրջադարձը՝ դեմքով դեպի պրակտիկան: Կցանկանայի միայն ընդգծել— պրակտիկայի հետ տեսության կապի ամրապնդումը սոսկ ընդհանուր կոչ չէ: Դա հասարակագիտության վերակառուցման բանալին է, գիտնականների, դասախոսների աշխատանքի սկզբունքը»:

Համոզված կարելի է ասել, որ Երևանի պոլիտեխնիկական և ժողովրդական տնտեսության ինստիտուտների հասարակագիտական ամբիոնների գիտական աշխատանքի արդյունավետությունն ու հատույցը զգալիորեն կբարձրանային, եթե նրանք ձեռնամուխ լինեին մշակելու գիտատեխնիկական առաջընթացի, ժողովրդական տնտեսության կառավարման գիտական իմաստավորման



հարցերը: Մեր օրերի գյուղի սոցիալական զարգացման, գյուղում սոցիալիս-
տական ապրելակերպի, ագրոարդի գործունեության տարբեր ասպեկտների,
արդի փուլում կուսակցության ագրարային քաղաքականության և այլ նման
պրոբլեմներ կարող են դառնալ հայկական գյուղատնտեսական ինստիտուտի
հասարակագիտական ամբիոնների հետազոտության առարկա: Նույնը պետք
է ասել Երևանի գեղարվեստաթատերական ինստիտուտի, պետական կոնսեր-
վատորիայի, մանկավարժական բուհերի հասարակագետների մասին, որոնք
կոչված են մշակելու կոմունիստական բարոյականության, աշխատավորների
գեղագիտական դաստիարակության, կուլտուրայի ոլորտում կուսակցության
քաղաքականությանը նվիրված հարցերը:
Բուհերում տարբեր բնագավառների՝ հասարակագիտական, բնագիտական
և տեխնիկական գիտությունների մասնագետների առկայությունը հնարավո-
րություն է տալիս ձեռնարկելու հանրապետության սոցիալ-տնտեսական զար-
գացման կոմպլեքսային, երկարաժամկետ ծրագրերի մշակմանը: Փաստ է, սա-
կայն, որ այդ անհրաժեշտ գործը չունի իր գլխավորող, կոորդինացնող օղակը:
Այստեղ պետք է շահագրգիռ նախաձեռնություն ցուցաբերեն հանրապե-
տության պետպլանը, գիտությունների ակադեմիան և մյուս պլանավորող
կազմակերպությունները:
Հանրապետության բուհերի հասարակագիտական ամբիոններում, հատ-
կապես կուսպատմության, չի հաղթահարված մանրաթեմայնությունը: Ակամա
տպավորություն է ստեղծվում, որ գիտահետազոտական աշխատանքի թեմա-
տիկ ընտրությունը հետապնդում է սոսկ կոնկրետ անձի գիտական աստիճան
տալու նպատակը: Շատ դեպքերում այս կարգի թեմաները չեն մտնում կոմպ-
լեքսային պրոբլեմների մեջ, անգամ մշակելուց հետո էլ չեն դառնում հեղի-
նակի հետագա աճի հիմք, գիտական լուրջ ներդրում: Որոշ ամբիոնների կող-
մից էլ յուրատեսակ ընկալվեց մանրաթեմայնությունը վերացնելու պահանջը.
այդ նույն մանր թեմաները սկսեցին հարմարեցնել «կոմպլեքսային» պրոբ-
լեմի՝ հաճախ մտացածին խորագրերի տակ: Այսպես, հայկական մանկավար-
ժական ինստիտուտի քաղաքատնտեսության ամբիոնի այսպես կոչված կոմպ-
լեքսային թեման իրենից ներկայացնում է անհատական նեղ թեմաների սո-
վորական մի սխեմա: Գոյություն ունի նաև մեկ այլ ծայրահեղություն, երբ
ամբիոնների պլանների մեջ են մտցվում գլոբալ մասշտաբի այնպիսի թեմա-
ներ, որոնց մշակումը առանձին հետազոտողների համար, ինչպես տնտեսա-
գետները կասեին, «ոչ գաբարիտային» բեռ է, և առանց չափազանցության
մի ամբողջ գիտահետազոտական կոլեկտիվ հազիվ գլուխ հանի դրանից: Աս-
վածը վերաբերում է, օրինակ, Երևանի բժշկական, Կիրովականի մանկավար-
ժական ինստիտուտների քաղաքատնտեսության և այլ ամբիոններին: Սակայն
դա առանձնապես չի անհանգստացնում ամբիոնների ղեկավարներին, հավա-
սարապես չի անհանգստացնում և այն, որ որպես հետևանք, բազմաթիվ թե-
մաներ մնում են չկատարված, ձգձգվում են երկար տարիներ՝ այդպես էլ
չհասնելով ավարտի:
Բուհերի հասարակագիտական ամբիոնների գիտահետազոտական աշխա-
տանքի պլանավորման գործում տեղ գտած այս թերությունների զգալի մասը
պետք է բացատրել տվյալ ոլորտում կոորդինացման անթույլատրելի ցածր
մակարդակով, ավելի ճիշտ՝ դրա բացակայությամբ: Հանրապետության գի-
տությունների ակադեմիայի պատմության և էկոնոմիկայի, փիլիսոփայության
և բանասիրության բաժանմունքների բյուրոները, Հայկական ՍՍՀ բարձրա-
գույն կրթության մինիստրությունը, որոնց վրա է դրված հասարակական գի-
տությունների բնագավառում գիտահետազոտական աշխատանքի կոորդինաց-
ման խնդիրը, առայժմ աշխատում են անարդյունավետ՝ լրջորեն չմոտենալով
այս կարևոր հարցին: Իսկ ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինս-
տիտուտի կոորդինացման խորհուրդը, որը կոչված է համակենտրոնացնելու
կուսպատմության բնագավառի գիտահետազոտական աշխատանքները, պետք
է բարձրացնի պահանջկոտությունը բուհերի ՍՄԿԿ պատմության ամբիոնների
գիտական գործունեության նկատմամբ:

Մեզ չի կարող այսօր բավարարել նաև կատարվող շատ ուսումնասիրությունների գիտական որակը։ Պետք է խոստովանել, որ մի շարք ամբիոնների գիտահետազոտական աշխատանքների արդյունքը պարզապես չի համապատասխանում այսօրվա աճող պահանջներին։ Եզակի չեն փաստերը, երբ իսկական հետազոտական որոնումը, հասարակական պրակտիկայի և կյանքի երևույթների տեսական իմաստավորումը փոխարինվում են մակերեսային դատողություններով, հանրահայտ դրույթների հոլովումով, երբեմն էլ՝ անպտուղ բանավեճերով։

Վերջին տարիներին աճել է պատմաբանների և լայն հասարակայնության հետաքրքրությունը հայ ժողովրդի ծագման, Ուրարտուի, հայկական պետականության ձևավորմանը վերաբերող հարցերի շուրջը։ Անժխտելի է, որ հատկապես մեր ժամանակներում ժողովրդի պատմության թեկուզ ամենահեռավոր իրադարձություններն իսկ ունեն ոչ միայն ճանաչողական և գիտական, այլև քաղաքական նշանակություն։ Հասկանալի է նաև, որ իր ժողովրդի պատմությամբ իրավունք ունի հետաքրքրվելու ամեն ոք։ Սակայն այս հարցում պարզություն մտցնելու գործում իրենց հեղինակավոր խոսքը պետք է ասեն գիտությունների ակադեմիայի համապատասխան բաժանմունքները, մեր ճանաչված պատմաբաններն ու լեզվաբանները։ Սիրողական մեկնաբանություններից զերծ լինելու նպատակով, անհրաժեշտ է, որ գիտությունների ակադեմիայի նախագահությունը առանց հապաղելու քննարկման առարկա դարձնի այս կարևոր խնդիրը՝ տալով իր եզրակացությունները։ Երբեմն այս հարցերում անհրաժեշտ զգուշություն չեն ցուցաբերում մեր մասսայական ինֆորմացիայի միջոցները։ Հրատապ լուծում պահանջող այս հարցերին գրեթե չեն արձագանքում գիտական պարբերականները։ Դա, անշուշտ, վկայում է մեզանում գիտական քննադատության բնագավառում գործերի անմխիթար վիճակի մասին։ ՀԿԿ Կենտկոմի 1986 թվականի հոկտեմբերյան պլենումում ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը նշեց. «Առանձին գիտաշխատողներ մեթոդաբանական թույլ պատրաստվածության պատճառով խորապես ու համակողմանիորեն չեն քննում թեման, միշտ չէ, որ հանդես են բերում խիստ գիտական, դասակարգային մոտեցում։ Այս սկզբունքները չկիրառելը հասցնում է սխալների, չհիմնավորված եզրակացությունների, որոնք հաճախ աղավաղում են գիտության կողմից արդեն սահմանված կոնցեպցիաները։ Եվ մտահոգություն է պատճառում այն, որ գաղափարապես խոցելի աշխատությունները ոչ միշտ են սկզբունքային քննադատության ենթարկվում գիտական պարբերականներում, գիտական հիմնարկների կոլեկտիվներում»։

Անհրաժեշտ է, որ մեր հասարակագիտական ինստիտուտների և բուհերի ղեկավարները գիտահետազոտական աշխատանքների արդյունքները քննարկելիս հանդես բերեն սկզբունքայնություն և պահանջկոտություն, կոլեկտիվներում ստեղծեն իսկական ստեղծագործական մթնոլորտ, զարգացնեն առողջ, գործին օգնող, օբյեկտիվ քննադատությունը։ Այն պետք է օգնի մեզ վերակառուցելու գիտական աշխատանքի դրվածքը կուսակցության այսօրվա խնդիրներին համապատասխան՝ հատուկ պահանջկոտություն ցուցաբերելով հրապարակվող աշխատությունների գաղափարական մակարդակի բարձրացմանը, սոցիալական հետազոտությունների իրական արդյունքների օբյեկտիվ գնահատմանը։ Հատկապես լուրջ ուշադրություն պետք է դարձվի պատմական երևույթների և անհատների, ազգային ազատագրական շարժումների, քաղաքական կուսակցությունների գնահատման ժամանակ դասակարգային մոտեցմանը, հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների նպատակաուղղված պրոպագանդմանը, դաշնակցության հայրենադավ քաղաքականության մերկացմանը։

Արդի պայմաններում առանձնապես կարևորվում է կոնկրետ սոցիոլոգիական հետազոտությունների տվյալների ավելի լայն օգտագործումը։ Մեզ մոտ սոցիոլոգիական ուսումնասիրություններ տարվում են մի շարք գիտական հիմնարկներում՝ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտում, Երևանի պետական համալսարանում, հնագիտության ու ազգագրության ինստիտուտում և



այլն։ Այս բնագավառում առաջին հերթին աչքի են զարնում կոորդինացիայի բացակայությունը, կատարվող հետազոտությունների գերատեսչական նեղ շրջանակները, դրանց անսիստեմ բնույթը։ Ձգձգվում են կատարված հետազոտությունների տվյալների մշակումն ու հրատարակումը։ Դեռևս 70-ական թվականների կեսերին հնագիտության և ազգագրության ինստիտուտի կողմից Երևանի բնակչության մասին կատարված էթնոսոցիոլոգիական օգտակար հետազոտությունը հրատարակվել է միայն ընթացիկ տարում, այսինքն 10 տարի անց, երբ արդեն իսկ ժամանակն է կրկնել այն։ Ըստ երևույթին, հասունացել է հանրապետությունում միասնական սոցիոլոգիական ծառայություն ստեղծելու անհրաժեշտությունը, որն ունենար համապատասխան նյութատեխնիկական բազա և ընդունակ լիներ կոնկրետ խորհուրդներ տալու հանրապետության կուսակցական, սովետական և պլանային մարմիններին։

Հարկավոր է բարձրացնել նաև սովետական սոցիոլոգիական ասոցիացիայի հայկական բաժանմունքի դերն այդ բնագավառում, աշխատանքների կոորդինացման, նրանց մակարդակի բարձրացման գործում։

Հասարակագիտական ամբիոնների վարիչների խորհրդակցությունում հատուկ նշվեց նաև բուհական ուսուցման և դաստիարակության պրոբլեմների հետազոտությունների ընդլայնման անհրաժեշտությունը։ Սակայն ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հանրապետության հասարակագիտական ամբիոնների գիտահետազոտական աշխատանքներում չափազանց քիչ են այն թեմաները, որոնք առնչվում են երիտասարդության և ուսանողների գաղափարադաստիարակչական աշխատանքի հիմունքների մշակմանը, այդ աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործմանը, համապատասխան մարմինների համար կոնկրետ հանձնարարականների մշակմանը։ Այս բնագավառում հարկ եղած ակտիվություն չեն դրսևորում մանկավարժական բուհերի ամբիոնները, որոնք, թվում է, այդ ուղղությամբ գիտական աշխատանքը պետք է համարեին իրենց առաջնահերթ խնդիրը։

Հայտնի է, որ հասարակական գիտությունների դասավանդումը ուսանող երիտասարդության գիտամատերիալիստական աշխարհայացքի և քաղաքացիական հատկանիշների ձևավորման հիմնական ուղիներից մեկն է։ Այդ նպատակն է հետապնդում հանրապետության բուհերում դասավանդման ձևերի ու մեթոդների կատարելագործման ուղղությամբ տարվող աշխատանքը։ Սակայն օբյեկտիվությունը պահանջում է ասել, որ հասարակական գիտությունների դասավանդման ներկա վիճակը չի համապատասխանում այսօրվա պահանջներին։ Ուսումնասիրությունները վկայում են, որ հասարակական գիտությունների դասավանդման պրոցեսում գիտական ու սոցիալական նորությունները պատշաճ չափով չեն օգտագործվում, որի հետևանքով կարդացվող դասընթացները անհրաժեշտ հետաքրքրություն չեն առաջացնում։ Հարկ է նաև նկատել, որ դասավանդման ավանդական, ինֆորմատիկ ձևերը, հիրավի, անկարող են ընդլայնելու ուսանողների հետաքրքրությունների շրջանակը։ Դասախոսը ձգտում է որքան հնարավոր է շատ ինֆորմացիա հաղորդել ուսանողին, ուսանողն իր հերթին ճգնում է հիշողության մեջ պահել այդ ինֆորմացիան՝ հետ վերադարձնելու պայմանով։ Ստացվում է այնպես, որ քննության ընթացքում հայտնաբերվում է ոչ թե ուսանողի ինքնուրույն դատելու ունակությունը, այլ առաջին հերթին նրա հիշողության կարողությունը։ Սա հին պրոբլեմ է, որը գալիս է դպրոցից և շարունակվում բարձրագույն ուսումնական հաստատությունում։ Հարցը ինքնուրույն մտածելակերպի, պրոբլեմների ինքնուրույն իմաստավորման, սեփական դատողություններ անելու ունակություն դաստիարակելու մասին է։ Սա անչափ կարևոր խնդիր է հատկապես մեր ժամանակներում, երբ աշխարհայացքային հարցերը դարձել են գաղափարական սուր պայքարի ասպարեզ։ Այսօր մեզ հարկավոր է հիմնովին վերանայել դասավանդման ձևերն ու մեթոդները, վերակառուցել հասարակական գիտությունների դասավանդման ողջ համակարգը։ Դասավանդման որակի բարձրացման գործում չափազանց մեծ է ուսուցման տեխնիկական միջոցների նշանակությունը, որոնք, դեռևս գործնական կիրառություն չեն ստացել մեր

հասարակագիտական ինստիտուտներում և բուհական ամբիոններում։ Անհրաժեշտ է միջոցներ ձեռնարկել և կարճ ժամանակամիջոցում ամբիոններն ու կաբինետները հարստացնել դիտողական ձեռնարկներով, ուսումնական ֆիլմերով, էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայով։

Հայտնի է, որ ուսումնադաստիարակչական պրոցեսի կենտրոնական դեմքը դասախոսն է։ Նրա ակտիվ, ստեղծագործ աշխատանքով է պայմանավորված լավագույն մասնագետների պատրաստման, նրանց կոմունիստական դաստիարակության բարդ և պատասխանատու խնդիրների հաջող լուծումը։ Այս առումով անհետաձգելի հարց է դասախոսների աշխատանքի գնահատման գոյություն ունեցող կարգի վերանայումը, որի հիմքում ընկած է տվյալ առարկայի գծով ուսանողների առաջադիմության չափանիշը։ Այսպիսի պրակտիկան հանգեցրել է գնահատականների արհեստական բարձրացման ակնհայտ միտումի՝ դրանից բխող բոլոր բացասական հետևանքներով։

Գիտելիքների գնահատման նման ձևական մոտեցմամբ անհնար է լուծել որակի բարձրացման խնդիրը։ Դիմենք փաստերին։ Հանրապետության բուհերում հասարակագիտական առարկաների գծով առաջադիմությունը վերջին երեք տարում կազմել է 96,5—98,3 տոկոս։ Բայց ողջ հարցը նրանումն է, որ «բավարար» գնահատականներին միջին հաշվով բաժին է ընկնում 40 տոկոսից ավելին։

Մեծ չի լինի տարբերությունը, եթե վերցնենք յուրաքանչյուր դասավանդվող առարկան առանձին։ Այսպես, 1984—85 ուսումնական տարում ՍՄԿԿ պատմություն առարկայի գծով «բավարար» գնահատականը կազմել է 44,3 տոկոս, մարքս-լենինյան փիլիսոփայության գծով՝ 42,4, գիտական կոմունիզմի գծով՝ 39,7 տոկոս։ Ինչի՞ մասին են վկայում այս թվերը։ Ամենից առաջ հասարակական գիտությունների նկատմամբ ուսանողների մի զգալի մասի պասիվ վերաբերմունքի մասին։ Դրա հետ մեկտեղ բոլորիս լավ հայտնի է այդ «բավարարների» իրական գինը։

Պետք է արմատապես փոխել իրերի նման դրությունը։ Հասարակագիտական ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում նշվեց, որ վերակառուցումը բուհում դա վերացական հասկացողություն չէ, այլ ուսուցման և դաստիարակության այնպիսի համակարգի մշակում, որը պետք է ամուր գիտելիքներով զինի ուսանողությանը, ապահովի տեսության և պրակտիկայի սերտ կապը, շրջադարձը՝ մենախոսությունից դեպի երկխոսություն։ Այլ խոսքով ասած՝ վերակառուցումը պետք է ընդգրկի բոլորին՝ ուսանողից մինչև պրոֆեսոր։

Ուսանողների շրջանում գաղափարադաստիարակչական աշխատանքը մեր ամբիոնների գործունեության հիմնական ուղղություններից մեկն է։ Հանրապետության բուհերում, անտարակույս, կարևոր տեղ է հատկացվում ուսանող երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործին։ Կազմակերպվում են զեկուցումներ, դասախոսություններ, զրույցներ, հանդիպումներ, միջոցառումներ են անցկացվում հայրենասիրական, ինտերնացիոնալիստական դաստիարակության թեմաներով։

Սակայն, ընդհանուր առմամբ, ուսանողության կոմունիստական դաստիարակության արտալսարանային գործում առկա են զգալի թերություններ ու բացթողումներ։ Ամենից առաջ հարկ է ընդգծել, որ այդ աշխատանքում գերակշռում է ձևամոլությունը։ Ամբիոններում խնամքով կազմված պլանների պակաս չի զգացվում։ Դրանք տպավորիչ են իրենց հարուստ բովանդակությամբ և միջոցառումների քանակով։ Բայց պլաններ կազմելը դեռևս չի նշանակում գործ անել։ Եվ, ցավոք, մեզանում չի հաղթահարված այն երևույթը, երբ հաճախ գործի գնահատականը տրվում է ոչ թե իրականում կատարվածին, այլ թղթին։ Այս ոլորտում գործերի վիճակի բարելավմանը իրենց ակտիվ մասնակցությունը պետք է ցուցաբերեն հատկապես կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները։

Ուսանողների գաղափարական դաստիարակության կարևորագույն պայման է լենինյան կուսակցականության, ճշմարտության սկզբունքի կիրառումը,



որը հաճախ անհրաժեշտ դրսևորում չի գտնում հասարակական գիտությունների դասավանդման պրոցեսում։ Երբ դասախոսը շրջանցում է ռեալ կյանքի սուր անկյուններն ու հակասությունները, լողում մակերեսին, ապա դրանով վատ ծառայություն է մատուցում ուսանողին։ Լենինյան կուսակցականության, ճշմարտության սկզբունքը պետք է գերիշխի դասավանդման ողջ պրոցեսի ընթացքում։ Այն անհամատեղելի է քաղքենիական ասեկոսեների բացասական երևույթները ուռճացնելու հետ, ինչը երբեմն նկատվում է առանձին դասախոսների մոտ։

Բոլշևիկյան ճշմարտությունը դա արարման ճշմարտություն է, գործի ճշմարտություն, որը ենթադրում է ոչ թե սոսկ խոսակցություն թերությունների մասին, այլ դրանց դեմ ակտիվ պայքար։ Այդ հիմնարար դրույթով պետք է ղեկավարվեն բոլոր հասարակագետներն իրենց ամենօրյա աշխատանքում։

Լուրջ բարելավման կարիք ունի այսօր աթեիստական աշխատանքը։ Դեռևս չի հաղթահարված այդ կարևոր գործի թերագնահատման իներցիան, հասարակագիտական ամբիոնները անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում աթեիստական դաստիարակության խնդիրներին։ Այդ աշխատանքը հաճախ տարվում է՝ առանց հաշվի առնելու խնդրի սոցիալ-հոգեբանական կողմը։ Գիտական աթեիզմի հիմունքները դասավանդելիս անհրաժեշտ է խորացնել համոզչականության, զգացմունքային ներազդման մեթոդները՝ առանց որի դժվար է շահել ուսանողական լսարանի հետաքրքրությունը։

Հասարակական-քաղաքական առարկաների դասավանդման, դաստիարակչական աշխատանքի դրվածքում լուրջ թերություններ ունեն միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունները։ Մի շարք տեխնիկումներում և ուսումնարաններում խիստ ցածր է դասավանդման գիտամեթոդական մակարդակը, չի հաղթահարված ձևականությունը ուսումնադաստիարակչական պրոցեսի կազմակերպման, ուսանողի և ուսուցչի աշխատանքի գնահատման հարցերում։ Հիմնականում հենց այդ թերություններով պետք է բացատրել տեխնիկումների սովորողների շրջանում նկատվող իրավախախտումների դեպքերը։

Բարձրագույն կրթության մինիստրությունը, կուսակցական կազմակերպությունները դեռևս անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկել միջնակարգ-մասնագիտական հաստատություններում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու ուղղությամբ, չեն ուժեղացրել պահանջկոտությունը ղեկավարների ու մանկավարժների նկատմամբ։

Դարձյալ շեշտենք ուսանողների հետ տարվող դաստիարակչական աշխատանքում դասախոսի անձնական օրինակի նշանակությունը։ Մեզանում այս առումով ամեն ինչ չէ, որ բարեհաջող է։ Բուհական հասարակայնությանը հայտնի են առանձին դասախոսների բարոյական անկման տխուր օրինակներ։ Դրամաշորթության և կաշառակերության դեպքեր են եղել հայկական մանկավարժական, ժողովրդական տնտեսության ինստիտուտներում։ Առավել ամոթալի է, որ նրանց թվում, ովքեր ստվեր են նետել ողջ մանկավարժական կոլեկտիվների պատվի վրա, եղել են և հասարակագիտական ամբիոնների դասախոսներ։

Հայտնի ճշմարտություն է, որ դասախոսական կադրերի ընտրությունը, պատրաստումն ու դաստիարակումը հասարակագիտության պոտենցիալի մեծացման հիմնական օղակն է։ Այդ գործում մենք ունենք բազմաթիվ չլուծված պրոբլեմներ։

Հանրապետության բուհերում գործում է հասարակագիտական 49 ամբիոն։ Դրանցից 25-ի կամ միայն կեսի ղեկավարներն են, որ գիտության դոկտորներ են։ Ամբիոններում աշխատում է 471 դասախոս, որոնցից 43-ը (9,1 տոկոսը) դոկտոր-պրոֆեսորներ են, 260-ը (55,2 տոկոսը)՝ գիտությունների թեկնածուներ, դոցենտներ։ Դասախոսների միայն 64,3 տոկոսն է, որ ունի գիտական աստիճան կամ կոչում։ Հասարակագիտության ոչ մի դոկտոր չկա Ֆիզիկական կուլտուրայի հայկական պետական ինստիտուտում, Լենինականի ու Կիրովականի մանկավարժական ինստիտուտներում, Երևանի պոլիտեխնիկական ինս-

տիտուտի՝ Լենինականի, Կիրովականի և Գորիսի մասնաճյուղերում։ Հենց նույն՝ Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի 144 հասարակագետ դասախոսներից միայն 8-ը կամ 5,5 տոկոսն է, որ դոկտորական աստիճան ունի։

Այս առումով հատկապես մտահոգիչ են գործերը գիտական կոմունիզմի և գիտական աթեիզմի միջբուհական ամբիոններում։ Հայտնի է, որ բուհերում գիտական կոմունիզմի ամբիոններ ստեղծելիս դրանք համալրվում են փիլիսոփայության և կուսակցության պատմության ամբիոնների դասախոսների հաշվին։ Անցած տարիներին այդ դասախոսների մեծ մասը վերապատրաստվել է և բարձրացրել որակավորումը, բայց դա բազային կրթությանը փոխարինել չի կարող։ Նույնիսկ այժմ, ըստ մրցույթի, գիտական կոմունիզմի ամբիոնի վարիչներ են ընտրվում պրոֆեսորներ, որոնք նախկինում այդ առարկան երբեք չեն դասավանդել։

Խիստ անբավարար է աթեիստ դասախոսների պատրաստման գործը։ Հանրապետության բուհերի գիտական աթեիզմի դասախոսներից միայն 11 են դիսերտացիաներ պաշտպանել այդ առարկայի գծով։ Երևանի պոլիտեխնիկական, գեղարվեստաթատերական, ֆիզկուլտուրայի ինստիտուտներում աթեիզմի կուրսը վարում են մարդիկ, որոնք նույնիսկ թեկնածուական մինիմում չեն հանձնել այդ առարկայից։ Աթեիստ մանկավարժներով ապահովված չեն կուլտուրայի, մանկավարժական, բժշկական և գյուղատնտեսական միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունները։

Աթեիստ մասնագետների նման սուր կարիքի պայմաններում 1981—1985 թվականներին պլանավորվել է միայն 2 ասպիրանտի ընդունելություն, իսկ վերջին տասը տարում գիտական աթեիզմի գծով ասպիրանտուրան ավարտած 6 մարդուց միայն մեկն է պաշտպանել թեկնածուական դիսերտացիա։

Այս կապակցությամբ հարկ է նշել, որ ընդհանրապես ցածր է ասպիրանտուրայի միջոցով հասարակագիտական կադրերի պատրաստման արդյունավետությունը։ Հանրապետության գիտությունների ակադեմիայի գիտահետազոտական ինստիտուտների և բուհերի համապատասխան ամբիոնների գծով ասպիրանտների ընդունելության ժամանակ փաստորեն մրցույթ գոյություն չունի։ 1981—1985 թվականներին բուհերի հասարակագիտական ամբիոնների 68 ասպիրանտներից և ոչ մեկը դիսերտացիան ժամանակին չի պաշտպանել, իսկ աշխատանքները պաշտպանության են ներկայացրել լոկ 7 ասպիրանտներ, այսինքն՝ ընդհանուրի 10,2 տոկոսը։

Այդ նույն ժամանակահատվածում գիտությունների ակադեմիայի հասարակագիտական ինստիտուտների ասպիրանտուրաներն ավարտել է 72 մարդ, որոնցից դիսերտացիա են պաշտպանել միայն երկուսը։ Իրերի նման վիճակը, ինչպես երևում է, քիչ է անհանգստացնում ակադեմիական ինստիտուտների, բուհերի և նրանց համապատասխան ամբիոնների ղեկավարներին։

Իրավացի կշտամբանքի տեղիք են տալիս նաև հանրապետությունում անցկացվող հասարակագիտական ամբիոնների մասնագետների մրցույթներն ու ատեստավորումները, որոնք ընդհանուր առմամբ ձևական բնույթ են կրում։ Բուհական հասարակագետների որակական կազմի, տարիքային կառուցվածքի բարելավման այդ կարևոր լծակը պետք է օգտագործվի ավելի արդյունավետ ձևով։

Կուսակցական կազմակերպությունների, բուհերի, հանրապետության բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության մինիստրության ղեկավարների անհետաձգելի խնդիրն է՝ կոնկրետ միջոցներ ձեռնարկել հասարակագետ կադրերի պատրաստումն ընդլայնելու, նրանց մասնագիտական մակարդակն ըստ ամենայնի բարձրացնելու ուղղությամբ։ Սա ժամանակի հրամայական պահանջն է, և հապաղել չի կարելի։

Բարձրագույն դպրոցի, հասարակագիտական ամբիոնների աշխատանքի վերակառուցման խնդիրների իրագործումը վճռականորեն կախված է կուսակցական ղեկավարության մակարդակից։ Հանրապետության բուհերի կուսակցական կազմակերպություններն այսօր միավորում են 3.836 կոմունիստների։ Հասարակագետ դասախոսների 88,5 տոկոսը ՍՄԿԿ անդամներ են։



Վերջին տարիներին, հատկապես Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպության մասին ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումից հետո, բուհերի և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունների կուսկազմակերպություններն ակտիվացրել են իրենց աշխատանքը, ավելի մոտիկից են զբաղվում հասարակագիտական ամբիոնների գործունեության բարելավման հարցերով։

Սակայն, քննադատաբար գնահատելով կատարվածը, հարկ է նշել, որ մեր մի շարք բուհերի ու տեխնիկումների կուսկազմակերպություններ դեռևս դանդաղ են վերակառուցում իրենց գործունեությունը, չեն հասել ուսումնական, գիտական ու դաստիարակչական պրոցեսի, կադրերի հետ տարվող աշխատանքի կուսակցական ղեկավարման պատշաճ մակարդակի։

Երևանի պետական կոնսերվատորիայի, հայկական մանկավարժական, ֆիզկուլտուրայի, Լենինականի, Կիրովականի մանկավարժական ինստիտուտների, Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի Լենինականի և Կիրովականի մասնաճյուղերի կուսակցական կազմակերպությունների կողմից բացակայում է հսկողությունը և օգնությունը հասարակագիտական ամբիոնների գործունեության նկատմամբ։

Անհրաժեշտ է վճռականորեն բարձրացնել բուհերի և հատկապես հասարակագիտական ամբիոնների կուսակցական ղեկավարման մակարդակը, կատարելագործել այդ աշխատանքի մեթոդներն ու ձևերը։ Առաջնակարգ կարևորության խնդիր է սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության ակտիվացումը, նրանց դերի և պատասխանատվության բարձրացումը՝ գիտամանկավարժական ու ղեկավար կադրերի ընտրության և բաշխման, կոլեկտիվներում բարձր սկզբունքայնության մթնոլորտ ստեղծելու հարցում։ Անհրաժեշտ է սևեռուն ուշադրություն դարձնել բուհերում, դասախոսական միջավայրում հրապարակայնության, քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը։ Կուսակցության շրջանային և քաղաքային կոմիտեները պարտավոր են իրենց ամենօրյա հսկողության տակ վերցնել բուհերի վերակառուցման ողջ ընթացքը, հետևել, որ լուծվեն ուսումնական հաստատությունների գործունեության հիմնական խնդիրները՝ ուսումնադաստիարակչական աշխատանքի կատարելագործումը, գիտական հետազոտությունների արդյունավետության աճը, նյութատեխնիկական բազայի ամրապնդումը, մասնագետների որակի բարձրացումը։ Անհրաժեշտ է է՛լ ավելի ամրապնդել դասախոսական ջոկատի կուսակցական կորիզը, ապահովել բուհերի կյանքում դեմոկրատական, ինքնակառավարման սկզբունքների ընդլայնումը, բարձրացնել կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունների դերը։

Բուհերի կուսակցական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ կոմունիստների, հասարակագետների, բոլոր դասախոսների և ուսանողների ջանքերը նպատակամղել ՍՄԿԿ XXVII և Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարների որոշումների պրոպագանդմանը, ուսումնասիրմանն ու կենսագործմանը, բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության վերակառուցման հիմնական ուղղությունների, հասարակագիտական ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցության հանձնարարականների հետևողական կատարմանը։

Բարձրագույն դպրոցի վերակառուցման գործում մեզ բոլորիս սպասում է մեծ ու լարված աշխատանք։ Այդ հարցում առաջատար դեր ունեն կատարելու հասարակագիտական ամբիոնները, հասարակագետ դասախոսների ստվար ջոկատը, բոլոր բուհերի կուսակցական կազմակերպությունները։

Ղեկավարվելով կուսակցության XXVII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան որոշումներով, հանրապետության բուհերի, մինիստրությունների ու գերատեսչությունների հասարակագիտական ամբիոնների ղեկավարները պետք է արմատապես բարելավեն բարձրագույն դպրոցի աշխատանքները՝ բարձր որակավորման մասնագետների պատրաստման գործում։ Բարձրագույն դպրոցի շրջանավարտը ոչ միայն սոսկ բարձրորակ մասնագետ է, այլ նաև ջերմ հայրենասեր ու քաղաքացի, հարուստ ներաշխարհով օժտված, գաղափարապես զինված, բարոյապես կատարյալ, համակողմանի զարգացած անհատ։

# ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՍՏԱՑՈՒՄԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿՈԼԵԿՏԻՎ ՄՏՔՈՎ

**Մ. ՄՉԵԴԼՈՎ**
*Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր,*
*ՌՍՖՍՀ գիտության վաստակավոր գործիչ*

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆ այսօր ապրում է հետաքրքիր, դինամիկ ժամանակաշրջան: Հասարակական կյանքի բոլոր ոլորտներում հրաժարվելով մտածողության ու վարքագծի իրենց դարն ապրած պահպանողական ստերեոտիպներից, նա լի է վճռականությամբ՝ եռանդուն կերպով իրականացնելու մեր երկրի, ժամանակակից ողջ աշխարհի կյանքի շեշտակի բեկման շրջանում ծառացած խնդիրները: Այդ բարդ, բազմապլան ու ազնիվ գործունեությանը ուղղություն են տալիս ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած գործողությունների համակողմանիորեն կշռադատված ծրագիրը, վերջին ժամանակների կուսակցական փաստաթղթերը, որոնցում շարադրված են սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, սոցիալական արդարության սկզբունքների համընդհանուր հաստատման, պատերազմի կանխման, համաշխարհային քաղաքակրթության նվաճումների պահպանման, մարդկային ցեղի գոյատևման համար մղվող պայքարի պատճառները, էությունն ու գործնական ուղիները:

Կենսագործունեության բոլոր ոլորտների խոր, դիալեկտիկամատերիալիստական սկզբունքների վրա հիմնված վերլուծությունը, քննադատական մոտեցումը կուտակված փորձի նկատմամբ, քաղաքական նոր մտածողությունը հնարավորություն ընձեռեցին բացահայտելու մեր հասարակության տնտեսական, քաղաքական և հոգևոր զարգացման ճշմարտացի պատկերն իր բոլոր հակասություններով, որն էլ իր հերթին հնարավոր դարձրեց ձևակերպել համապատասխան սոցիալական ու քաղաքական խնդիրներ, կոմունիստական շինարարության ռեալ հեռանկարներ: Քաղաքականության, հասունացած պրոբլեմների նկատմամբ հենց այդ իրոք կուսակցական, լենինյան մոտեցումն էլ նպաստեց փիլիսոփայությանը, քաղաքատնտեսությանը, գիտական կոմունիզմին, ներքին և արտաքին կյանքի պրոցեսներին վերաբերող տեսական հարցերի լայն շրջանակի խոր մշակմանը ՍՄԿԿ XXVII համագումարում: Համագումարի նյութերի ողջ տեսական բովանդակության նորարարական բնույթի վերլուծությունը և դրանցում առաջադրված պրոբլեմների հետագա մշակումը սովետական հասարակագետների կոլեկտիվ գործն է: Տվյալ դեպքում կցանկանայինք, հիմք ընդունելով կուսակցության կոլեկտիվ մտքի նվաճումները, հատկապես ՍՄԿԿ XXVII համագումարի փաստաթղթերն ու գաղափարները, ուշադրություն դարձնել մարքս-լենինյան տեսության հասկացությունների ու կատեգորիաների հարստացման մի քանի առանձնահատկությունների վրա, առանց որոնց անհնարին են և՛ քաղաքական նոր մտածողությունը, որը հնարավորություն է տալիս համապատասխանորեն վերարտադրելու սոցիալական իրողությունը, նրա միտումները, բացահայտելու հասունացած պրոբլեմների լուծման ներգործուն միջոցները, և՛ բուն տեսության զարգացումը:

Մարքս-լենինյան տեսության հարստացման պրոցեսն իրականացվում է, ինչպես հայտնի է, նրա սկզբունքների հիման վրա՝ նոր սոցիալական երևույթների ու պրոցեսների, ժողովրդական զանգվածների պրակտիկայի, հեղափոխական պայքարի ու կոմունիստական շինարարության, գիտական իմացության, մեր մոլորակի վրա ծավալվող ռեալ պատմության տվյալների ընդհանրացման միջոցով: Այս պրոցեսն առանձնապես ակնհայտորեն դրսևորվեց մեր հասարակության համար բեկումնային ժամանակաշրջանում և ուղեկցվում է կուսակցության ինտենսիվ տեսական գործունեությամբ: Այսպիսով, հասկացութային ապարատի հարստացումը պայմանավորված է և՛ օբյեկտիվ իրականության զարգացմամբ, կյանքի բարդ ու հակասական պրոցեսներով, և՛ կուսակցության ավելի խոր տեսական գործունեությամբ, և՛ նրա քաղաքական կամքով, և՛ այդ օբյեկտիվ պրոցեսի ճիշտ, համակողմանի ու լիարժեք արտացոլման նկատմամբ ունեցած իր շահագրգռությամբ:

Սովորաբար, և դրան կարելի է հետամուտ լինել պատմականորեն, մարքս-լենինյան տեսության կատեգորիալ ապարատի հարստացումը իրականացվում է մի շարք ուղղություններով: Անփոփոխ կերպով զարգանում են նրա բոլոր բազային, հիմնական կատեգորիաները, որոնք ներառում են նոր սոցիալական իրողության, գիտության զարգացման, մասսաների, ժողովուրդների գործունեության վերլուծության արդյունքները: Այս կապակցությամբ հիշենք պետության, պրոլետարիատի դիկտատուրայի մարքսիստական կոնցեպցիայի զարգացման հիմնական փուլերի բացահայտման լենինյան ավանդույթը, որը իրականացվել է **Պետություն և հեղափոխություն** աշխատության մեջ: Դրա հետ մեկտեղ, զարգացող իրականության վերլուծման պահանջմունքները ծնում են նաև նոր կատեգորիաներ, որոնք հնարավորություն են ընձեռում համապատասխանորեն վերարտադրելու և վերլուծելու նոր սոցիալական իրողությունը (օրինակ, համաժողովրդական պետությունը, սովետական ժողովուրդը՝ որպես նոր պատմական հանրություն):

Կարելի է նաև հետամուտ լինել այն պրոցեսին, երբ հին կատեգորիաները հայտնի պրոցեսների ու երևույթների ավելի խոր, բայց արդեն այժմ որոշակի տեսանկյունով իրականացվող մեկնաբանման շնորհիվ ձեռք են բերում նոր նշանակություն, նոր բովանդակություն (այդպիսին է, օրինակ, «կոմունիստական քաղաքակրթություն» հասկացությունը):

Ասվածը լիովին ու ամբողջությամբ վերաբերում է նաև մեր ապրած ժամանակաշրջանին: Առանց նոր առումները, ինչպես նոր, այնպես էլ ավանդական հասկացությունների բովանդակության ավելի խոր ու ռեալիստական մեկնաբանումը հաշվի առնելու, թերևս, դժվար է ողջ խորությամբ հասկանալ ժամանակակից իրականությունը: Ընդ որում կարևոր է հատկապես ընդգծել, որ նորացումն ու հարստացումը վերաբերում են բոլոր հասկացություններին՝ ընդհանրացման ինչ մակարդակի էլ որ նրանք լինեն. և՛ մարքսիզմի ամենաընդհանուր, արմատական կատեգորիաներին (օրինակ, բանվոր դասակարգի համաշխարհային պատմական առաքելությանը), և՛ հասարակական գիտությունների օգտագործած բազային կատեգորիաներին (օրինակ, արտադրական հարաբերությունները, որոնց համար այժմ բնորոշ է նրանց դինամիկ էության, մշտական կատարելագործման անհրաժեշտության ըմբռնումը), նրանց մեջ դրվում է ավելի մեծ նպատակամղվածություն դեպի արտադրողական ուժերի զարգացումը, բաշխման արդարությունը և այլն:

Հասարակական-քաղաքական՝ գիտական, պրոպագանդիստական կամ առօրյա բառապաշարի մեջ այժմ հաստատուն կերպով մտել են այնպիսի տարողունակ հասկացություններ, ինչպիսիք են սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը, սոցիալական արդարությունը, բեկումնային շրջանը, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումը, ուժեղ սոցիալական քաղաքականությունը, մարդկային գործոնը և այլն: Հասկանալի է, որ այս հասկացությունները գոյություն են ունեցել նաև անցյալում, բայց այժմ դրանք օգտագործվում են նոր շեշտադրումներով. նոր հարցադրում է նկատվում համագումարային նյութերում և համամարդկայինի ու դասակարգայինի, սոցիալական առաջադիմության մեջ մասսայական դեմոկրատական շարժումների տեղի բնութագրման մեջ: Նոր, ավելի ճիշտ՝ հարստացած բովանդակություն են ձեռք բերել նաև ուրիշ շատ հասկացություններ, ըմբռնումներ:

Մարքսիզմ-լենինիզմի համար աքսիոմա է **սոցիալական արդարության** կոնկրետ պատմական քննարկումը, առաջին հերթին՝ նրա դասակարգային բովանդակության բացահայտումը: Ժամանակին Մարքսը, բացահայտելով ազատության ու արդարու-

թյան ընդունման սոցիալ-դասակարգային ուղղվածությունը, կծու հեգնանքով էր գրում այն յանկի-սորկատիրոջ մասին, որը գալիս է Անգլիա և զայրանում նրանից, որ չի կարող այստեղ «ազատորեն» ծեծել իր նեգրին (տե՛ս К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 3, с. 197): Ամեն մի դասակարգ, սոցիալական խումբ ունի արդարության իր չափանիշներն ու մեկնաբանումները:

Սոցիալիզմի սոցիալական մեծ արդարությունը դասակարգային ճնշումից ու շահագործումից, ազգային թշնամությունից ու անհավասարությունից ազատագրումն է, բոլոր քաղաքացիների քաղաքական հավասարությունն է՝ անկախ նրանց սոցիալական ծագումից, սեռից, ազգային ու ռասայական պատկանելությունից, կրոնի նկատմամբ ունեցած վերաբերմունքից. ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացումն է, հասարակության ու պետության գործերի կառավարմանը լայն զանգվածների փաստացի մասնակցությունը, նրանց համընդհանուր կրթությունն ու հաղորդակցումը գիտության, մշակույթի արժեքներին, անձի հարգումը, նրա համակողմանի զարգացման համար պայմանների ստեղծումը և այլն, և այլն: Սոցիալիզմի բոլոր այս և նման առավելությունները որակապես նոր երևույթներ են մարդկության պատմության մեջ, հասարակական-տնտեսական նոր ֆորմացիայի ներդրումն են համաշխարհային քաղաքակրթության մեջ:

Սակայն սոցիալ-դասակարգային գործոնի հետ միասին սոցիալական արդարության իրականացման աստիճանի ու ձևերի վրա (միևնույն ֆորմացիայի շրջանակներում) անխուսափելիորեն ազդում են արտադրաուժերի զարգացման պատմական մակարդակը, դասակարգային ուժերի տեղաբաշխումը, միջազգային պայմանները, կառավարող կուսակցության քաղաքականության կոնկրետ առանձնահատկությունները և այլն: Այս իմաստով սոցիալիզմի պայմաններում ևս սոցիալական արդարությունն իրականացվում է աստիճանաբար և ունի մի շարք սահմանափակումներ: Վերցնենք, օրինակ, բաշխման ոլորտը: Սոցիալիզմի սկզբունքներին, տնտեսական զարգացման ձեռք բերված մակարդակին լրիվ համապատասխան և անիրականանալի ակնկալիքներ չստեղծելու նպատակով կուսակցական փաստաթղթերում հստակորեն հավաստվում է, որ տվյալ փուլում այստեղ հավասարություն լինել չի կարող: Այսօր բարձրագույն արդարությունը վարձատրությունն է ըստ աշխատանքի քանակի ու որակի: Բայց մենք ոչ թե պարզապես հավատում ենք սոցիալիզմին ներհատուկ այդ օբյեկտիվ հակասությունը հասարակության բոլոր անդամների սոցիալ-տնտեսական հավասարություն հաստատելու ձգտման ու ըստ աշխատանքի վարձատրության սկզբունքի միջև, որը շերտավորում, անհավասարություն է ծնում սպառման բնագավառում: Կուսակցության տեսական միտքն ու քաղաքական կուրսը ուղղված են այդ հակասությունը անշեղորեն լուծող գործոնների գործադրմանը: Դա տեղի է ունենում աշխատանքի բնույթի ու բովանդակության փոփոխման, աշխատողների աշխատանքի արտադրողականության, որակավորման, արտադրական ակտիվության բարձրացման միջոցով, որը հանգեցնում է աշխատանքում, հետևաբար նաև բաշխման բնագավառում, սոցիալ-տնտեսական տարբերությունների վերացմանը: Այսպիսով, տվյալ հակասությունն այսօր գործում է ոչ թե մեր արժեքների ու սկզբունքների դեմ, այլ հանդես է գալիս որպես աշխատանքի արտադրողականության բարձրացման, տնտեսական առաջադիմության խթան, որպես սոցիալ-տնտեսական լիակատար հավասարության, սոցիալական լիակատար միասեռության ուղղությամբ տեղի ունեցող զարգացման խթան:

Տնտեսական անխուսափելի անհավասարությունը մեղմացնելու համար սոցիալիզմն ունի այլ հնարավորություններ ևս: Այդպիսի ֆունկցիա են կատարում և՛ սակավ ապահովված ընտանիքների նկատմամբ առաջնահերթ ուշադրություն ցուցաբերելու հիմնադրույթը, և՛ սպառման հանրային ֆոնդերի ողջ համակարգը, որոնց մեր երկրում արդեն այժմ բաժին է ընկնում սպառվող նյութական բարիքների ու ծառայությունների մոտ մեկ երրորդը և որոնց չափերը անընդհատ աճում են: Տասներկուերորդ հնգամյակում նրանց ծավալը կմեծանա 20—23 տոկոսով:

Բաշխման հանրային ֆոնդերի համակարգի սոցիալական իմաստը հսկայական է. դրանք նպաստում են մարդկանց զարգացման սոցիալ-տնտեսական և կուլտուրական պայմանների հավասարեցմանը (կրթություն ստանալու, կուլտուրական բարիքներից օգտվելու, բնակարան ունենալու, երեխաներին դաստիարակելու, առողջու-



թյան պահպանության, ավագ սերնդի մասին հոգատարության հնարավորություններ և այլն)՝ անկախ նրանց ընտանեկան դրությունից, ընտանիքի կազմից, աշխատանքային ունակություններից, աշխատանքի վարձատրության չափից. դրանք ներազդում են կոլեկտիվիստական հոգեբանության, սոցիալիստական ընդհանուր մտայնության ձևավորման վրա:

Մեր պրոպագանդայում սովորաբար հանգամանորեն խոսվում է յուրաքանչյուր քաղաքացու տրվող նյութական և սոցիալական երաշխիքների մասին: Իհարկե, դա պետք է ու կարևոր՝ քաղաքական ու գաղափարախոսական տեսակետից բացահայտելու, թե ինչ է տալիս սոցիալիստական հասարակարգը անհատին: Բայց կա մի ուրիշ կողմ ևս, որը, կարծում ենք, պատշաճ լուսաբանում չի ստացել, բայց առանց որի սոցիալական արդարությունը կլինի կիսատ-պռատ, միակողմանի: Դա այն է, ինչ անհատը պետք է տա հասարակությանը, նրա ակտիվ աշխատանքային և սոցիալական այլ ջանքերի անհրաժեշտությունը: Ընդ որում նկատի է առնվում ոչ թե դեկլարացիան, որի պակասը երբեք չի եղել, այլ այնպիսի իրական պայմանների ստեղծումը, որոնք բացառեն սոցիալիզմի սկզբունքներին հակասող գործողությունները: Նման շեշտադրումները կարևոր են ոչ միայն առանձին մարդկանց խնամառուական տրամադրություններին հակազդելու, այլև մարքսիզմ-լենինիզմի գլխավոր գաղափարը բացահայտելու համար. միայն աշխատանքում, հասարակական ակտիվ գործունեության մեջ կարող է լրիվ չափով զարգանալ անհատն ինքը, բացահայտվել նրա ընդունակություններն ու հնարավորությունները:

Կուսակցության XXVII համագումարին ներկայացված Կենտկոմի Քաղաքական
ցեկուցման մեջ սուր ու անզիջող կերպով մերկացված է այն պրակտիկան, որը խան-
գարում է նոր հասարակարգի սոցիալական արդարության էության իրականացմանը:
Աշխատանքի վարձատրության հարցերում հենց **վաստակած** վճարի սոցիալիստական
սկզբունքի կոպիտ խախտումներն են, որոնք արտահայտվում են լավ աշխատողի ու
անփույթ աշխատողի աշխատանքի միատեսակ վարձատրության մեջ, այսպես կոչ-
ված «ձգել-դուրս բերելու» մեջ, չվաստակած փողեր, անարժան պարգևավճարներ
տալու մեջ, աշխատավարձի այնպիսի «երաշխավորված» դրույքների սահմանումը,
որոնք կապված չեն աշխատողի աշխատանքային ավանդի հետ և այլն:

Սոցիալական արդարությունն ընդվզում է ինչպես առանձին անհատների, այնպես էլ ամբողջ կոլեկտիվների տրվող անօրինական վճարումների դեմ: Մասնավորապես, խոսքը ցածրորակ կամ բոլորովին ոչ պիտանի արտադրանք թողարկող ձեռնարկությունների աշխատողների մասին է: Ակներև է, որ հասարակության շահերը ոտնահարող նման գործողությունները հորդորանքներով հաղթահարել հնարավոր չէ: Ուստի համագումարում դրվեցին ձեռնարկությունների աշխատավարձի ֆոնդի չափը նրանց արտադրանքի իրացումից ստացվող եկամուտների հետ կապակցելու, շահութաբերության, դրամաիրային հարաբերությունների ամբողջ զինանոցի ավելի արդյունավետ օգտագործման հարցերը:

Սոցիալական արդարությունը ոչ միայն սոցիալ-քաղաքական, իրավական ու տնտեսական, այլև բարոյական բովանդակությամբ հագեցած կատեգորիա է: Այն շոշափում է բնակչության կենսական շահերը, ունի հսկայական էմոցիոնալ ներգործության հնարավորություններ: Այն ամենը, ինչ վերաբերում է սոցիալական արդարությանը, հատկապես դրա սահմանափակումները ոմանց համար և ապօրինի, անհիմն արտոնությունները մյուսների համար, մեծ արձագանք են գտնում հասարակական կարծիքի մեջ:

Հենց այդ պատճառով էլ աշխատավորական զանգվածները գոհունակությամբ, մեծ շահագրգռվածությամբ են պաշտպանում կուսակցության քաղաքականությունը, որը նպատակ է հետապնդում անշեղորեն սոցիալական արդարություն հաստատել սոցիալական օրգանիզմի բոլոր մասերում: Այստեղ ևս շատ մեծ է սովետական հասարակության օրենքի ու բարոյականության ամեն կարգի խախտումների դեմ, ցուցամոլության ու հավելագրումների, պետությանն ու ժողովրդին խաբելու բոլոր հնարավոր դրսևորումների դեմ ներկայումս մղվող արդյունավետ պայքարի նշանակությունը, պայքար՝ առանց դեմքին ու դիրքին նայելու:

Սոցիալական արդարության հակոտնյաներն են անաշխատ եկամուտները: Ուստի վերջին ժամանակներս ձեռնարկված միջոցները, որոնք ուղղված են պորտա-

բույծների, սոցիալիստական սեփականությունը հափշտակողների, կաշառակերների դեմ, բոլոր նրանց դեմ, ովքեր ոտք են դրել մեր հասարակարգի աշխատանքային էությանը խորթ ուղին, գոհունակությամբ են ընդունվում յուրաքանչյուր սովետական ազնիվ քաղաքացու կողմից և արժանանում նրա պաշտպանությանը:

Մեր գրականության մեջ, պրոպագանդիստական պրակտիկայում ավելի ու ավելի հաստատուն տեղ է գրավում այն գաղափարը, որ պայքարը ապօրինի ճանապարհներով ստացված անաշխատ եկամուտների դեմ, ինչպես նաև պատշաճ կազմակերպվածության, կարգուկանոնի ու կարգապահության ապահովումը, այսպես ասած, առաջնային, տարրական պայմանն են սոցիալական արդարության հաստատման համար: Դրա հետ մեկտեղ կարևոր է արդարացի քաղաքականություն իրականացնել եկամուտների այլ՝ սոցիալիզմի համար ոչ բնորոշ, աղբյուրների նկատմամբ: Այս կապակցությամբ հիշեցնենք, որ համագումարում հարց բարձրացվեց նաև հարկային քաղաքականության կատարելագործման, այդ թվում՝ ժառանգության պրոգրեսիվ հարկման մասին:

Արդարության սկզբունքը պետք է ավելի լրիվ իրականացվի, ինչպես դա ընդգծվում է կուսակցության XXVII համագումարին Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ, նաև սպառման հանրային ֆոնդերի, դրանց արդյունավետ օգտագործման նկատմամբ ճիշտ մոտեցման շնորհիվ: Կուսակցության վերջին փաստաթղթերում ամբողջ ուժով շեշտվում է, որ դրանք ամենևին էլ բարեգործական ֆոնդեր չեն, այլ պետք է լինեն (այն ֆունկցիայից բացի, որի մասին խոսվեց վերևում) նաև որակյալ, բարեխիղճ աշխատանքի խրախուսման, խթանման միջոց: Իսկ նրանք, ովքեր արհամարհում են սոցիալիստական համակեցության իրավական ու բարոյական կանոնները, դրանք ստանալու իրավունք չունեն: Սա նույնպես հարցի նոր դրվածք է սոցիալիզմի օրոք սոցիալական արդարության մեկնաբանման գործում. համենայն դեպս նախկինում այդ հարցը այդքան հստակորեն ու եռանդագին չի դրվել:

Սոցիալական արդարության նկատմամբ ավելի խորացած ու իրատեսական մոտեցումը պայմանավորել է նաև ավելի ու ավելի մեծ ուշադրությունը բազմաթիվ այլ հարցերի, այդ թվում՝ տևական ժամանակաընթացքում հասարակության լուրջ ջանքեր պահանջող, հարցերի նկատմամբ:

Այսպես, եթե բաշխման ոլորտում սոցիալական արդարությունը իրականացնելիս առաջնային նշանակություն ունի «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքի անշեղ կենսագործումը, ապա անհրաժեշտ են վերափոխումներ աշխատանքի պայմանների, բնույթի ու բովանդակության մեջ: Կուսակցությունը շարունակ ընդգծում է, որ բովանդակալից, ստեղծագործական աշխատանքն այսօր անհնարին է առանց ժողովրդական տնտեսության նորացման, տեխնիկական վերակառուցման, առանց նրա սոցիալական հստակ ուղղվածություն ունեցող մեքենայացման, ավտոմատացման, կոմպյուտերացման ու ռոբոտացման, չխոսելով արդեն այն մասին, որ անհրաժեշտ է ձգտել բեկում մտցնելու այնպիսի հասունացած պրոբլեմի լուծման գործում, ինչպիսին է սակավ որակյալ ձեռքի աշխատանքի կիրառման կրճատումը: Հենց դրան է նպատակամղված կուսակցության արդի քաղաքականությունը: Դրա հետ մեկտեղ այդ քաղաքականությունը լուծում է խորապես մարդասիրական մի խնդիր, քանի որ աշխատանքի բովանդակության հարստացումը անբաժանելի է անհատի ստեղծագործական ընդունակությունների բացահայտումից ու կատարելագործումից:

Սոցիալական արդարության մեկնաբանման ու հաստատման գործում նոր հանգամանքները կարելի է դիտարկել նաև կուսակցության ու ժողովրդի կյանքի ու գործունեության մյուս ոլորտներում: Եթե բաշխման նույն ոլորտում փորձենք առանձնացնել մի քանի ընդհանրացված բնութագրեր, ապա, ինչպես մեզ է թվում, հարկավոր է նշել ուտոպիական այնպիսի պլաններից զգույշ լինելու իրատեսական միտումը, որոնք ընդունակ են հարուցել անիրականանալի հույսեր, անչափ մեծ սպասելիքներ (որոնք, չարդարանալով, կարող են առաջ բերել հիասթափություն, դառնություն, գաղափարախոսական ու քաղաքական կորուստներ): Դրա հետ մեկտեղ, նոր մոտեցումը նպատակամղում է կանխելու մասնավոր սեփականատիրական, խնամառուական ու հավասարարական միտումները, առավելագույն չափով, արդյու-



նավետորեն ու արագորեն գործի դնելու այն ամենը, ինչ իրականում այսօր կարող է ապահովել սոցիալիստական հասարակությունը:

Սոցիալական արդարությունը բազմապլանային երևույթ է, որը, իհարկե, չի հանգում լոկ բաշխման ոլորտին: Բնական է, որ ՍՄԿԿ-ի քաղաքականությունն այսօր ուղղված է դրա ապահովմանը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում: Այդ բանին են ծառայում վերջին ժամանակներս ձեռնարկվող բոլոր տնտեսական, իրավական, գաղափարախոսական, դաստիարակչական, այդ թվում և կուսակցական-կազմակերպական միջոցները:

Առանձնացնենք այստեղ, օրինակ, հրապարակայնությունն ընդլայնելու հարցը, որը մարդկանց հոգեբանական վերակառուցման ելակետն է, դեմոկրատիզմի, մասսաների քաղաքական ստեղծագործության զարգացման, կառավարման գործին նրանց ունեցած մասնակցության, գործի նկատմամբ պատասխանատվության զգացումով տոգորված պետական վերաբերմունքի, անարդարություններին, բացթողումներին ու սխալներին համապատասխանաբար արձագանքելու հնարավորության գրավականը: Հենց այդ պատճառով էլ կուսակցությունն այսօր իրականացնում է այնպիսի քաղաքականություն, որպեսզի ամենուրեք ապահովի հրապարակայնությունը, այդ թվում և ներկուսակցական կյանքում: Վերահսկողությունից դուրս, քննադատությունից դուրս չի կարող լինել ոչ մի կոմունիստ, ինչպիսի պոստ էլ որ նա զբաղեցնի և ինչպիսի ծառայություններ էլ որ նա անցյալում ունեցած լինի: Ոչ ոք չի կարող զերծ մնալ կուսակցական պատասխանատվությունից: Զգալի չափով դրան է նպաստում նաև այն, որ, կուսակցության XXVII համագումարի հաստատած ՍՄԿԿ կանոնադրության դրույթների համաձայն, զանցանք կատարած կոմունիստը դրա համար պատասխանատու է ամենից առաջ սկզբնական կուսակցական կազմակերպության առջև: Վերադաս մարմնի կողմից կոմունիստին կուսակցական պատասխանատվության ենթարկելու դեպքում այդ մասին տեղյակ է պահվում սկզբնական կուսկազմակերպությունը:

Հրապարակայնությունը, ամենատարբեր հարցերի՝ դպրոցի ռեֆորմի թե բնակարանի բաշխման, քաղաքային շրջանների վերակառուցման թե՛ էկոլոգիական պրոբլեմների շահամետ քննարկմանը հնարավորին չափ ավելի մեծ թվով մարդկանց մասնակից դարձնելը գործուն միջոց է չինովնիկական բարքերից, բյուրոկրատական կամայականությունից ու դրանց կրողների յուրատեսակ ինքնագոհությունից մարդկանց զերծ պահելու, նրանց նախաձեռնությունը բացահայտելու, մեր օրինականության ամեն կարգի խախտումները կանխելու, ձեռնարկության, ռեգիոնի, հանրապետության, երկրի գործերին մասնակից լինելու զգացում զարգացնելու համար: Յուրաքանչյուրի քաղաքացիական պատասխանատվության բարձրացումը, այն ըմբռնումը, թե ընդհանուր գործը յուրաքանչյուրի գործն է, անխուսափելիորեն հարյուրապատիկ կփոխհատուցվի կոնկրետ գործերում ու ոլորտներում սոցիալական արդարության ամրապնդմամբ:

Մարքս-լենինյան տեսության մեջ նոր խոսք է մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման **արագացման կոնցեպցիան**, որ առաջ է քաշել ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը: Այդ կոնցեպցիան ընկած է կուսակցության, ողջ սովետական ժողովրդի նպատակասլաց ջանքերի հիմքում, որոնք ուղղված են մեր երկրի արմատական սոցիալ-տնտեսական վերափոխումներին: Այդ կոնցեպցիայի անչափ տարողունակ նոր բովանդակությունը ընկեր Մ. Ս. Գորբաչովը բացահայտեց ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի հոկտեմբերյան պլենումում. «Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու միջոցով դեպի սովետական հասարակության որակապես նոր վիճակի ձեռքբերում. այսպիսին է կուսակցության ժամանակակից կուրսի էությունն արտահայտող բանաձևը»:

Սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կոնցեպցիան, լինելով նոր խոսք գիտական կոմունիզմի տեսության մեջ ու պրակտիկայում, նույնպես հենվում է տեսական ու պատմական ծանրակշիռ հիմքերի վրա:

Արագացումը նոր հասկացություն չէ: Դրանով միշտ բնութագրվել է մարդկային հասարակության զարգացման պրոցեսը, քանի որ դա ճիշտ է արտահայտում նրա էությունը: Մեր երկրում, հատկապես հեղափոխությանը հաջորդած առաջին տարիներին, կուսակցության տեսական միտքը ինտենսիվ կերպով աշխատում էր այն բանի







վրա, թե ինչպես պայմաններ ապահովի զարգացման արագ տեմպերի, պատմական հետամնացության արագ հաղթահարման համար, որպեսզի ավելի արագ թափով հաղթահարի այն տարածությունը, որ իրեն բաժանում էր տնտեսապես զարգացած երկրներից, իսկ ապա՝ առաջ անցնի նրանցից: ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը խարսխվում է զարգացումն անշեղորեն արագացնելու գաղափարի վրա՝ սկզբում նոր հասարակարգի կառուցման վճռորոշ, իսկ հասարակական կյանքի զանազան կողմերի հավասարեցմանը զուգընթաց՝ նաև մյուս բոլոր ուղղություններում:

Սոցիալիզմի շինարարության պրակտիկան սովետների երկրում բացահայտեց նոր կարգի վիթխարի հնարավորությունները՝ ապահովելու արագացված հասարակական զարգացումը: Դրա առավել ընդհանրացված ապացույցն է պատմական ամենասեղմ ժամկետներում մեր երկրի անցումը դարավոր հետամնացությունից սոցիալիստական առաջադիմության բարձունքներին:

Հասարակական զարգացման արագացումը ակնառու կերպով ցուցադրում են էկոնոմիկայի, կուլտուրայի արագ վերելքը, սովետական արևելյան հանրապետությունների ինդուստրացման տեմպերը: Համեմատության համար նշենք, որ «կլասիկ» կապիտալիզմի մի շարք երկրների ինդուստրիալ զարգացման ներկայիս մակարդակը ձեռք է բերվել տանջալի, զիգզագաձև ուղու երեք-չորս դարերի ընթացքում, որը կապված էր աշխատավորների դաժան շահագործման, գաղութային կողոպուտի, զավթողական պատերազմների հետ: Սովետական Արևելքի հանրապետությունները ինդուստրիալ զարգացման բարձունքներին հասան 10 անգամ ավելի արագ (30—40 տարում) այնպիսի պայմաններում, երբ գոյություն չուներ շահագործում, մի ժողովրդի ճնշում մյուսների կողմից:

Կուսակցության XXVII համագումարին ներկայացված Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ մեծ ուշադրություն է նվիրված այդ հասկացության **ծավալին,** որը նշանակում է բազմակողմանի ու կոմպլեքսային երևույթ, և ամենևին էլ ոչ միայն վերափոխումներ տնտեսական բնագավառում: Արագացման կոնցեպցիան ենթադրում է բոլոր հասարակական հարաբերությունների կատարելագործում, քաղաքական և գաղափարախոսական հաստատությունների աշխատանքի ձևերի ու մեթոդների նորացում, սոցիալիստական դեմոկրատիայի խորացում, իներցիայի, լճացածության ու պահպանողականության, հասարակական առաջադիմությունը կասեցնող ամեն ինչի վճռական հաղթահարում: Այդ կոնցեպցիան կողմնորոշում է դեպի ակտիվ սոցիալական քաղաքականության կիրառում, դեպի սոցիալիստական արդարության սկզբունքի հետևողական իրականացում:

Այսպիսով, ի տարբերություն, օրինակ, սովետական իշխանության առաջին տարիների, ինդուստրացման կամ հետպատերազմյան զարգացման ժամանակաշրջանի, երբ մեր երկիրը ստիպված էր արագացված տեմպերով զարգացնել էկոնոմիկայի առանձին կողմերը կամ ճյուղերը, սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ներկայիս կոնցեպցիան գիտության ու տեխնիկայի առաջնահերթ ուղղությունների արագ զարգացման հետ միասին նախատեսում է սովետական ժողովրդի բարեկեցության էական բարձրացում, կուլտուրական մակարդակի աճ, ամբողջ ապրելակերպի կատարելագործում:

Եթե վերցնենք գործի զուտ տնտեսական կողմը, ապա այստեղ արագացման հասկացության օգտագործման նորությունն այն է, որ այն նշանակում է ոչ միայն, նույնիսկ ոչ այնքան տնտեսական աճի տեմպերի բարձրացում, այլ աճի **նոր որակ,** որն ընդգրկում է արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացում գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա, էկոնոմիկայի կառուցվածքային վերակառուցում, կառավարման, աշխատանքի կազմակերպման ու խթանման արդյունավետ ձևեր: Առանց դրա անհնարին կլիներ լուծել այն բարդ խնդիրը, որի էությունն այն է, որ արդեն մինչև 2000 թվականը ազգային եկամուտը մեծացվի գրեթե 2 անգամ, կրկնապատկվի երկրի արտադրական պոտենցիալը՝ նրա արմատական որակական նորացմամբ հանդերձ:

Արագացման հասկացության նոր բովանդակությունը բացատրվում է փոփոխված ռեալ ներքին (ինչպես օբյեկտիվ, այնպես էլ սուբյեկտիվ) և միջազգային գործոններով: Վերցնենք, օրինակ, ելակետային տեխնիկատնտեսական մակարդակի



պրոբլեմը: Հասկանալի է, որ մեր երկրի նախորդ պատմական փուլերից ոչ մեկում նրա էկոնոմիկան երբեք չի եղել սոցիալ-տնտեսական այնպիսի բնագծերում, որոնք կարողանային համեմատվել ներկայիս բնագծերի հետ: Այժմ մեր երկիրն ունի անցյալում չտեսնված տնտեսական, գիտական և կուլտուրական պոտենցիալ, որը նրան հնարավորություն է ընձեռել առաջադրելու և լուծելու սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու այդպիսի մասշտաբային ու բարդ խնդիր:

Ինչ վերաբերում է միջազգային պայմաններին, որոնցում իրականացվում է արագացումը, ապա այստեղ ևս հսկայական տարբերություն է նկատվում: Ներկայումս չկա նախկին կապիտալիստական շրջապատումը, գոյություն ունի համաշխարհային սոցիալիստական սիստեմը, որը բարձր զարգացած էկոնոմիկայի, գիտական ամուր բազայի, հուսալի ռազմաքաղաքական պոտենցիալի վրա հենվող միջազգային հզոր կազմավորում է: Այն ընդգրկում է մարդկության մեկ երրորդից ավելին, տասնյակ երկրներ ու ժողովուրդներ, որոնք ընթանում են մարդու և հասարակության մտավոր ու բարոյական հարստությունների համակողմանի բացահայտման ուղիով: Մեր երկրի հետ սոցիալ-տնտեսական և գաղափարաքաղաքական անխախտ կապերով կապված բարեկամական սոցիալիստական պետությունների առկայությունը, անկասկած, նպաստում է ՍՍՀՄ սոցիալ-տնտեսական զարգացման ցանկացած խնդրի հաջող լուծմանը, այդ թվում դրա արագացմանը:

Ներքին ու միջազգային նպաստավոր պայմանները, տեխնիկատնտեսական ու մտավոր վիթխարի պոտենցիալի առկայությունը հնարավորություն տվեցին արագացման կոնցեպցիայի մեջ դնել նոր բովանդակություն, նրա իրականացման տեմպերի, ձևերի ու մեթոդների նոր ըմբռնում, մարդկային գործոնի աճած դերը:

Ի տարբերություն նախկինում առավելապես էքստենսիվ մեթոդներով իրականացվող արագացված զարգացման, ներկայումս առաջընթացի անկյունաքարն է դառնում էկոնոմիկայի, ամբողջ սոցիալական զարգացման ինտենսիվացումը: Այստեղից էլ էկոնոմիկայի կառուցվածքային վերակառուցման, գիտատեխնիկական հեղափոխության վերջին նվաճումների վրա, տեխնիկայի, ամբողջ արտադրության նորագույն ճյուղերի զարգացման, գիտատեխնիկական առաջադիմության արմատական արագացման, ռացիոնալ տնտեսավարման վրա հենվելու հրամայական պահանջը, որոնք թույլ են տալիս ոչ թե պարզապես ավելացնել արտադրանքը, այլ տալ հենց որակյալ արտադրանք, արդյունավետորեն ու խնայողաբար ապահովել արտադրության նպատակային վերջնական արդյունքը: Հատկանշական է, որ տասներկուերորդ հնգամյակում ազգային եկամտի և նյութական արտադրության բոլոր ճյուղերի արտադրանքի հավելաճը առաջին անգամ ամբողջովին ստացվելու է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Նախատեսվում է առաջիկա տասնհինգ տարում աշխատանքի արտադրողականությունն ավելացնել 2,3—2,5 անգամ, միաժամանակ ազգային եկամտի էներգատարությունը պակասեցնելով 1,4, իսկ մետաղատարությունը՝ 2 անգամ:

Այսօրվա պատմական իրողություններին համապատասխան ՍՄԿԿ XXVII համից իմաստավորվում է մարդկային գործոնի հարաճուն դերի, մարդկանց պրոֆեսիոնալ որակավորման, ընդհանուր կուլտուրական մակարդակի և կոմունիստական համոզվածության, նոր պրոբլեմների նրանց պարզ ու հստակ ըմբռնման, սովորական դարձած, բայց արդեն իրենց դարն ապրած պատկերացումներից հրաժարման, նորովի մտածելու և աշխատելու նրանց ձգտման ու կարողության հետ անխզելի կապի մեջ: Որպես դրա իրագործման կարևորագույն օրենք առաջ է քաշվում նաև պլանավորման կատարելագործումը, գիտական սոցիալական կառավարման ապահովումը բոլոր ոլորտներում և բոլոր մակարդակներում:

Այսօրվա պատմական իրադրություններին համապատասխան ՍՄԿԿ XXVII համագումարի փաստաթղթերում խոր վերլուծության են ենթարկված **բանվոր դասակարգի, սոցիալիզմի պատմական առաքելության մարքսիստական կոնցեպցիայի** նոր ասպեկտները: Այդ կոնցեպցիայում երևան են եկել նաև նոր կողմեր, որոնց վրա նրանցից դեռ մի քանի տարի առաջ պատշաճ ուշադրություն չէր դարձվում:

Ելակետ ընդունենք մարքսիզմի մի կենտրոնական գաղափարը, որը, որպես հանրագումարային գաղափար, բանիցս կրկնել է Ֆ. Էնգելսը: **Կոմունիստական կուսակցության մանիֆեստի** 1883 թվականի գերմաներեն հրատարակության առաջա-

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՐԱԳԱՑՈՒՄԸ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊԱՅՄԱՆՆ Է

**Է. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ**
*Հայկական ՍՍՀ առողջապահության մինիստր*

**ՍՄԿԿ** ԾՐԱԳՐՈՒՄ ՆՇՎԱԾ Է, որ սովետական մարդկանց առողջության ամրապնդումը առաջնակարգ կարևորության գործ է։ Կուսակցությունը խնդիր է դնում բժշկական բարձրորակ սպասարկման բոլոր տեսակների գծով ամենուր հասնել քաղաքային և գյուղական բնակչության պահանջմունքների բավարարմանը, արմատապես բարելավել այդ օգնության որակական մակարդակը։

Առողջությունը միշտ էլ եղել է հասարակության առաջընթացի ինտեգրացված ցուցանիշը։ Այսօրվա չափանիշներով այն ձեռք է բերում առաջնահերթ նշանակություն։ Եվ դա բացատրվում է մի շարք այնպիսի հիվանդությունների տարածմամբ, որոնք առավել շատ են առնչվում ժամանակակից մարդու ապրելակերպի, գործունեության բնույթի ու ռիթմի հետ։

Թող բնավ այն տպավորությունը չառաջանա, որ մեր օրերում մարդիկ ավելի հաճախ են հիվանդանում և մահանում, քան առաջ։ Սոցիալական գործոններն անցյալում եղել են խիստ ու դաժան։ Այդ են վկայում զանգվածային համաճարակները, մանկական և ընդհանուր մահացության անհամեմատ բարձր թվերն ու կյանքի միջին տևողության ցուցանիշները (40—45 տարի)։

Խոսելով հիվանդացության բնույթի փոփոխությունների մասին, առաջին հերթին նկատի է առնվում այն հիվանդությունների տարածումը, որոնք առավել սերտորեն են առնչվում այսօրվա մեր ապրելու և աշխատելու «տեխնոլոգիայի» հետ։

Ինչպես ամեն մի տեխնոլոգիա, այնպես էլ ապրելու և աշխատելու «տեխնոլոգիան» իր մեջ պարունակում է բացասական այնպիսի գործոններ, որոնց դեմ պայքարելը, նրանցից ձերբազատվելը կամ նրանց վնասակար ներգործությունը կանխելը հասարակության գործունեության գլխավոր խնդիրներից մեկն է։ Մեր դարաշրջանում զարգացած երկրներում հիվանդացության կառուցվածքային փոփոխությունները հիմնականում ընթանում են ոչ ինֆեկցիոն, խրոնիկական բնույթի այնպիսի հիվանդությունների տարածման ուղիով, ինչպիսիք են սրտանոթային, նյարդաէնդոկրին, օնկոլոգիական, ալերգիկ-իմունաբանական և այլ բնույթի հիվանդությունները, որոնք մեծ մասամբ հենց ժամանակակից մարդու ապրելու և աշխատելու «տեխնոլոգիայի» ծնունդ են հանդիսանում։

Հետևաբար, հիվանդությունների դեմ արդյունավետ պայքարի ռացիոնալ ուղու ընտրությունը պայմանավորված է ոչ միայն առողջապահության ստրատեգիական և տակտիկական նոր մշակումների անհրաժեշտությամբ, այլ նաև հասարակության առողջությունը պայմանավորող կենսասոցիալական գործոնների կարգավորումով։ Մեր օրերում «առողջության պահպանում» հասկացությունը չի կարող արտացոլել խնդրի բուն էությունը։ Խոսքն այսօր վերաբերում է ավելի բարձր կատեգորիային՝ «առողջության ամրապնդմանը», որը նշանակում է ազգաբնակչության կենսամակարդակի և կուլտուրայի անշեղ բարձրացման հետ մեկտեղ նպատակապալաց աշխատանք ծավալել մարդու կենսագործունեությունն ապահովող բնական միջավայրի բարենպաստ գործոնների պահպանման, արտադրական ու կենցաղային օպտիմալ պայմանների ստեղծման, առողջ ապրելակերպի ձևավորման, աշխատանքի և հանգստի ռացիոնալ ռեժիմի ապահովման ասպարեզներում։ Խնդրին այս դիրքերից մոտենալիս անհրաժեշտություն է առաջանում ձեռնամուխ լինել այնպիսի համապարփակ ծրագրերի մշակման, որոնք ռեալ կերպով ապահովեն հանրապետության աշխատավորության առողջության ամրապնդումը։

Նման ծրագրերի կազմումը նախ կայուն հիմք կստեղծի ոչ ինֆեկցիոն բնույթի խրոնիկական հիվանդությունների արդյունավետ կանխարգելման կազմակերպման համար, երկրորդ՝ կբարելավի հիվանդացության ստրուկտուրան, երրորդ՝ կապահովի աշխատանքի արտադրողականության կտրուկ բարձրացումը՝ հետևաբար և ազգային եկամտի աճը, որն իր հերթին կնպաստի ապրելու ու աշխատելու «տեխնոլոգիայի» կատարելագործմանը, հիվանդացության իջեցմանը և աշխատունակ կյանքի երկարացմանը։ Վերջերս հանրապետության կառավարությունը հաստատեց ՀՍՍՀ առողջապահության մինիստրության մշակած նման կոմպլեքսային մի ծրագիր, որի նպատակը մինչև 1990 թվականն ընկած ժամանակահատվածում մեր ազգաբնակչության հիվանդությունների կանխարգելման և առողջության ամրապնդման ուղղությամբ ծավալվող աշխատանքների իրականացումն է։ Հասկանալի է, որ նման ընդհանրացված բնույթի ծրագրում հնարավոր չէ ընդգրկել յուրաքանչյուր ձեռնարկությանը, բնակավայրին, քաղաքին, շրջանին բնորոշ առողջությունը խաթարող բացասական բոլոր գործոնները։ Ուստի անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր քաղաք և շրջան, ձեռնարկություն ու կոլեկտիվ, ելնելով կոնկրետ պայմաններից, մշակի առողջության ամրապնդման և հիվանդությունների կանխման նպատակային իր ծրագիրը։ Այս ծրագրերը հաջողությամբ կարող են իրագործվել միայն այն դեպքում, երբ ձեռնարկությունների ու կոլեկտիվների ղեկավարներն իրենց ձեռքը վերցնեն դրանց իրականացման պատասխանատվությունը։

Հանրապետությունում արդեն սկսվել են համընդհանուր դիսպանսերացման ուղղությամբ տարվող աշխատանքները։ Առանց կոմպլեքսային նպատակային ծրագրերի առկայության, համընդհանուր դիսպանսերացումը կնմանվի փաստագրական մի պրոցեսի, որի նպատակը կդառնա միայն հիվանդությունների հայտնաբերումը և բուժումը՝ դրանք հարուցող աղբյուրների մշտական գործելու պայմաններում։ Սուր վարակիչ հիվանդությունների դեմ մեր երկրում և աշխարհի երկրներում ծավալված պայքարի պատմությունը համոզիչ կերպով ցույց տվեց, որ վարակիչ հիվանդությունը բուժել, դեռևս չի նշանակում վերջնականապես կանխել նրա տարածումը։ Այսօր ինչպիսի կատարելության էլ հասնի, ասենք, հիպերտոնիկ հիվանդության բուժումը, միևնույն է, առավել մեծ արդյունք կարող ենք ստանալ, եթե պայքարն ուղղենք նրա առաջացման պատճառների դեմ։

Գիտական հարուստ նյութերի մշակումը ցույց է տալիս, որ XX դարի հաջողությունները, որոնք կապված են վաղաժամ մահվան կամ հաշմանդամության նվազեցման հետ, գերազանցապես պայմանավորված են ապրելու և աշխատելու միջավայրի առողջացմամբ։ Ամենահավաստի գիտական տվյալները ցույց են տալիս, որ մարդու առողջական վիճակը 52,1 տոկոսով կախված է ապրելակերպից, 20,4 տոկոսով կենսաբանական՝ այդ թվում ժառանգական առանձնահատկություններից, 19,9 տոկոսով՝ շրջապատող միջավայրից և 8,5 տոկոսով՝ առողջապահության և բժշկության մակարդակից։ Ահա ինչու կուսակցությունն այս հարցերը համարում է առաջնահերթ հոգածության առարկա։

ՍՄԿԿ XXVII համագումարում Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Առողջության պրոբլեմները մենք պետք է դիտենք լայն սոցիալական դիրքերից, դա որոշվում է նախ և առաջ աշխատանքի ու կենցաղի պայմաններով, բարեկեցության մակարդակով։ Եվ, իհարկե, հսկայական նշանակություն ունի ժողովրդական առողջապահությունը»։ Հետևաբար, հանգամանորեն մշակված նպատակային կոմպլեքսային ծրագրերը և դրանց անշեղ իրականացումը կարող են որակական նոր մակարդակի բարձրացնել ազգաբնակչության առողջության պահպանության հարցերի լուծումը։

Այս ամենը բնավ չի նշանակում, որ բժշկությունը քիչ անելիքներ ունի հիվանդությունների կանխարգելման և բնակչության առողջության ամրապնդման գործում։ Ընդհակառակը՝ այդ անելիքները շատ մեծ են և դրանք իրագործելու համար պա-

հանջվում է հասարակության բոլոր օղակների ամենաակտիվ մասնակցությունը:

Ասվածը փորձենք հաստատել կոնկրետ օրինակներով: Վերցնենք այնպիսի մի հարց, ինչպիսին աթերոսկլերոզն է: Առաջին հայացքից թվում է, որ այն զուտ բժշկական պրոբլեմ է: Սակայն նրա արմատներն ամբողջությամբ սուզված են մեր ապրելակերպի և գործելակերպի մեջ: Նախ անհրաժեշտ է նշել, որ աթերոսկլերոզը սրտի իշեմիկ հիվանդության և մի շարք այլ հիվանդությունների առաջացման ռիսկի կարևորագույն գործոններից է: Պարզված է, օրինակ, որ եթե արյան մեջ խոլեստերինը իջեցվում է 9 տոկոս, ապա սրտամկանի իշեմիկ հիվանդություններից առաջացած մահացությունը նվազում է 19 տոկոսով: Իսկ խոլեստերինի իջեցման գլխավոր ճանապարհը սննդի կարգավորումն է: Հանրահայտ է, որ օրգանիզմի նյութափոխանակության հավասարակշռումը ապահովվում է ստացված և ծախսված էներգիայով: Վերջինիս ավելցուկը, որ պայմանավորված է օրգանիզմ ներմուծված սննդամթերքի ավելի քանակներով, հանգեցնում է ճարպային հյուսվածքի քանակի շատացման: Իսկ սնուցման կալորիականության և արյան խոլեստերինի միջև հաստատված է ուղղակի կապ: Այսպես՝ եթե օրվա ընթացքում օրգանիզմ է ներմուծվում 2.500 կիլոկալորիա, ապա արյան մեջ խոլեստերինը կազմում է 2,1 միլիմոլ, իսկ 1.300 կիլոկալորիայի դեպքում՝ 1,6 միլիմոլ: Այս փոխպայմանավորվածությունը հայտնաբերված է գործնականորեն առողջ մարդկանց մոտ, մինչդեռ օրգանիզմի նախատրամադրվածության պայմաններում խոլեստերինի քանակը կարող է զգալի չափով գերազանցել նշված թվերը: Ուստի աթերոսկլերոզի կանխումը առաջին հերթին կախված է մեզնից յուրաքանչյուրից:

Սակայն այս ծանր հիվանդության առաջացումը պայմանավորված է ոչ միայն սննդով: Աթերոսկլերոզի հասունացմանը նպաստում են՝ ծխելը, ալկոհոլային խմիչքներ օգտագործելը, ֆիզիկական ակտիվության անկումը, հուզական լարվածությունը և մի շարք այլ գործոններ, որոնց կարգավորումը ըստ էության կախված է անհատից և ոչ թե բժշկի կամքից: Հավաստի գիտական տվյալները ցույց են տալիս, որ ժառանգական գործոնը ևս կարևոր դեր է խաղում այս հիվանդության զարգացման գործում:

Այսպիսով, ազգաբնակչության առողջության ամրապնդման առաջին նախապայմանը ռացիոնալ ապրելակերպ ստեղծելն է, որը մենք պետք է իրականացնենք հասարակության բոլոր անդամների ակտիվ աջակցության պայմաններում:

Կենսասոցիալական առումով լուրջ պրոբլեմ է ալկոհոլիզմը և առհասարակ ալկոհոլի օգտագործումը: Դրա սրությունը բացատրվում է ոչ միայն նրանով, որ ալկոհոլը թվացող «հաճույքի» քողի տակ քայքայում է առողջությունը, այլև սոցիալական ու հասարակական առումով ծնում է բազմաթիվ չարիքներ: Առողջապահության համաշխարհային կազմակերպության վերլուծությունը ցույց է տալիս, որ ալկոհոլի օգտագործումը ստեղծում է բազմաթիվ պրոբլեմներ, այդ թվում բժշկական, սոցիալական, իրավական:

Ալկոհոլի դեմ պայքարի հարցերը ևս լայն արտացոլում են գտել կոմպլեքսային ծրագրում, որի իրագործման համար նախատեսված է Հայկական ՍՍՀ բազմաթիվ մինիստրությունների, գերատեսչությունների, արտադրական ձեռնարկությունների ակտիվ մասնակցությունը:

Խոշորածավալ միջոցառումներ են նախատեսված նաև շրջակա միջավայրի առողջացման ուղղությամբ: Մասնավորապես աշխատանքներ կտարվեն քաղաքների միկրոկլիմայի բարելավման, ջրային ավազանների պահպանման, գյուղատնտեսության մեջ թունաքիմիկատների և պարարտանյութերի ռացիոնալ օգտագործման, ավտոմոբիլային տրանսպորտի շահագործման, արդյունաբերական ձեռնարկությունների արտանետվածքների վնասազերծման ասպարեզում: Միջոցառումների մի ամբողջ շարք վերաբերում է աշխատանքի պայմանների բարելավմանն ու աշխատանքի պաշտպանությանը: Միջոցառումներ են մշակվելու հանրապետության տարբեր շրջաններում և խոշոր արդյունաբերական ձեռնարկություններում զարկերակային հիպերտոնիայի դեմ պայքարելու համար: Հիպերտոնիկ հիվանդությունն այսօր զարգացած երկրների «պատուհասն» է դարձել: Հավաստի գիտական տվյալները վկայում են, որ հիպերտոնիկ հիվանդության դեմ ծավալված հաջող պայքարի դեպքում կարելի է հասնել սրտանոթային համակարգի հիվանդություններից առաջացած մա-



հացության զգալի կրճատման: Արյան բարձր ճնշումը ուղեղային կաթվածի, սրտամկանի ինֆարկտի և մի շարք այլ հիվանդությունների գլխավոր «ռիսկի» գործոնն է համարվում: Այսօր բժշկությունը ստեղծել է արդյունավետ դեղամիջոցներ, որոնց օգնությամբ հնարավոր է տարիներ շարունակ կարգավորել արյան ճնշումը և կանխել անոթային աղետի հասունացումը: Այդուհանդերձ, շատ-շատերը տեղյակ չեն իրենց արյան ճնշման վիճակին: Մինչդեռ այս հիվանդության վաղ հայտնաբերումը հնարավորություն կընձեռի առավել արդյունավետ կազմակերպել նրա բուժումը: Բացի զուտ բժշկական միջոցառումներից, կոմպլեքսային ծրագիրը հնարավորություն կտա իրականացնելու այնպիսի միջոցառումներ, որոնք ուղղված կլինեն այս հիվանդության կանխարգելմանը, այսինքն հիպերտոնիկ հիվանդության առաջացմանը նպաստող ռիսկի գործոնների դեմ պայքարի նպատակին:

Լուրջ ռիսկի գործոն է կերակրի աղը: Սննդամթերքում դրա սահմանափակումը արյան ճնշումը կարգավորելու ուղիներից մեկն է: Հետևաբար պետք է բացատրական աշխատանք տանել այն ուղղությամբ, որ ազգաբնակչության մեջ կերակրի աղի նկատմամբ մշակվի որոշակի վերաբերմունք՝ նրա օգտագործումը կրճատելու առումով: Նույնպիսի վերաբերմունք պետք է մշակվի սննդամթերքների արտադրության բնագավառում: Գիտական հետազոտությունները ցույց են տալիս, որ նատրիումի օգտագործումը (նկատի ունենք կերակրի աղը) պետք է նվազեցվի շուրջ 50 տոկոսով: Սակայն սա ռիսկի գործոնի միայն մեկ օրինակ է: Հիպերտոնիկ հիվանդության առաջացման լուրջ գործոններ են նաև ալկոհոլը, ծխախոտը, ճարպային սնունդը, ֆիզիկական թերակտիվությունը և այլն: Հետևաբար, հասարակական զգոնության բարձրացումը այս հարցերի նկատմամբ պետք է դառնա մեր առաջնահերթ խնդիրներից մեկը:

Հիվանդությունների կանխման և առողջության ամրապնդման կոմպլեքսային միջոցառումների հետ մեկտեղ, իհարկե, առաջնային անհրաժեշտություն է բժշկական տեխնոլոգիայի կատարելագործումը: Վերջին երկու տասնամյակներում արմատական տեղաշարժեր եղան բժշկական տեխնոլոգիայի բնագավառում: Ստեղծվեցին նորագույն սարքավորումներ, որոնք կատարյալ հեղաշրջում մտցրին բազմաթիվ հիվանդությունների բուժման և ախտորոշման գործում: Օրինակ, կոմպյուտերային տոմոգրաֆիան կամ միջուկային մագնիսական ռեզոնանսային տոմոգրաֆիան որակապես նոր մակարդակի վրա բարձրացրին հիվանդությունների ախտորոշման հարցերը:

Այսօր բժշկության մեջ չափազանց կարևոր դեր են խաղում նաև ուլտրաձայնային սկեներները, կենսաքիմիական անալիզատորները, ռադիոիմունաբանական և իմունոֆերմենտային անալիզի սարքերը, որոնք, իրավ, բժշկությունը որակական նոր մակարդակի են բարձրացնում: Վերջին 20 տարիներին կլինիկական լաբորատորիաներում կենսաքիմիական հետազոտությունների թիվն ավելացել է շուրջ 10 անգամ և շարունակում է յուրաքանչյուր տարի աճել մինչև 20 տոկոսով:

Սակայն նոր տեխնոլոգիան ծնում է նաև նոր պրոբլեմներ, որոնցից գլխավորներն են՝ որակյալ կադրերի առկայությունը, բժիշկների կողմից թանկարժեք և բարձրարտադրողականություն ունեցող սարքավորումների նպատակային և արդյունավետ օգտագործումը, ստացված արդյունքների ճիշտ մեկնաբանումը և հիմնավորված բուժման ընտրության հնարավորությունը, ազգաբնակչության լայն խավերի համար մատչելիությունը, օգտագործման տնտեսական նպատակահարմարությունն ու արդյունավետությունը և այլն:

Այս հարցերի լուծման ռացիոնալ ուղիներից մեկը, հավանաբար, կենտրոնացված լաբորատոր-ախտորոշիչ ծառայություն կազմակերպելն է, որի պայմաններում նախ կտրուկ բարձրանում է տնտեսական արդյունավետությունը (1.500 մարդ սպասարկելու դեպքում՝ 2 անգամ) և ապա ստեղծվում են հնարավորություններ սարքավորումները առավել նպատակային ու արդյունավետ օգտագործելու համար: Նշված նկատառումները հիմք դարձան, որպեսզի դեռևս 1984 թվականին ստեղծվի հանրապետական ախտորոշիչ կենտրոն, որտեղ այսօր կատարվում են արդի բժշկության ամենաբարդ հետազոտությունները: Կենտրոնի բազայի վրա ՍՍՀՄ գիտության և տեխնիկայի պետական կոմիտեի կողմից ստեղծվել է գիտահետազոտական լաբորատորիա, որի վրա դրված է Միության տարբեր ռեգիոնների համար նույն կարգի կենտրոնների կազմակերպման սկզբունքների մշակման պատասխանատու գործը,

քանի որ այն իր տեսակի մեջ այսօր միակն է մեր երկրում: Ախտորոշիչ կենտրոնը հետագա զարգացում կապրի տասներկուերորդ հնգամյակում: Նախատեսված են կենտրոնի ենթաճյուղեր ստեղծել Լենինականում, Կիրովականում, Ղափանում: Հանրապետության բոլոր շրջանները հեռատիպային կապով կմիանան կենտրոնին: Արդեն այսօր հիվանդների անալիզների արդյունքները մշակվում են կենտրոնի հաշվողական համակարգի օգնությամբ, և հավանական ախտորոշումը հայտնվում է բուժող բժշկին՝ որպես ուղեցույց: Ստացված արդյունքների հիման վրա ստեղծվում է հանրապետության բնակչության առողջության վերաբերյալ տվյալների բանկ, որը կօգնի առավել ռացիոնալ կազմակերպելու մեր ազգաբնակչության առողջության պահպանման հետ կապված միջոցառումները, հատկապես դիսպանսերացման աշխատանքները:

Տասներկուերորդ հնգամյակում աշխատանքներ կծավալվեն առողջապահության և բժշկության կոմպյուտերիզացիայի ուղղությամբ: Նախորդ հնգամյակում մշակվեցին և ներդրվեցին մի շարք համակարգեր, որոնք խթան հանդիսացան զգալի չափով կատարելագործելու իրականացվող միջոցառումների բովանդակությունը: Օրինակ, տարիներ շարունակ հիվանդանոցային մահճակալների օգտագործման անարդյունավետությունը հնարավոր դարձավ կարգավորել ամենամսյա կոմպյուտերային հսկողության ներդրման շնորհիվ: Առաջիկայում ավելի լայն ծավալ կստանա կառավարման ավտոմատ համակարգերի ներդրումը ինչպես առողջապահության բնագավառում, այնպես էլ գործնական բժշկության մեջ, մասնավորապես պոլիկլինիկաներում: Այսպես, տասներկուերորդ հնգամյակում նախատեսված է 8 հիվանդանոցներում և 40 պոլիկլինիկաներում ներդնել կառավարման ավտոմատ համակարգեր: Կմշակվեն արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողների դիսպանսերացման մաթեմատիկական ծրագրեր, որոնք կներդրվեն Երևանի ալյումինի գործարանում և «Լույս» արտադրական միավորումում: Ազգաբնակչության դիսպանսերացման կոմպյուտերային մեթոդն արդեն մշակվել և ներդրվել է Երևանի № 3 պոլիկլինիկայում: Հանրապետությունում դեղորայքային ապահովվածությունը կատարելագործելու նպատակով այժմ մշակվում է և կներդրվի դեղորայքային ապահովման պլանավորման ծրագիրը, որը զգալի չափով կբարելավի մեր աշխատանքները նաև այս բնագավառում: Իրագործվող միջոցառումները հնարավորություն կտան հանրապետության առողջապահության համակարգում ապահովել գիտատեխնիկական առաջընթացի արագացումը նոր, առավել բարձր մակարդակի վրա: Գործնական բժշկության մեջ հետազոտման նորագույն մեթոդների լայն ներդնումը, որտեղ գլխավորը կլինի հաշվողական տեխնիկան, հնարավորություն կտա բժիշկներին ազատվելու հիվանդների վերաբերյալ ստացված նախնական տվյալների մշակումից և կօգնի ճիշտ ախտորոշման ու բուժման տակտիկայի ընտրության գործում, որն այսօր իրականացվում է հանրապետական ախտորոշիչ կենտրոնում: Բացի այդ, կոմպյուտերիզացիայի զարգացումը առողջության բնագավառում, մասնագիտական առումով, նպաստավոր պայմաններ կստեղծի բժիշկների համար՝ լայնորեն օգտվելու ազգաբնակչության առողջության վերաբերյալ տվյալների հանրապետական հարուստ բանկից և ստանալու բարձրորակ բժշկական կոնսուլտացիա:

Նշելով բժշկության մեջ կոմպյուտերների արմատավորման անհրաժեշտությունը, այդուհանդերձ պետք է զգուշանալ «կոմպյուտերային գործոնի» դերի գերագնահատումից և միշտ նկատի ունենալ բժիշկ—հիվանդ կապի անհրաժեշտությունը, դրա հսկայական բուժական նշանակությունը: Դա կարևոր դեոնտոլոգիական խնդիր է, և երբեք դուրս չպետք է մնա ուշադրության կենտրոնից: Մարդկային հասարակության մեջ որոշիչը մարդկային գործոնն է, իսկ տեխնիկան պետք է ավելի ճկուն և արդյունավետ դարձնի նրա աշխատանքը: Հանրահայտ է, որ բժիշկ—հիվանդ փոխհարաբերություններում բժշկի մարդասիրական կերպարը էական դեր կարող է խաղալ հիվանդության բարենպաստ ելքի համար: Սա չափազանց հզոր գործոն է, սակայն, ցավոք, մեծ մասամբ նրա նշանակությունն ընդունվում է միայն բարոյախոսական առումով, և չկան այնպիսի հստակ օբյեկտիվ չափանիշներ, որոնց օգնությամբ հնարավոր լիներ գնահատել տվյալ բժշկի մարդասիրությունը, վարվելաձևը, հավատ ներշնչելու ունակությունը և այլն: Այսօր գնահատման ընդունված չափանիշը «լավ» կամ «վատ» բժիշկ բնորոշումն է, որը որոշ դեպքերում նշանակում է



սրտառուչ, մարդասեր կամ հակառակը՝ անհոգի, անտարբեր բժիշկ, որոշ դեպքերում՝ որակյալ կամ անորակ մասնագետ, իսկ երբեմն էլ և՛ մեկը, և՛ մյուսը: Լավագույնը, անշուշտ, սրտառուչ, մարդասեր և բարձր որակավորում ունեցող մասնագետն է, որն ավելի շատ է համապատասխանում «լավ բժիշկ» հասկացությանը: Սակայն հազվադեպ չէ, որ անձի հատկանիշների կատարելագործումն ավելի շատ ընթանում է մասնագիտական բաղադրատարրերի, քան մարդասիրության կատարելագործման ուղիով: Դա հաճախ այն բանի հետևանքն է, որ խրախուսման ու խթանման մեր մեթոդներն ավելի շատ ուղղված են մասնագիտական, քան վարքագծային արժեքների զարգացման նպատակին: Եվ, ի վերջո, հաճախ ստացվում է մասնագիտական բարձր և մարդկային ամենևին էլ ոչ լավագույն հատկանիշներով օժտված բժիշկ-մասնագետ, որի կատարելությունը տառապում է դեոնտոլոգիական լիարժեքության բացակայությամբ: Այսպիսի բժշկից, ինչպիսի մեծություն էլ լինի, բուրում է ռոբոտային սառնություն, անտարբերություն և արհեստավորայնություն, հատկություններ, որոնք անհամատեղելի են բժշկի բուն էության հետ: Հարկ է նշել, որ թվարկած հատկանիշները առավել խորանում են մեր օրերում բժշկության մեջ «ինստրումենտալիզմի» բուռն զարգացման հետևանքով:

Հետզհետե կրճատվում է այն ժամանակը, որ բժիշկը հատկացնում է հիվանդին: Վերջինս դեղերից ավելի շատ բժշկի ամոքիչ, հուսադրող խոսքի կարիքն ունի, իսկ նա ուղղակի խեղդվում է գրագրությունների, անհրաժեշտ և ոչ անհրաժեշտ գրառումներ կատարելու, մշտապես շտապելու պատճառով: Դրա հետևանքով երկուսն էլ տուժում են. հիվանդը՝ առողջական, բժիշկը՝ մասնագիտական առումով: Կորցնելով հոգեբանական կապը հիվանդի հետ, բժիշկը կորցնում է նաև հիվանդության արդյունավետ բուժման մեծ հնարավորություններ, քանի որ այնպիսի հզոր միջոց, ինչպիսին խոսքի և ներշնչման ուժն է, դուրս է մնում հիվանդության ընթացքի վրա ներգործելու ոլորտից: Հիվանդը, կորցնելով հոգեբանական կապը բժշկի հետ, կորցնում է նաև հավատը սեփական հիվանդության դեմ պայքարելու իր օրգանիզմի հնարավորությունների նկատմամբ: Նման փոխհարաբերություններն է՛լ ավելի են բարդանում բժշկության մեջ ժամանակակից տեխնիկայի ու կոմպյուտերային համակարգերի ներթափանցման պայմաններում, հանգամանք, որը հարկադրում է ուղիներ որոնելու բժշկի դրական վարքագծային հատկանիշների խթանման և կատարելագործման նպատակով:

Մարդկային հատկանիշներն իրենց արժեքավորումը ստանում են մարդկային փոխհարաբերությունների պրոցեսում, ուստի և բոլոր պարագաներում բժշկի մարդասիրական հատկանիշների գնահատումը պետք է իրականացվի հիվանդի կողմից, քանի որ դրանք պրոֆեսիոնալ առումով ամենացայտուն ձևով դրսևորվում են բժիշկ—հիվանդ փոխհարաբերությունների ընթացքում: Այսպիսով, եթե մենք ցանկանում ենք տալ բժշկի դեոնտոլոգիական բնութագիրը, ապա առաջին հերթին պետք է հենվենք այն հիվանդների հավաստի կարծիքի վրա, որոնց հետ աշխատել է բժիշկը: Ահա այս դրույթներից ելնելով, ՀՍՍՀ առողջապահության մինիստրությունում մշակվել է բժշկի դեոնտոլոգիական կերպարը գնահատող մի համակարգ, որի օգնությամբ փորձ է արվում հիվանդի հանդեպ բժշկի դրսևորած վարքագծային առանձնահատկությունները գնահատել քանակական կատեգորիաներով և նյութական ու բարոյական խրախուսման ժամանակ առաջնորդվել ստացված արդյունքներով: Նշված համակարգի էությունն այն է, որ հիվանդը, հատուկ կտրոնի վրա ընդգծում է այն գնահատականը (1, 2, 3, 4, 5), որն առավել մոտ է իրեն բուժող բժշկի վարքագծային կերպարին: Իսկ մասնագիտական առումով տրվող գնահատականը, իհարկե, մասնագետների իրավասության հարցն է: Տրված գնահատականները ամիս առ ամիս, եռամսյակ առ եռամսյակ, կիսամյակ առ կիսամյակ մշակվում են մինիստրության հաշվողական կենտրոնում և ստացված տվյալները հաղորդվում առողջապահական այն հաստատությունները, որտեղ աշխատում է բժիշկը: Ստացված գնահատականներին համապատասխան իրականացվում են նյութական և բարոյական բնույթի խրախուսման կամ, ընդհակառակը, պարսավանքի միջոցառումներ, նայած թե բժիշկն իրեն ինչպես է դրսևորել: Այժմ մայրաքաղաքի ութ հիվանդանոցներում այս համակարգն անցնում է իր փորձաշրջանը, և նախնական տվյալները վկայում են, որ նկատված անհարթությունների շտկումից հետո, այն կարող է որոշակի դրական դեր

խաղալ բժշկի դեոնտոլոգիական վարքագծի կատարելագործման, պատասխանատվության բարձրացման, ադմինիստրացիայի կողմից նրա գործունեության գնահատման խնդրում: Ըստ որում անհրաժեշտ է ընդգծել, որ հիվանդների կողմից տրված գնահատականի օբյեկտիվությունը մեծապես կախված կլինի բժշկի շուրջը ստեղծված ընդհանուր կարծիքի մասսայականության աստիճանից, այսինքն՝ ամիս առ ամիս, տարի առ տարի բուժված հիվանդների թիվը մեծանալով կնպաստի տվյալ բժշկի շուրջը ձևավորվող կարծիքի օբյեկտիվացմանը: Այսպես օրինակ, եթե մեկ ամսում բժշկի դեոնտոլոգիական կերպարի վերաբերյալ իրենց կարծիքները կարող են հայտնել 30—40 հիվանդ, մեկ տարում, բնական է, այդ թիվը կբազմապատկվի, իսկ տարիների ընթացքում կդառնա մի պատկառելի թիվ: Այդ թվից հաշվարկված միջին գնահատականը, որը կարտացոլի բոլոր հիվանդների կարծիքը բժշկի դեոնտոլոգիական կերպարի վերաբերյալ, կլինի նրա հեղինակության իրական պատկերի քանակական արտահայտությունը:

Այսպիսով, հիվանդի նկատմամբ բժշկի վարքագծային դրսևորումները դնելով իր իսկ հիվանդի գնահատման հնարավորության պայմաններում, բժշկի ամենօրյա գործունեության մեջ հավանաբար կարելի է հասնել մարդկային այն հատկանիշների խթանմանը, որոնց դեֆիցիտը մենք զգում ենք այսօր:

Մեր հանրապետությունում բժշկագիտության զարգացման հեռանկարներին էր նվիրված 1985 թ. նոյեմբերին կայացած ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի նախագահությունների և հանրապետության առողջապահության մինիստրության կոլեգիայի միացյալ նիստը: Ինքնին հասկանալի է, որ առողջապահության բնագավառում գիտատեխնիկական արագացումն անհնար է իրագործել առանց բժշկագիտության հիմնական ուղղությունների զարգացման և բարձրորակ կադրերի պատրաստման: Այս նկատառումներն էլ հիմք հանդիսացան ստեղծելու գիտական հետազոտությունների համատեղ կոմպլեքսային ծրագիր, որը նախատեսում է ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի և առողջապահության մինիստրության գիտահետազոտական հաստատությունների համագործակցությունն այնպիսի մի շարք արդիական խոշոր կենսասոցիալական պրոբլեմների ուսումնասիրման բնագավառում, ինչպիսիք են սրտանոթային համակարգի հիվանդությունները, աշխատանքի հիգիենայի, պրոֆեսիոնալ ախտաբանության և ընդհանուր հիգիենայի գիտական հիմունքները, օնկոլոգիական հիվանդությունների կանխարգելման, ախտորոշման և բուժման կատարելագործումը, մայրության և մանկության պաշտպանության գիտական հիմունքները, ՀՍՍՀ կուրորտային շրջանների բնական ռեսուրսների զարգացումը և ռացիոնալ օգտագործումը, հանրապետությունում առավել տարածված հիվանդությունների համաճարակաբանությունը, կանխարգելումը, ախտորոշումը և բուժումը:

Այս հարցերի գիտական մշակմանը մասնակից են դարձել ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի բժշկական էնզիմոլոգիայի, ընդհանուր ախտաբանության և ախտաբանական ֆիզիոլոգիայի, դեղաբանության, նեյրոֆիզիոլոգիայի, Սիբիրի մասնաճյուղի կլինիկական և փորձարարական բժշկության, Ա. Ն. Սիսինի անվան ընդհանուր և կոմունալ հիգիենայի, բժշկական ռադիոլոգիայի, բժշկական գենետիկայի, մանկաբուժության, Ն. Ֆ. Գամալեայի անվան համաճարակաբանության և միկրոկենսաբանության, Ի. Դ. Իվանովսկու անվան վիրուսոլոգիայի, նյարդավիրաբուժության, տուբերկուլյոզի և մի շարք այլ գիտահետազոտական ինստիտուտներ:

Մինչև 2000 թվականը նախատեսված է համամիութենական բժշկագիտական կենտրոնների բազայի վրա պատրաստել բժշկագիտության շուրջ 103 գիտությունների դոկտորներ և 300-ից ավելի գիտությունների թեկնածուներ՝ վիրաբուժության, թերապիայի, մանկաբարձության և գինեկոլոգիայի, մանկաբուժության, սրտաբանության, նյարդաբանության, ուռուցքաբանության, ալերգաբանության և իմունաբանության, ռևմատոլոգիայի, էնդոկրինոլոգիայի, հիգիենայի, գենետիկայի, կենսաֆիզիկայի և բժշկագիտության այլ ճյուղերի գծով:

Այսպիսով, հանրապետությունում առողջապահության և բժշկագիտության առջև դրված ծավալուն խնդիրների հետևողական լուծումը էապես կխթանի ժողովրդական առողջապահության հետագա զարգացմանն ու կատարելագործմանը:

---

# ՊԱՇՏՊԱՆԱԿԱՆ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻՆ՝ ՄՇՏԱԿԱՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ

**Գ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու,
պահեստի գնդապետ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ կոմունիստական կուսակցությունը, հետևողականորեն կենսագործելով Վ. Ի. Լենինի պատգամները, մշտապես մեծ ուշադրություն է դարձնում սոցիալիզմի նվաճումների պաշտպանության, ժողովուրդների խաղաղության և անվտանգության գործին:*

*ՍՄԿԿ XXVII համագումարը համայն մարդկությանը վերստին հավաստեց, որ սովետական արտաքին քաղաքականությունը կողմնորոշված է պետությունների հարաբերություններում փոխըմբռնման որոնումներին, երկխոսությանը, խաղաղ գոյակցության հաստատմանը: «Մենք կոչ ենք անում սոցիալական ուրիշ սիստեմի պատկանող պետությունների ղեկավարներին,— հայտարարեց ընկեր Մ. Ս. Գորբաչովը համագումարի փակման ժամանակ,— պատասխանատվությամբ մոտենալ համաշխարհային քաղաքականության այսօրվա հանգուցային պրոբլեմին՝ պատերազմի և խաղաղության պրոբլեմին»:*

*Ագրեսիվ իմպերիալիստական շրջանները, չցանկանալով հաշվի առնել աշխարհում գոյություն ունեցող իրողությունները, վարում են միջազգային հարաբերություններում լիցքաթափումը խափանելու, սպառազինությունների մրցավազքը սաստկացնելու, մյուս երկրներին ու ժողովուրդներին սպառնալու և նրանց ներքին գործերին միջամտելու քաղաքականություն:*

*Ընդլայնելով միլիտարիստական պատրաստությունների, հրթիռամիջուկային պատերազմի նյութական նախապատրաստման մասշտաբները՝ իմպերիալիստները փորձում են ամրապնդել իրենց դիրքերը և բոլոր միջոցներով թուլացնել սոցիալիստական երկրների միասնությունը, ոչնչացնել սոցիալիզմի նվաճումները: Այդպիսիք են ամերիկյան ռազմական դոկտրինայի գլխավոր ստրատեգիական դրույթները: Այդ ամենը մեկ անգամ ևս հաստատում է մարքսիստական հետևությունն այն մասին, որ իմպերիալիզմը եղել ու մնում է պատերազմի աղբյուր:*

*Առաջնորդվելով սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան ուսմունքով՝ ՍՄԿԿ-ն գիտական մոտեցում է ցուցաբերում ռազմական շինարարության, երկրի պաշտպանունակության ամրապնդման պրոբլեմների լուծման նկատմամբ: Երկրի պաշտպանունակության հետագա ամրապնդման նպատակով կոմունիստական կուսակցության ծավալած գործունեությունը բազմաբնույթ է: Այդ գործունեության կարևոր ուղղությունը աշխատավորների և աճող սերնդի շրջանում տարվող պաշտպանական-մասսայական աշխատանքն է: Դա միջոցառումների մի ամբողջ համակարգ է և նպատակ ունի սովետական քաղաքացիներին համակողմանիորեն նախապատրաստել սոցիալիստական հայրենիքի պաշտպանության իրենց հայրենասիրական պարտքի կատարմանը:*

*Պաշտպանական-մասսայական աշխատանքի մյուս կարևոր ուղղությունը չափահաս բնակչության ռազմական ուսուցումն է, ռազմատեխնիկական, ռազ-*

մամարզական, ռազմասանիտարական պատրաստությունը։ Այստեղ հատուկ ուշադրություն է նվիրվում աշխատավորությանը քաղաքացիական պաշտպանության բնագավառի գիտելիքներով ու պրակտիկ գործողությունների ունակություններով զինելուն. զանգվածային ոչնչացման զենքից պաշտպանվելու, հակառակորդի հնարավոր միջուկային հարվածների հետևանքները վերացնելու, նման դեպքերում տուժածներին օգնություն ցույց տալու, սպասարկման և ժողովրդական տնտեսության օբյեկտների, կապի ու տրանսպորտի միջոցների նորմալ գործունեության պայմաններ ապահովելու միջոցների ուսուցմանը, դեսանտի և դիվերսիոն խմբերի դեմ պայքարելու ձևերի ու մեթոդների յուրացմանը։

Աշխատավորների շրջանում տարվող պաշտպանական-մասսայական աշխատանքը համակուսակցական ու համապետական կարևոր խնդիր է և այն չի կարելի հանգեցնել սոսկ ռազմատեխնիկական ու ռազմամարզական պրոպագանդային կամ ՊԱՊ-ի նորմաների հանձնմանը և բանակի ու նավատորմի համար մասնագետների պատրաստմանը։ Այդ աշխատանքը տեղերում իրականացնում են կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և մարզական կազմակերպությունները, քաղաքացիական պաշտպանության շտաբները, զինկոմիսարիատները, ԴՕՍԱԱՖ-ի, Կարմիր խաչի կազմակերպությունները և համապատասխան գերատեսչությունները, կոմիտեներն ու մինիստրությունները՝ ռազմական խորհուրդների, քաղմարմինների, շտաբների և զորամասերի ու հիմնարկների կուսակցական կազմակերպությունների աջակցությամբ։

Պաշտպանական-մասսայական ու ռազմահայրենասիրական աշխատանքները փոխկապակցված են և, չնայած յուրաքանչյուրը նպատակամղված է իրեն հատուկ խնդիրների լուծմանը, հայրենիքի պաշտպանների պատրաստման գործում հանդես են գալիս որպես միասնական պրոցես։ Մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունը, ղեկավարվելով պաշտպանական-մասսայական, ֆիզկուլտ-մարզական աշխատանքի վերաբերյալ կուսակցության պահանջներով, աշխատավորներին դաստիարակում է սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, հայրենիքին նվիրվածության, սոցիալիզմի նվաճումների պաշտպանությանը միշտ պատրաստ և զգոն լինելու ոգով։ Պաշտպանական-մասսայական և ռազմահայրենասիրական աշխատանքի հարցերին պարբերաբար անդրադառնում են հանրապետության ղեկավար կուսակցական և սովետական մարմինները, դրանք քննարկվում են աշխատավորական կոլեկտիվներում, կուսակցական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունների ժողովներում, ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետների գործկոմների նիստերում։ Այդ ամենը նպատակաուղղված բնույթ է հաղորդում պաշտպանական-մասսայական և ռազմահայրենասիրական աշխատանքին, երիտասարդությանն օգնում ավելի լավ նախապատրաստվել ՍՍՀՄ զինված ուժերում ծառայելուն, իսկ աշխատավորներին՝ բարոյահոգեբանական, ֆիզիկական ու ռազմական առումով միշտ պատրաստ լինել սոցիալիստական հայրենիքի պաշտպանությանը։

Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը նշեց. «Գաղափարաքաղաքական աշխատանքում առանցքային նշանակություն ունի աշխատավորների ինտերնացիոնալ, հայրենասիրական դաստիարակությունը։ Այդ աշխատանքը միշտ եղել և մնում է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ ...Կուսակցական, կոմերիտական կոմիտեների մշտական հոգատարության առարկա է մեր սովետական հայրենիքի համար հպարտության, հայրենասիրական և ինտերնացիոնալ պարտքի կատարման պատրաստակամության դաստիարակումը երիտասարդության մեջ»։ Այդ նպատակով հանրապետությունում կիրառվում են ագիտացիոն-մասսայական, պրոպագանդիստական, կազմակերպչական և քաղաքական աշխատանքի բազմազան ձևեր, օգտագործվում են թանգարանների և ցուցահանդեսների, հեռուստատե-



սության և ռադիոյի, կենտրոնական և տեղական մամուլի, գրականության և արվեստի հնարավորությունները։ Մեծ ուշադրություն է նվիրվում զորամասերի անձնակազմերի և սահմանապահների հետ աշխատավորական կոլեկտիվների ռազմաշեֆական կապերի ամրապնդմանը։ Ըստ կուսակցական և կոմերիտական կազմակերպություններում մշակված աշխատանքային պլանների անցկացվում են դասախոսություններ, զեկուցումներ, մարտական և աշխատանքային փառքի երեկոներ, արիության դասեր, կուսակցության, պատերազմի և աշխատանքի, բանակի և նավատորմի վետերանների հետ հանդիպումներ, գիտատեխնիկական ու գործնական կոնֆերանսներ, արշավներ կազմակերպվում դեպի մարտական և հեղափոխական փառքի վայրերը, գումարվում հեղափոխական իրադարձություններին և հոբելյանական տարելիցներին, ՍՄԿԿ-ի և սովետական պետության, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման ականավոր գործիչներին նվիրված հանդիսավոր ժողովներ։ Հանրապետության «Գիտելիք» ընկերության վարչությունը մշակում է աշխատավորների ռազմահայրենասիրական դաստիարակության պրոբլեմներին նվիրված դասախոսությունների թեմատիկաներ ու մեթոդական նյութեր, ընկերության շրջանային կազմակերպություններին և ակտիվիստներին օգնում մարդկանց հետ աշխատանք տանելու գործում։

Ակտիվ աշխատանքով շոշափելի նպաստ են բերում պատերազմի և զինված ուժերի վետերանները, որոնք հաղորդում են իրենց կենսական ու մարտական փորձը, կազմակերպում և անցկացնում «արիության դասեր», օգնում կահավորելու մարտական փառքի սենյակներ ու անկյուններ, հանդես գալիս բազմաթիվ արժեքավոր ռազմահայրենասիրական միջոցառումների նախաձեռնությամբ։ Հիշարժան են պատերազմի վետերաններ՝ գեներալներ Ա. Ղազարյանը, Հ. Մարտիրոսյանը, Գ. Հարությունյանը, Ա. Ամատունին, սպաներ Վ. Մուրադյանը, Ա. Դանիելյանը, Ի. Կարախանյանը, Գ. Գասպարյանը, Վ. Ադամյանը, Վ. Սահարյանը, Մ. Կարապետյանը և ուրիշներ։

Պաշտպանական-մասսայական և ռազմահայրենասիրական ավանդական միջոցառումների վայր են դարձել «Հաղթանակ» զբոսայգին, Սարդարապատի ճակատամարտի «Զինակիցների եղբայրություն», «Հավերժ միասին» հուշահամալիրները։ Այսպես, օրինակ, ամեն տարի մայիսի 9-ին Սարդարապատի ճակատամարտի հուշարձանի մոտ անցկացվում է կուսակցության, պատերազմի և աշխատանքի, լենինյան կոմերիտմիության վետերանների հավաք, որին մասնակցում են էջմիածնի, Աշտարակի, Արտաշատի, Մասիսի և Հոկտեմբերյանի շրջանների աշխատավորության ու երիտասարդության լայն զանգվածներ, սահմանապահ ռազմիկներ։ Իրականացվում են տարբեր կարգի պաշտպանական-մասսայական միջոցառումներ, հրաձգության և նռնականետման մրցումներ, ավտո-մոտոկրոսներ, ռազմականացված խաղեր։

Առաջավոր ձեռնարկությունների և միավորումների փորձը վկայում է, որ ձեռք բերված աշխատանքային հաջողությունները անմիջականորեն կապված են աշխատավորների հայրենասիրական դաստիարակության ասպարեզում կուսակցական և հասարակական կազմակերպությունների ծավալած աշխատանքի հետ։ Դա պարզորոշ երևում է Լենինականի Մայիսյան ապստամբության անվան բամբակե գործվածքների արտադրամիավորման, լոկոմոտիվային դեպոյի, Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի, Զարենցավանի ավտոտրանսպորտային ձեռնարկության փորձով։ Օրինակ, Լենինականի վերը նշված արտադրամիավորումում գործում է ինտերնացիոնալ բարեկամության ակումբ, որտեղ անցկացվում են աշխատավորների քաղաքական և բարոյահոգեբանական դաստիարակության բազմաթիվ միջոցառումներ՝ ժողովուրդների բարեկամության երեկոներ, սոցիալիստական մրցության հաղթողների, Մայիսյան ապստամբության մասնակիցների և պատերազմի վետերանների հանդիպումներ։ Լավ ավանդույթ է դարձել միութենական հանրապետությունների և սոցիալիստական ընկերակցության երկրների օրերի անցկացումը։ Այստեղ կանոնավոր գործում է ժողովրդական համալսարանը, որն ունի 500-ից ավելի ունկնդիր։ Միավորման կուսակցական կոմիտեն անդուլ

ուշադրություն է դարձնում զգոնության և սոցիալիստական հայրենիքի պաշտպանությանը միշտ պատրաստ լինելու լենինյան պատգամների, ՍՄԿԿ ու սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության պրոպագանդմանը: Այդ ամենը նպաստում է աշխատավորների մեջ կայուն բարոյահոգեբանական հատկությունների ձևավորմանը: Տարվող աշխատանքը բազմահազարանոց ինտերնացիոնալ կոլեկտիվին օգնում է հաջողությամբ լուծելու իր առջև ծառացած ժողովրդատնտեսական խնդիրները:

Միավորումում պաշտպանական-մասսայական և ռազմահայրենասիրական աշխատանքն իրականացվում է աշխատավորների կոմունիստական դաստիարակության հետ կոմպլեքսայնորեն, հիմնական ուշադրությունը կենտրոնացվում է կուսակցության ու ժողովրդի հեղափոխական և մարտական ավանդույթների պրոպագանդմանը: Մշակույթի պալատում կահավորված են մարտական և աշխատանքային փառքի սենյակներ, գունագեղ ցուցադրափեղկեր՝ նվիրված Մայիսյան ապստամբության մարտիկներին և Հայրենական մեծ պատերազմի մասնակիցներին: Այստեղ շեֆական ամուր կապեր են հաստատված սովետական բանակի ռազմիկների հետ: Միավորման ղեկավարությունը և կուսկոմիտեն մշտական ուշադրություն են նվիրում ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացմանը, ռազմատեխնիկական պրոպագանդային, ՊԱՊ-ի նորմաները հանձնելուն, քաղաքացիական պաշտպանության հարցերի ուսումնասիրմանը՝ ըստ հատուկ թեմատիկայի:

Նման օրինակները շատ-շատ են:

Արծարծվող խնդրի լուծման գործում կարևորագույն դեր է հատկացված երկրի պաշտպանունակության ամրապնդման հարցերով զբաղվող հասարակական կազմակերպություններին և, ամենից առաջ, ԴՕՍԱԱՖ-ին:

Բանակին, ավիացիային և նավատորմին աջակցող կամավոր ընկերության կազմակերպություններում տարբեր ազգությունների միլիոնավոր մարդիկ անցնում են հայրենասիրության և արիության դպրոց, ձեռք բերում սոցիալիստական հայրենիքը պաշտպանելու իրենց սրբազան պարտքը կատարելու համար անհրաժեշտ ռազմատեխնիկական գիտելիքներ և ունակություններ: ԴՕՍԱԱՖ-ը հանրապետության ամենազանգվածային հասարակական կազմակերպություններից է:

Առանձնակի ուշադրության է արժանի ԴՕՍԱԱՖ-ի «Նաիրիտ» գ/մ սկզբնական կազմակերպության կուտակած պաշտպանական-մասսայական աշխատանքի փորձը: Նրանում ընդգրկված են գրեթե բոլոր նաիրիտցիները: Այստեղ արդյունավետ են գործում ռազմատեխնիկական խմբակները, սեկցիաներն ու դասընթացները, ուսումնական կետերը, պատրաստվում են որակյալ վարորդներ, ռադիոմասնագետներ:

Վերջին տարիներին նկատելիորեն ավելացել է ԴՕՍԱԱՖ-ի կոլեկտիվների թիվը, որոնք հաջողությամբ են կատարում իրենց առջև ծառացած խնդիրները: Երևանի ԴՕՍԱԱՖ-ի աերոակումբի Հ. Բաբաջանյանի անվան տեխնիկական, Գայի անվան, Հրազդանի ավտոդպրոցների կոլեկտիվներում նպատակասլաց աշխատանք է տարվում, որը գլխավորում են իրենց գործին նվիրված էնտուզիաստներ:

Հանրապետության բազմաթիվ կոմերիտական կազմակերպություններ հանդես են գալիս որպես պաշտպանական-մասսայական և ռազմահայրենասիրական աշխատանքի կազմակերպիչներ: Պրակտիկա են դարձել ԴՕՍԱԱՖ-ի շրջանային և քաղաքային կոմիտեների, քաղաքացիական պաշտպանության շտաբների, մարզական կազմակերպությունների և ընկերությունների հետ համատեղ մասսայական ֆիզկուլտուրայի տոների նշումը, ռազմակիրառական մարզաձևերից մրցումների անցկացումը:

Մարզական և պաշտպանական բազմաթիվ լավ զանգվածային միջոցառումներ են անցկացվում Երևան, Լենինական, Կիրովական քաղաքներում, Հրազդանի, Սիսիանի, Վարդենիսի, Իջևանի և այլ շրջաններում: Ձեռք բերված հաջողությունները վկայում են, որ շրջանների ու քաղաքների կուսակցական



և սովետական մարմինները ուժեղացրել են ուշադրությունը և գործնական օգնությունը տեղերում գործող պաշտպանական ընկերության աշխատանքի նկատմամբ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Մինիստրների խորհրդի հոգատարության շնորհիվ հանրապետությունում ստեղծված են նպատակաուղղված պաշտպանական-մասսայական աշխատանք տանելու նպաստավոր պայմաններ, բոլոր շրջաններում և քաղաքներում կան տեխնիկապես լավ հագեցված պաշտպանության տներ: Միայն տասնմեկերորդ հնգամյակի տարիներին ռազմատեխնիկական պատրաստության նոր տներ են շահագործման հանձնվել Ղուկասյանում, Մարալիկում, Սիսիանում, Արտաշատում, Նոյեմբերյանում, Մասիսում և այլ շրջաններում:

Հանրապետությունում տարեցտարի կատարելագործվում են պաշտպանական-մասսայական միամսյակներ անցկացնելու ձևերն ու մեթոդները: Այդպիսի միամսյակները աշխատավորներին համակողմանիորեն հայրենիքի պաշտպանությանը նախապատրաստելու իսկական դպրոց են: Այդ շրջանում իրականացվում են մասսայական, քաղաքական, ագիտացիոն-պրոպագանդիստական և մարզական միջոցառումներ. հանձնվում են ՊԱՊ-ի նորմաներ, մրցումներ են անցկացվում հրաձգությունից, ռազմատեխնիկական և ռազմակիրառական տարբեր մարզաձևերից: Ագիտբրիգադների մեքենայացված արշավներ են կազմակերպվում դեպի հեռավոր շրջաններն ու գյուղերը, ինչպես նաև անդրկովկասյան եղբայրական ժողովուրդների ներկայացուցիչների հանդիպումներ՝ երեք հանրապետությունների սահմանագծի վրա:

ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց ֆիզիկական կուլտուրան ու սպորտն ավելի ակտիվորեն արմատավորել բնակչության լայն շրջաններում: ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1981 թվականի սեպտեմբերին ընդունած որոշմամբ սահմանվել են մասսայական ֆիզկուլտշարժման գլխավոր ուղղությունները. այն կոչված է նպաստելու աշխատավորների առողջության ամրապնդմանը, նրանց աշխատունակության և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, հայրենիքի և սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու նրանց պատրաստությանը: Այդ կարևոր փաստաթղթի բարերար ազդեցությունը դրսևորվում է հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական մարմինների, մարզական կազմակերպությունների ամենօրյա պրակտիկայում: Մեզանում զգալիորեն ընդլայնվել են ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման հնարավորությունները: Վերջին տարիներս մարզական նոր բազաներ են շարք մտել Երևանում, Լենինականում, Կիրովականում, Հոկտեմբերյանում, Աբովյանում, Հրազդանում և այլուր: Սակայն հանրապետության ԴՕՍԱԱՖ-ի և սպորտային մի շարք կազմակերպություններում գործերը հաջող չեն: Դեռևս շատ լուրջ թերություններ կան ԴՕՍԱԱՖ-ի Նոյեմբերյանի, Շամշադինի, Կրասնոսելսկի և այլ շրջանների սկզբնական կազմակերպություններում:

Պաշտպանական-մասսայական աշխատանքում էական թերություններ են՝ ֆիզկուլտշարժման մեջ աշխատավորների ոչ լրիվ ընդգրկումը, ռազմատեխնիկական գիտելիքների անբավարար պրոպագանդումը, սովետական մարդկանց հասարակական ակտիվության բարձրացման նպատակով հեղափոխական, մարտական ու աշխատանքային հարուստ ավանդույթների թերի օգտագործումը: ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ ասված է. «Յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր սովետական մարդ պարտավոր է իրենից կախված ամեն ինչ անել երկրի պաշտպանունակությունը պատշաճ մակարդակում պահպանելու համար: Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը, ծառայությունը զինված ուժերի շարքերում ՍՍՀՄ քաղաքացու պատվավոր պարտականությունն է և սրբազան պարտքը»:

Հենց այդ ազնիվ խնդիրների լուծմանն է ծառայում պաշտպանական-մասսայական և ռազմահայրենասիրական աշխատանքը:

---

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԳՐԱԴԱՐԱՆԱՅԻՆ ՍՊԱՍԱՐԿՈՒՄԸ

**Գ. ԱՂԱԽԱՆՅԱՆ**
ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության
գրադարանների բաժնի պետ

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ սահմանած սոցիալ-տնտեսական հզոր առաջընթացի կարևորագույն լծակը սովետական մարդու ներդաշնակ զարգացումն է, նրա կուլտուր-տեխնիկական մակարդակի հետագա բարձրացումը, գիտելիքների, պրոֆեսիոնալ ունակությունների և տաղանդի ավելի ցայտուն դրսևորումը: Ժամանակի այս պահանջների առկայության պայմաններում է՛լ ավելի է կարևորվում աշխատավորների գաղափարաքաղաքական, կոմունիստական դաստիարակությանը կոչված հաստատությունների, այդ թվում և կուլտուր-լուսավորական հիմնարկների դերը: Այդ համակարգում իրենց ուրույն տեղն ունեն գրադարանները, որոնք նոր մարդու ձևավորման գործում հսկայական դեր են խաղում երկրի կուլտուրական շինարարության ասպարեզում:

Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը առանձնահատուկ ուշադրություն էր դարձնում գրադարանների ցանցի ընդլայնմանը, դրանք համապատասխան թերթերով ու գրքերով ապահովելուն: Նա գտնում էր, որ «Այդ դեպքում ժողովուրդը հարյուր անգամ ավելի ուժեղ թափով, ավելի արագ ու ավելի հաջող կդիմի դեպի գրագիտություն, դեպի լույս, դեպի գիտություն: Այդ դեպքում լուսավորության գործը յոթ մղոնանոց քայլերով առաջ կընթանա» (**ԵԼԺ**, հ. 42, էջ 409—410):

Հանրահայտ է, որ ներկայումս ՍՍՀՄ-ը ամենաընթերցող պետությունն է աշխարհում, ուր առաջնակարգ դեր ունեն գրադարանները: Երկրում գործում են 330 հազար գրադարաններ՝ 5 **մլրդ** հատոր գրքային ֆոնդով: Դրանք կոչված են մասնակցելու կուսակցության տնտեսական, քաղաքական, կազմակերպական, գաղափարատեսական աշխատանքին, գիրքն ավելի մոտեցնելու աշխատավոր մարդուն, օգնել նրան՝ արագ կողմնորոշվելու ինֆորմացիայի հարահոս հոսքում, նրա մեջ ճաշակ սերմանելու ընթերցանության նկատմամբ: Գրադարանի վերաբերյալ խորիմաստ են ռուս հեղափոխական, գրող Ա. Գերցենի խոսքերը: Նա ասել է. «Գրադարանը գաղափարների բաց սեղան է, որի շուրջը հրավիրված է ամեն ոք, որտեղ յուրաքանչյուրը կգտնի այն սնունդը, որ փնտրում է...»:

Երկրի կուլտուրական շինարարության բնագավառում կուսակցության ծրագրային դրույթները կենսագործելու համար պետք է է՛լ ավելի կատարելագործել գրադարանային գործի կազմակերպման, ղեկավարման ձևերն ու մեթոդները: Այդ առումով հանրապետության գրադարանները վերակառուցում են իրենց աշխատանքները, է՛լ ավելի բարձրացնում բնակչության գրադարանային-մատենագիտական սպասարկման կուլտուրան և գրականության վերաբերյալ տրվող տեղեկատու-ինֆորմացիոն աշխատանքների մակարդակը:

Բացի այդ, անհրաժեշտ է կատարելագործել գրքի պրոպագանդայի մեթոդները և ձևերը, ավելի օպերատիվ դարձնել գրադարաններին ցույց տրվող կազմակերպական, մասնագիտական-մեթոդական ղեկավարությունը, ուժեղացնել նրանց գործունեության նկատմամբ վերահսկողությունը, բարձրացնել յուրաքանչյուր գրադարանային աշխատողի պատասխանատվությունը: Այս ուղղությամբ քիչ գործ չկատարվեց անցած ժամանակաշրջանում: Իրենց ամենօրյա աշխատանքում գրադարանների կոլեկտիվները, ղեկավարվելով կուսակցության XXVII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներով, ձեռնարկել են գործուն միջոցներ բնակչության գրադարանային-մատենագիտական սպասարկումը, ինֆորմացիայի օպերատիվ կազմակերպումը բարելավելու նպատակով:

Գրադարանների աշխատողների ուշադրության կենտրոնում են աշխատավորների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, կոմունիստական դաստիարակության, նրանց սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակելու խնդիրները: Հանրապետության գրադարանները ակտիվացրել են երկրի ներքին ու արտաքին քաղաքականության մեջ ՍՄԿԿ-ի ղեկավար դերն արտացոլող գրականության պրոպագանդան: Համեմատաբար բարելավվել է գրադարանների կողմից գյուղատնտեսական և արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներին ցույց տրվող գործնական օգնությունը՝ ժողովրդատնտեսական պլանների կատարման, թողարկվող արտադրանքի որակի և աշխատանքի արդյունավետության բարձրացման վերաբերյալ համապատասխան գրականության տարածման միջոցով: Նկատելի առաջխաղացում կա ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների մասնագետներին անհրաժեշտ ինֆորմացիայով ապահովելու գործում:

ՍՄԿԿ Կենտկոմի «Հարբեցողության և ալկոհոլիզմի հաղթահարման միջոցառումների մասին» և «Ակումբային հիմնարկների ու մարզական կառուցվածքների օգտագործումը բարելավելու միջոցառումների մասին» որոշումները նոր խնդիրներ են դրել գրադարանների առջև: Հանրապետության գրադարաններում այսօր ավելի մեծ ուշադրություն է դարձվում աշխատավորության գեղագիտական դաստիարակությանը: Ստեղծված են արվեստի բաժիններ, գործում են առանձին խմբակներ:

Շոշափելի են հաջողությունները նաև գրադարանների նյութատեխնիկական բազան ամրապնդելու ասպարեզում: Անցած հնգամյակում 113 գրադարաններ (80-ը՝ գյուղական բնակավայրերում) տեղափոխվել են նոր շենքեր: Գրադարանները համալրվել են մասնագիտական գույքով և տեխնիկական միջոցներով: Նույն ժամանակահատվածում գրադարանային աշխատողների բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների թիվը ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության համակարգի գրադարաններում ավելացել է 18-ով և կազմել 48 տոկոս, իսկ հանրապետության այլ գերատեսչությունների գրադարաններում՝ 7,9-ով և հասել 40 տոկոսի:

Մեր համակարգի աշխատողներին օգնելու նպատակով հանրապետական գրադարանագիտական-մեթոդական կենտրոնները կազմել և տեղերն են ուղարկել գրադարանային գործի կազմակերպման և ղեկավարման առանձին հարցերին նվիրված մեթոդահրահանգչական նյութեր, հանձնարարվող գրականության ցանկեր, նրանց համար կազմակերպվել են հանրապետական, փնջային, շրջանային և քաղաքային սեմինար-խորհրդակցություններ, գիտագործնական կոնֆերանսներ, անհատական և կոլեկտիվ կոնսուլտացիաներ: Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ զգալիորեն բարձրացել են բնակչության գրադարանային սպասարկման մակարդակը, նրանց հիմնական ցուցանիշները: 1980 թվականի համեմատությամբ, բոլոր տիպի գրադարանների թիվը, 1986 թ. հունվարի 1-ի դրությամբ, ավելացել է 40-ով և կազմել 3.146, գրքային ֆոնդը՝ 7 միլիոն 150 հազարով և հասել 66 միլիոն 572 հազար գրադարանային միավորի:

Հանրապետությունում գրադարանային գործի հետագա զարգացման համար կարևոր նշանակություն ունեցան աշխատավորների կոմունիստական դաստիարակության և գիտատեխնիկական առաջընթացի գործում գրադարանների դերի բարձրացման մասին կուսակցական և սովետական վերադաս մարմինների որոշումները: Այդ կարևոր փաստաթղթերը սոցիալական և կուլտուրական խոշոր նշանակություն ունեցան, որոնք օրենսդրական կարգով ամրապնդեցին գրադարանային գործի կազմակերպման լենինյան սկզբունքները և սահմանեցին մեր երկրում գրադարանային շինարարության հեռանկարները: Կանոնադրության դրույթներին համապատասխան՝ ստեղծվեց գրադարանային գործի ղեկավարման հատուկ համակարգ: ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության և հանրապետությունների նրա տեղական մարմինների վրա դրվեցին բոլոր գերատեսչությունների գրադարանների ընդհանուր գիտամեթոդ-

դական ղեկավարումը, նրանց աշխատանքների կոորդինացումը, պետական վերահսկումը: Միաժամանակ բարձրանում է ժողովրդական դեպուտատների սովետների դերը գրադարանների գործունեության, նրանց ցանցի զարգացման, նյութատեխնիկական բազայի ամրապնդման, կադրերի ճիշտ ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործում: Մեծ լիազորություններ ստացան ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությանն առընթեր պետական միջգերատեսչական գրադարանային հանձնաժողովը և նրա տեղական մարմինները հանրապետություններում, որոնց որոշումները պարտադիր են գրադարանային ցանց ունեցող բոլոր մինիստրությունների, գերատեսչությունների և կազմակերպությունների համար:

Ներկայումս հանրապետության բոլոր գրադարաններում մշակված են կոմպլեքսային միջոցառումների պլաններ՝ ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների որոշումներն ու նյութերը պրոպագանդելու նպատակով: Կազմակերպվում են գրադարանային աշխատողների շրջանային ու քաղաքային սեմինար-խորհրդակցություններ՝ տեղական, կուսակցական, սովետական և շահագրգռված մյուս կազմակերպությունների ներկայացուցիչների մասնակցությամբ՝ «ՍՄԿԿ XXVII համագումարը և գրադարանային հիմնարկների խնդիրները» թեմայով: Ուշագրավ են Ալ. Մյասնիկյանի և Խնկո-Ապոր անվան հանրապետական, Ստեփանավանի, Հոկտեմբերյանի, Ղափանի, Էջմիածնի, Սիսիանի, Նաիրիի, Երևանի, Լենինականի, Կիրովականի գրադարանային կենտրոնացված համակարգերի, հանրապետական գիտատեխնիկական, գիտաբժշկական, պետական համալսարանի, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի ֆունդամենտալ, դպրոցական, պրոֆտեխնիկական ուսումնարանների ու տեխնիկումների գրադարաններում տարվող աշխատանքները: Նշված գրադարաններում կազմակերպվում են ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների պատգամավորների հետ հանդիպումներ, զեկուցումներ, զրույցներ, բանավոր ամսագրեր, ընթերցումներ, հասարակական-քաղաքական գրականության դիտարկումներ, հարց ու պատասխանի երեկոներ, ցերեկույթներ և այլ թեմաներով մասսայական միջոցառումներ:

Կուսակցության կողմից կուլտուրայի ու արվեստի բնագավառի աշխատողներին, այդ թվում մեզ՝ գրադարանային աշխատողներիս, տրված հանձնարարականները պարտավորեցնում են տասներկուերորդ հնգամյակում լուծելու մի շարք հարցեր:

Մեր կարծիքով, որպեսզի գրադարանային գործը առաջիկայում վերընթաց զարգացում ապրի, անհրաժեշտ է գրադարանագիտության, մատենագիտության բնագավառում տարվող գիտահետազոտական աշխատանքներն արդյունավետ կազմակերպել և ստացված արդյունքները արագ ներդնել: Պետք է ժամանակին ուսումնասիրել, ընդհանրացնել և արմատավորել Միության և հանրապետության տարբեր տիպի գրադարանների աշխատանքի առաջավոր փորձը: Այդ առումով հարկ կլինի ստեղծել փորձարարական գրադարաններ, հատուկ ուշադրություն դարձնել տվյալ շրջանի, քաղաքի գրադարանային միասնական ֆոնդերի ստեղծմանը, աշխատատար պրոցեսների նորմավորմանը, առանձին գրադարանների դասակարգման աշխատանքներին: Անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել գրադարանագիտական-գիտամեթոդական բոլոր կենտրոնների գործունեությանը, վերացնել նրանց աշխատանքներում առկա զուգահեռությունը, բարելավել գրադարաններին ցույց տրվող մասնագիտական գործնական օգնությունը, առավել բարձր հիմքերի վրա դնել մեթոդահրահանգչական նյութերի, առանձին փաստաթղթերի օպերատիվ հրատարակման և տարածման գործը:

Չափազանց կարևոր են գրադարանային ինչպես ղեկավար, այնպես էլ շարքային աշխատող կադրերի ճիշտ պատրաստումը, ընտրությունն ու տեղաբաշխումը, տվյալ գրադարանի աշխատանքային, կատարողական և պետական կարգապահության ամրապնդման գործում յուրաքանչյուրի պատասխանատվության բարձրացումը:

Մարդը հաճախել է գրադարան: Ո՞վ պետք է նրան հարգալից դիմավորի, օգնի գրքի ընտրության հարցում ճիշտ կողմնորոշվելու, եթե ոչ գրադարանի աշխատողը: Այստեղ շատ բան կախված է նրա սիրալիր վերաբերմունքից, կուլտուրական սպասարկումից, մասնագիտական հմտությունից: Բայց, արդյոք, մի՞շտ են այս պահանջները կատարվում: Մենք կասենք՝ ոչ: Առանձին գրադարաններում ընթերցողի նկատմամբ դրսևորվող անտարբերությունը, սպասարկման ցածր կուլտուրան



նրա մեջ հարուցում են դժգոհություն, անտարբերություն և մի քանի այցելությունից հետո նա այլևս չի օգտվում այդ գրադարանից:

Լուծելով երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման արմատական հարցերը՝ կուսակցությունը բոլոր աշխատավորներից պահանջում է գործարար, ստեղծագործական ակտիվ մասնակցություն ցուցաբերել այդ կարևոր կենսական խնդիրների հաջող իրագործմանը: Այստեղից էլ բարձր պահանջկոտություն է առաջադրվում կադրերին, նրանց մասնագիտական և քաղաքական որակավորմանը: Գրադարանային գործի բարելավման վերոհիշյալ ասպարեզներում մենք ունենք դեռևս չլուծված խնդիրներ: Եթե 1986 թ. հունվարի 1-ի դրությամբ ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության համակարգում գործող 1.274 գրադարանային հիմնարկներում բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթություն ունեցող աշխատողների թիվը նախորդ տարվա համեմատությամբ ավելացել է 3,7 տոկոսով և կազմել 48 տոկոս, ապա տարբեր գերատեսչությունների ու կազմակերպությունների ենթակա 1.872 գրադարաններում այն ավելացել է երկուսով և հասել 24,5 տոկոսի: Հատուկ տագնապ է հարուցում գյուղական բնակավայրերի գրադարանների կադրերի վիճակը: Ղուկասյանի շրջանում մասնագիտական կրթություն ունեցողները կազմում են բոլոր աշխատողների 9 տոկոսը, Ախուրյանում՝ 15, Գուգարքում՝ 21, Թալինում՝ 27 և այլն: Անբավարար են գրադարանային կադրերի տեղաբաշխումը, նրանց կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման վիճակը: Նախատեսվում է առաջիկայում հանրապետությունում անցկացնել աշխատողների ատեստավորում, իրենց աշխատանքներում թերացող և մասնագիտական կրթություն չունեցողներին փոխարինել երիտասարդ մասնագետներով:

Ժամանակն է մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորելու համար ավելացնել նպատակային տեղերի քանակը և վճռական միջոցներ ձեռնարկել կադրերի խիստ պահանջարկ ունեցող հեռավոր շրջաններից գյուղական երիտասարդությանը գործուղելու խնդրում:

Հանրապետությունում գրադարանային կադրերի պատրաստման և վերապատրաստման գործը բարելավելու նպատակով, նախատեսվում է տասներկուերորդ հնգամյակում Խ. Աբովյանի անվան հայկական մանկավարժական ինստիտուտի կուլտուրայի ֆակուլտետի և Էջմիածնի ակումբագրադարանային տեխնիկումի գրադարանային ցերեկային և հեռակա ուսուցման բաժիններում 1986—1990 ուստարիներին պատրաստել 600—700 մասնագետ, իսկ կուլտուրայի աշխատողների որակավորման հանրապետական դասընթացներում վերապատրաստել 1.000—1.200 գրադարանային աշխատող:

Է՛լ ավելի պետք է աշխուժացնել գրադարաններում տարվող սոցիալիստական մրցության կազմակերպումը՝ այն զուգակցելով գրքի պրոպագանդայի ցուցադրական, բանավոր և գրավոր ձևերի ու մեթոդների կատարելագործման, առաջավոր փորձի տարածման աշխատանքների հետ: Գրադարանների համագործակցությունը քաղլուսաների, «Գիտելիք», գրքասերների և սթափության ընկերությունների, ԴՕՍԱԱՖ-ի կազմակերպությունների, հատկապես կուլտուր-մարզական համալիրների և մշակութային այլ հաստատությունների հետ ավելի հարուստ ու բովանդակալից կդարձնի նրանց աշխատանքը:

Ընթացիկ հնգամյակում նոր միջոցներ են հատկացվում և առավել բարենպաստ պայմաններ են ստեղծվում գրադարանների նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդման ու տեխնիկական վերազինման համար: Գրականության համալրման, մշակման և կատալոգավորման բնագավառում կավարտվի գրադարանային-մատենագիտական հիմնական պրոցեսների կենտրոնացումը: Ներկա պայմաններում հնարավոր չէ տեղադրել առանձին տեխնիկական միջոցներ, որովհետև հանրապետության գրադարանների 59 տոկոսից ավելին գտնվում է ոչ հարմարավետ շենքերում: Երաժշտական գրականության հանրապետական, Նոյեմբերյանի շրջանի գրադարանային կենտրոնացված համակարգի կենտրոնական, Հրազդանի № 1 քաղաքային մանկական, Ազիզբեկովի, Ամասիայի, Թումանյանի, Մասիսի և ուրիշ շրջանների գյուղական շատ գրադարաններ զուրկ են տարրական հարմարություններից, որտեղ գրքային ֆոնդերի պահպանման գործը վտանգի տակ է:

Հանրապետության վերադաս մարմինների որոշմամբ նախատեսված է տասներկուերորդ հնգամյակում կառուցել գրադարանային կենտրոնացված համակարգերի

Գորիսի, Սևանի, Աբովյանի կենտրոնական գրադարանների մասնաշենքերը, Կիրովականի կենտրոնական գրադարանի շենքին կից կառույցը, Ալ. Մյասնիկյանի անվան պետական գրադարանի նոր համալիրի և Երևանի Դավիթաշեն թաղամասի գրադարան-մասնաճյուղի ու այլ գերատեսչությունների ենթակա գրադարանների շենքերը: Գրադարանային հիմնարկներին տրամադրվում են նորագույն տեխնիկական միջոցներ, գործարկվելու է ավտոմատացված համակարգ, մեքենայացվում և ավտոմատացվում են առանձին աշխատատար պրոցեսներ, ներդրվում է հաշվողական ու պատճենահանող տեխնիկա: Այս ամենի շնորհիվ գրադարաններում աշխատանքի արդյունավետությունը կբարձրանա 1—1,5 անգամ:

Նախատեսվում է մինչև 2000 թվականը հանրապետությունում ավարտել գրադարանային միասնական ֆոնդի ստեղծման աշխատանքները՝ բնակչության գրադարանային-մատենագիտական սպասարկման համաչափ և անկաշկանդ համակարգ ստեղծելու նպատակով: 1985 թ. համեմատությամբ, գործող գրադարանների ֆոնդերը կհամալրվեն շուրջ 19 միլիոնով և կհասնեն 80 միլիոն տպագիր միավորի:

Մեր առաջնահերթ խնդիրներից են գրքային ֆոնդերի ընթացիկ համալրման համակարգը կարգավորելը, մասսայական և դպրոցական գրադարանների համար «Գրադարանային մատենաշարով» հրատարակվող գրքերի ցանկը և տպաքանակն ավելացնելը: Անհրաժեշտ է գրադարանային բաշխիչներին հատկացնել բարձր պահանջարկ ունեցող գրականության օրինակներ, հասնել այն բանին, որ գրքերի նախնական պատվերները անխափան կատարվեն: Վերանայման կարիք ունի գրադարանային ֆոնդերի համալրման ֆինանսական կարգը: Հրատապ է նաև գրադարանային հիմնարկների և հրատարակիչների աշխատանքների կոորդինացումն ու համագործակցությունը՝ թեմատիկ հրատարակչական պլանների և թողարկվող գրականության տպաքանակների հաստատման հարցում:

Չնայած հանրապետության գրադարանների աշխատողների որոշակի ձեռքբերումներին, առանձին շրջանների (Մասիս, Վարդենիս, Ղուկասյան, Ազիզբեկով, Ամասիա) դպրոցների, տեխնիկումների, ուսումնարանների գրադարանների գրքային ֆոնդերը ռացիոնալ չեն օգտագործվում, բնակչության գրադարանային-մատենագիտական սպասարկումը լիովին չի համապատասխանում գաղափարաքաղաքական, դաստիարակչական աշխատանքների վերաբերյալ կուսակցության արդի պահանջներից բխող խնդիրներին: Առկա թերությունները հետևանք են այն բանի, որ որոշ տեղական կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններ (Նոյեմբերյան, Արագած, Վարդենիս, Կալինինո) իրենց ամենօրյա աշխատանքում պատշաճ ուշադրություն ու հոգատարություն չեն ցուցաբերում աշխատավորների կոմունիստական դաստիարակության այդ կարևոր բնագավառի նկատմամբ:

Մեր երկիրն ուղեցույց ունենալով ՍՄԿԿ XXVII համագումարի կանխագծումները՝ թևակոխել է սոցիալ-տնտեսական զարգացման նոր որակական փուլ: Սովետական մարդկանց հոգևոր կյանքի ոլորտում այն կապված է նրանց գաղափարաքաղաքական գիտակցության աճի, մեր իրականության մեջ սոցիալիզմի բարոյական սկզբունքների հաստատման, կոլեկտիվիզմի և ընկերականության առավել վառ դրսևորման հետ: Նման պարագայում ավելի է կարևորվում գրքային անսպառ հարստության խելամիտ օգտագործումը երկրի սոցիալ-տնտեսական, քաղաքական, հոգևոր առաջընթացն ապահովելու գործում:

Անկասկած, հանրապետության բազմահազարանոց գրադարանային աշխատողները կցուցաբերեն առավել գործիմացություն և պարտքի զգացում, բոլոր ջանքերը կներդնեն՝ գրքի ակտիվ պրոպագանդմամբ նպաստելու աշխատավորության կոմունիստական դաստիարակության վեհ գործին, ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած խնդիրների կենսագործմանը:

Մարդկային գործոն.
ակտիվացման ուղիները

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

**Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխության հաղթանակին հաջորդած գրեթե 70-ամյա ուղու գլխավոր հանրագումարներից մեկը հասարակականորեն ակտիվ, գաղափարապես կոփված անհատի ձևավորումն է: ՍՄԿԿ XXVII համագումարի փաստաթղթերում ու նյութերում տրված է սովետական մարդու բարոյական վառ նկարագիրը, ամբողջացված է նրա սոցիալ-քաղաքական և հոգևոր կերպարը: «Անչափ բարձրացել է սովետական մարդկանց կրթվածության և կուլտուրայի ընդհանուր մակարդակը,— ասաց Մ. Ս. Գորբաչովը Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— հարստացել նրանց սոցիալ-քաղաքական փորձը: Ուրեմն նաև հսկայական չափով մեծացել են հասարակության ու պետության գործերի կառավարմանը մասնակցելու յուրաքանչյուր քաղաքացու հնարավորություններն ու պահանջմունքները»:

Սովետական մարդու կերպարը բնութագրող հատկանիշների թվում առանձնանում է նրա բարձր քաղաքական կուլտուրան: Այն սովետական մարդու սոցիալական հասունության չափանիշներից է, սոցիալիստական քաղաքակրթվածության գումարելիներից մեկը: Նոր կյանքի կառուցման ասպարեզում կուտակված բազմահարուստ փորձը վկայում է, որ աշխատավորների գիտակցության մեջ սոցիալիստական գաղափարայնության ամրապնդումը, սոցիալիզմի բարոյական նորմերի լիակատար հաստատումը, բնակչության լայն խավերին գիտության ու մշակույթի արժեքներին հաղորդակից դարձնելը մեր հասարակության կատարելագործման և դեպի կոմունիզմ հաջող առաջընթացի երաշխիքն է: Մարդկային գործոնն ավելի ու ավելի է որոշում հասարակական-քաղաքական, տնտեսական ու սոցիալական օրգանիզմի դինամիզմը և ամբողջականությունը: «Սոցիալիստական հասարակության հասունությունը բարձրացնել, կոմունիզմ կառուցել՝ նշանակում է անշեղորեն բարձրացնել մարդու գիտակցականությունը, հարստացնել նրա հոգևոր աշխարհը, գործի դնել ժողովրդի ստեղծագործական պոտենցիալը» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, «Հայաստան» հրատ., 1986, էջ 165):

Արդի փուլում քաղաքական կուլտուրայի դերի աճը նախ և առաջ պայմանավորված է սովետական հասարակության քաղաքական սիստեմի հետագա կատարելագործման պահանջով: Ներկայումս հասարակության քաղաքական սիստեմի զարգացման ստրատեգիական գիծը սովետական դեմոկրատիայի կատարելագործումն է, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման առավել լիակատար իրագործումը՝ պետական ու հասարակական կյանքի հարցերի լուծմանը աշխատավորների, նրանց կոլեկտիվների ու կազմակերպությունների ամենօրյա, ակտիվ ու գործուն մասնակցության հիման վրա:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության համակարգում քաղաքական կուլտուրայի դերի առանձնահատուկ բարձրացումը պայմանավորված է միջազգային ասպարեզում գաղափարախոսական պայքարի աննախադեպ սրմամբ, ՍՍՀՄ ներքին կյանքի և արտաքին հարաբերությունների բոլոր ոլորտների «գաղափարայնացումով»: Իմպերիալիզմի սանձազերծած «հոգեբանական պատերազմը», ՍՄԿԿ XXVII համագումարի որակմամբ՝ ագրեսիայի, ինֆորմացիոն իմպերիալիզմի այդ հատուկ ձևը, որը ոտնահարում է ժողովուրդների սուվերենությունը, պատմությունը, կուլտուրան և, բնականաբար, ընդհանուր ոչինչ չունի հայացքների իսկական համադրման, գաղափարների ազատ փոխանակման հետ, ջանք չի խնայում սևացնելու, խարխլելու սոցիալիզմի ու կոմունիզմի վեհ իդեալները: Ընթանում է սուր, անզիջում պայքար քաղաքական և գաղափարախոսական կարևորագույն պրոբլեմների՝ պատերազմի ու խաղաղության, մարդկային քաղաքակրթության և կուլտուրայի հեռանկարների, անհատի իրավունքների ու ազատությունների, գիտատեխնիկական հեղափոխության և այլ հարցերի շուրջ, որոնք անշուշտ շոշափում են տարբեր դասակարգերի ու պետությունների արմատական քաղաքական շահերը:

Սոցիալիստական և բուրժուական գաղափարախոսությունների հակամարտության պայմաններում փորձության են ենթարկվում սովետական մարդու գաղափարական համոզվածությունը, բարոյական հասունությունը, քաղաքական կոփվածությունն ու դասակարգային կողմնորոշումը: Ահա թե ինչու իմպերիալիստական բուրժուազիայի պրոպագանդիստական մեքենային պետք է հակադրել սոցիալիստական պրոպագանդայի համարձակ և ստեղծագործական բնույթը, մեր ինֆորմացիայի բացահայտությունը և կյանքի ճշմարտությունը: «Հարկավոր է հարձակողականություն,— ասաց Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ XXVII համագումարում,— թե՛ այն բանում, ինչը վերաբերում է գաղափարախոսական դիվերսիաների մերկացմանը, և թե սոցիալիզմի ռեալ նվաճումների, սոցիալիստական ապրելակերպի մասին ճշմարտացի ինֆորմացիան տեղ հասցնելուն... Որքան եռանդագին հաստատվեն մեր իդեալները, նոր հասարակության սկզբունքներն ու արժեքները, այնքան արդյունավետ կլինի մեր դաստիարակությունը (նույն տեղը, էջ 124):

Սովետական մարդու բարձր քաղաքական կուլտուրայի ձևավորումն ու կատարելագործումը կուսակցության, սովետական պետության, հասարակական կազմակերպությունների և աշխատանքային կոլեկտիվների, ողջ ժողովրդի գործն է: Դրա իրականացումը հիմնվում է սոցիալիզմի ու կոմունիզմի մասին մարքս-լենինյան ուսմունքի, նոր մարդու ձևավորման պրոբլեմի լուծման վրա: Քաղաքական կուլտուրայի հաստատման ու զարգացման ընթացքի վրա վճռականորեն ներազդում են արտադրության միջոցների հանրային սեփականությունը, սոցիալիստական արտադրահարաբերությունները, արտադրության պլանային զարգացումը, ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացումը, սոցիալիստական դեմոկրատիայի խորացումը, սովետական հասարակության սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնությունը, կոլեկտիվիզմը, սովետական հայրենասիրությունը և սոցիալիստական ու պրոլետարական ինտերնացիոնալիզմը, ՍՍՀՄ ազգերի ու ազգությունների եղբայրական բարեկամությունը, ժողովրդի համախմբվածությունը կուսակցության շուրջը:

Հմտորեն օգտագործելով սոցիալ-հոգեբանական և գաղափարախոսական գործոնները՝ սոցիալիստական հասարակությունը քաղաքական կուլտուրայի ձևավորումն ու զարգացումը վերածում է գիտականորեն կառավարվող պրոցեսի: Այդ խնդրի լուծման երաշխիքը սոցիալիզմի քաղաքական սիստեմն է, որի միջուկը ՍՄԿԿ-ն է՝ սովետական հասարակության ղեկավար ուժը:

Քաղաքական կուլտուրայի էության մեկնաբանման ու վերլուծության հարցում մարքս-լենինյան տեսությունը հիմնվում է գիտական կոմունիզմի հիմնադիրների մշակած մեթոդաբանական դրույթների, համակողմանի ու ներդաշնակ զարգացած անհատի ձևավորման մասին հիմնադրույթի վրա, ի դեմս որի Մարքսը և Էնգելսը տեսնում էին կոմունիստական հասարակության բարձրագույն իդեալը: «Քաղաքական կուլտուրա» բուն հասկացողությունը մարքսիստական գիտության և աշխատավորների կոմունիստական դաստիարակության պրակտիկայի մեջ առաջին անգամ կիրառել է Վ. Ի. Լենինը: Սահմանելով սոցիալիստական քաղաքական կուլտուրայի



գլխավոր նպատակը և կոչումը, նա նշել է. «...քաղաքական կուլտուրայի, քաղաքական կրթության նպատակն է՝ դաստիարակել իսկական կոմունիստներ, որոնք ընդունակ լինեն հաղթելու ստը, նախապաշարմունքները և օգնելու աշխատավոր մասսաներին, որպեսզի նրանք հաղթեն հին կարգը և պետության շինարարության գործը վարեն առանց կապիտալիստների, առանց շահագործողների... դա կարելի է անել միայն տիրապետելով գիտելիքների... ամբողջ գումարին» (**ԵԼԺ**, հ. 41, էջ 483): Լենինը քաղաքական կուլտուրայի ձևավորումը դիտում էր արմատական սոցիալ-տնտեսական վերափոխումների և կուլտուրական հեղափոխության իրագործման հետ անխզելի կապի մեջ, որպես սոցիալիզմի և կոմունիզմի հաջող կառուցման, սոցիալական նոր տիպի անհատի՝ բարոյապես ամբողջական, հոգեպես հարուստ մարդու ձևավորման անհրաժեշտ պայման: Քաղաքական կուլտուրայի լենինյան բնորոշումը հասարակական երևույթների համակարգում նրա յուրահատուկ ֆունկցիաները, իրադարձությունների վրա նրա ակտիվ ներգործությունը հասկանալու բանալի է:

Քաղաքական կուլտուրան գտնվում է հասարակական կյանքի երկու ոլորտների «խաչմերուկում» և հանդես է գալիս մի կողմից որպես հասարակության քաղաքական սիստեմի տարր, մյուս կողմից՝ որպես ընդհանուր կուլտուրայի բաղկացուցիչ մաս: Նա ներառում է քաղաքականության և կուլտուրայի հատկանիշները: Գրավելով հատուկ տեղ հոգևոր կուլտուրայում, այն ներթափանցում է նրա բոլոր բաղկացուցիչ մասերի՝ գիտության, փիլիսոփայության, սոցիոլոգիայի, պատմության, իրավունքի, գրականության և արվեստի մեջ: Սոցիալիզմի քաղաքական կուլտուրան ընդհանուր կուլտուրայի հիմնարար տարրերից է, նրա «միջուկը», դասակարգային-կուսակցական կողմնորոշիչը:

Բացահայտելով քաղաքական կուլտուրայի բուն էությունը, քաղաքականության և կուլտուր-լուսավորական աշխատանքի փոխադարձ կապը, Լենինն ընդգծել է քաղաքականության վճռական դերն ու նշանակությունը: «Այնչափով, որչափով այստեղ հիշատակվում է քաղաքական հասկացությունը, այստեղ քաղաքականությունն ամենագլխավորն է» (**ԵԼԺ**, հ. 41, էջ 486):

Քաղաքական կուլտուրայի լենինյան ըմբռնումը հետագայում զարգացվել է ՍՄԿԿ համագումարներում, Կենտկոմի պլենումներում և կուսակցական փաստաթղթերում: Կուսակցության XXVII համագումարը նշեց, որ կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, գաղափարախոսական հիմնարկները, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցները պարտավոր են ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման, կուսակցության ծրագրի, համագումարի որոշումների գաղափարական հարստությունը լիովին ու արդյունավետ օգտագործել սովետական մարդկանց ամբողջական մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, քաղաքական կուլտուրայի, աշխատանքային ու սոցիալական ակտիվության բարձրացման համար:

«ՍՄԿԿ-ն մշտապես կհոգա այն մասին,— նշվում է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ,— որ բոլոր սովետական մարդիկ խորապես տիրապետեն մարքս-լենինյան ուսմունքին, բարձրացնեն քաղաքական կուլտուրան, գիտակցորեն մասնակցեն կուսակցության քաղաքականության մշակմանը և ակտիվորեն կենսագործեն այն»:

Գիտական գրականության մեջ առկա է քաղաքական կուլտուրայի մի քանի սահմանում: Քաղաքական կուլտուրան բնորոշվում է որպես քաղաքացիների քաղաքական գիտելիքների, գնահատականների ու գործողությունների մակարդակ և բնույթ, ինչպես նաև քաղաքական հարաբերությունները կարգավորող սոցիալական արժեքների, ավանդույթների ու նորմերի բովանդակություն և որակ:

Քաղաքական կուլտուրայի սահմանման տարբերակների ուսումնասիրությունը հնարավորություն է ընձեռում անելու ընդհանրական հետևություն, որ այն գաղափարական, վերնաշենքային երևույթ է, կուլտուրայի հատուկ տարատեսակ, հասարակական-քաղաքական գործունեության ասպարեզում անհատի ամենաէական ուժերի ու հակումների իրացման որոշակի ձև: Այն նաև սոցիալական սուբյեկտի (դասակարգի, խավի, անհատի) կողմից հասարակական-քաղաքական փորձի, օրենքների, նորմերի, ավանդույթների, գիտելիքների յուրացման չափ է և դրանք տվյալ կոնկրետ իրադրության մեջ կիրառելու կարողություն:

Սոցիալիստական քաղաքական կուլտուրան սովետական մարդու գաղափարական համոզմունքների, բարոյական նորմերի, հոգևոր հարստության, մասնագիտական ունակությունների դրսևորման ու դրանց գործադրման ընդհանրական չափանիշն է: Ինչպես և կուլտուրայի ամեն մի տեսակ, քաղաքական կուլտուրան ներառում է գիտելիքների որոշակի գումար: Քաղաքականապես կրթված անհատի գիտելիքների համակարգում հիմնականը մարքս-լենինյան տեսությունն է: Սակայն քաղաքական կուլտուրան չի կարելի նույնացնել քաղաքական գիտակցության հետ, որը իբրև հասարակական գիտակցության ձև արտացոլում է դասակարգերի արմատական շահերը, նրանց հարաբերությունները միմյանց միջև, ինչպես և վերաբերմունքը դեպի պետական իշխանությունը, հասարակության սոցիալ-քաղաքական կազմակերպությունը, դեպի ուրիշ ազգերն ու պետությունները:

**Գերմանական գաղափարախոսություն** աշխատությունում Մարքսը և Էնգելսը նշել են, որ միայն հեղափոխական գործունեության մեջ է տեղի ունենում մարդկանց մասսայական վերափոխում, ծնվում կոմունիստական գիտակցություն: Քաղաքական կուլտուրան իրենից ներկայացնում է քաղաքական գիտակցության (քաղաքական գիտելիքներ, հայացքներ, պատկերացումներ, համոզմունքներ և այլն) և մարդկանց սոցիալ-քաղաքական գործունեության անկապտելի միասնությունը: Ներառելով ոչ միայն քաղաքական շահերի, քաղաքական հարաբերությունների ըմբռնումը, այլև քաղաքական համոզմունքները և ակտիվ մասնակցությունը սոցիալ-քաղաքական գործունեությանը՝ քաղաքական կուլտուրան քաղաքական գիտակցության համեմատությամբ առավել տարողունակ հասկացություն է: Քաղաքական գիտակցությունն ըստ էության հանդես է գալիս որպես քաղաքական կուլտուրայի ձևավորման հիմք:

Քաղաքական կուլտուրան ենթադրում է պատշաճ դաստիարակվածության առկայություն, որն անպայման պետք է զուգակցվի կրթվածության, ընդհանուր կուլտուրայի առկայության հետ: Սովետական իշխանության առաջին տարիներին քաղաքական կուլտուրայի ձևավորման ու զարգացման գլխավոր խոչընդոտը բնակչության գրեթե համատարած անգրագիտությունն էր, որն այժմ վաղուց անցյալ է դարձել: ՍՍՀՄ-ում ավարտվել է անցումը ընդհանուր միջնակարգ կրթության: Ներկայումս երկրում ավելի քան 161 միլիոն մարդ ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն: Մեր հանրապետությունում երիտասարդ բանվորների 95 տոկոսից ավելին աշխատանքային կյանք է մտնում հասունության ատեստատով: Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված 1.000 մարդուց 915-ն ունեն բարձրագույն և միջնակարգ կրթություն: Սովետական մարդկանց կրթական բարձր մակարդակը հնարավորություն է ընձեռում հաջողությամբ լուծելու նրանց ընդհանուր և քաղաքական կուլտուրայի մակարդակի բարձրացման խնդիրը: Անհատի քաղաքական կուլտուրայի հարստացմանն են նպատակամղված քաղաքական լուսավորությունը, մասսայական ինֆորմացիայի միջոցները, արվեստը, գրականությունը և գաղափարախոսական ու հոգևոր կյանքի մյուս ոլորտները:

Քաղաքական բարձր կուլտուրա ունեցող մարդուն հատկանշական է խոսքի և գործի անքակտելի միասնությունը, նրա ակտիվ մասնակցությունը կոմունիստական իդեալների իրականացմանը: Ծաղրելով կոմունիզմի իդեալների «գրքային սերտումը», Լենինը նշում էր, որ քաղաքական պայքարից, քաղաքական գործողություններից ու կոմունիստական շինարարության առօրյայից դուրս քաղաքական ոչ մի դաստիարակություն լինել չի կարող:

Սոցիալիստական տիպի անհատի քաղաքական կուլտուրայի ձևավորման ու հարստացման գործում անփոխարինելի է աշխատանքային կոլեկտիվի դերը: Յուրաքանչյուր մարդու զարգացումը, ընդգծել են գիտական կոմունիզմի հիմնադիրները, «պայմանավորված է մյուս բոլոր անհատների զարգացմամբ, որոնց հետ նա գտնվում է ուղղակի կամ անուղղակի հաղորդակցման մեջ» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 3, с. 440): Աշխատանքային կոլեկտիվում է կոնկրետ կերպով իրացվում մարդու վրա սոցիալական միջավայրի վճռական ազդեցությունը. նրա միկրոմիջավայրում են հասարակության նորմերը, քաղաքական ու հոգևոր արժեքները վերածվում անձի գործունեության և վարքի շարժառիթների: Աշխատանքային կոլեկտիվն իր գործադրած ջանքերի շնորհիվ հասնում է այն բանին, որպեսզի իր



անդամների եռանդն ու նախաձեռնությունը, գիտելիքները լիարժեք կիրառվեն պրակտիկ գործունեության մեջ: Այդ պրոցեսում կոլեկտիվի անդամների մեջ դաստիարակվում է քաղաքացիություն, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած՝ իրեն «երկրի ներկայացուցիչ» զգալու ունակություն:

Սոցիալիզմի քաղաքական կուլտուրան միասնական է սովետական հասարակության դասակարգերի և սոցիալական խմբերի, ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների, մեր երկրի բոլոր մարդկանց համար: Եվ, այդուհանդերձ, մեր հասարակությունում քաղաքական կուլտուրան պահպանել ու պահպանում է իր դասակարգային բնույթը, կուսակցականությունը: Սոցիալիզմի քաղաքական կուլտուրայի ձևավորման ու զարգացման գործում առաջնային դերը պատկանում է բանվոր դասակարգին: Վերջինս մեր հասարակության առաջատար ուժն է, որոշիչ դիրք է գրավում հասարակական արտադրության համակարգում, ստեղծում է ազգային հարստության գերակշիռ մասը և կապված է սեփականության առավել առաջավոր ձևի հետ: Իր այդ դերով և գործունեության պայմանների բերումով բանվոր դասակարգը ցուցաբերում է բարձր կազմակերպվածություն: Նրան յուրահատուկ են կարգապահությունն ու կոլեկտիվիզմը, ձեռներեցությունն ու ստեղծագործական թափը: Բանվոր դասակարգը ակտիվորեն մասնակցում է ՍՄԿԿ քաղաքականության ձևավորմանն ու պրակտիկ իրագործմանը: Նա առաջատար դիրք է գրավում կուսակցության սոցիալական կազմի մեջ, որն իր բնույթով բանվոր դասակարգի կուսակցություն է:

Սովետական մարդու քաղաքական կուլտուրան ձևավորվում ու ամրապնդվում է մեր հասարակարգի, ապրելակերպի, սոցիալիստական կացութաձևի բարերար ազդեցությամբ և մարմնավորվում է նրա գործարար ակտիվության, հանրօգուտ աշխատանքին, պետական և հասարակական գործերին նրա ստեղծագործական մասնակցության մեջ: Այն ծագում, ձևավորվում ու զարգանում է բարեխիղճ բարձրարտադրողական աշխատանքում, ժողովրդատնտեսական պլանների կատարման համար պայքարում, սոցիալիստական մրցությանն ակտիվորեն մասնակցելու և սոցիալ-քաղաքական գործունեության պրոցեսում:

Պետական և հասարակական գործերի կառավարմանը սովետական մարդու մասնակցության լայն մասշտաբների մասին է վկայում այն ակնառու փաստը, որ ներկայումս ժողովրդական դեպուտատների սովետների, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, ժողովրդական վերահսկողության մարմինների և մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների մշտական ակտիվի թիվը կազմում է 75 միլիոն մարդ կամ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված ՍՍՀՄ բնակչության 50 տոկոսից ավելին: Եթե դրան ավելացնենք կոոպերատիվ կազմակերպությունների, ստեղծագործական միությունների և կամավոր ընկերությունների մշտական ակտիվը, ապա սովետական մարդու հասարակական-քաղաքական գործունեության քանակական բնութագրերն է՛լ ավելի պատկառելի կլինեն:

Սովետական մարդկանց իրավունքներն ու ազատություններն անբաժանելի են սոցիալիստական հասարակության առջև նրանց պարտականություններից ու պատասխանատվությունից: Հասարակության առաջ իր պատասխանատվության, հայրենասիրական բարձր պարտքի ըմբռնումը քաղաքական կուլտուրայի էական հատկանիշն է: Իրավունքների, պարտականությունների և պատասխանատվության միասնությունը սովետական մարդու կյանքի ու գործունեության կարևորագույն սկզբունքներից մեկն է:

Բուրժուական շատ գիտնականներ միակողմանի և թյուր կերպով են մեկնաբանում քաղաքականության և կուլտուրայի կապը՝ ճիշտ և ճիշտ «կուլտուրան դուրս է քաղաքականությունից» հանրահայտ դրույթի ոգով: Միևնույն ժամանակ նրանցից ոչ ոք չի համարձակվում բացահայտորեն ժխտել քաղաքականության վրա կուլտուրայի ներգործությունը: Ահա թե ինչու նրանք օգտագործում են երևույթների դասակարգային ամլացման առավել նուրբ եղանակներ: Որպես օրինակ կարող է ծառայել Արևմուտքում մոդայիկ դարձած կուլտուրայի և գաղափարախոսության «ապաքաղաքականացման» դոկտրինան, քաղաքականության և կուլտուրայի ապագաղա-

փարալնացման «անդասակարգային», «անկուսակցական» քաղաքական կուլտուրայի մասին շինծու դատողությունները:

Բուրժուական քաղաքագետներն ու գաղափարախոսները գովերգում են «արևմտյան քաղաքակրթության» քաղաքական արժեքները: Նրանք արևմտյան վարչակազմերը, հատկապես ամերիկյանը, պատկերում են որպես «դեմոկրատիայի ջատագովի», «կուլտուրայի, բարոյական և քաղաքական իրական արժեքների» միակ պաշտպանի: Կանխակալ սխեմայով նրանք առանձնացնում են «քաղաքակիրթ ժողովուրդների» ընդհանուր և քաղաքական կուլտուրան՝ ի հակակշիռ «պարզունակ», «հետամնաց» ժողովուրդների կուլտուրայի: Ըստ Ռ. Ռեյգանի, աշխարհը բաժանված է ԱՄՆ-ի շուրջը համախմբված «քաղաքակիրթ», «կուլտուրական երկրների» և «բարբարոսների», որոնց թվին են դասում է ըստ էության առաջադիմական բոլոր երկրները: Նման հակադրությունն օգտագործվում է արևմտյան աշխարհի տխրահռչակ «քաղաքակրթական առաքելությունը» գովերգելու ակնհայտ մտադրությամբ:

Քաղաքական կուլտուրան բնութագրելով որպես «քաղաքական սիստեմի նկատմամբ մարդկանց քաղաքական կողմնորոշում և վերաբերմունք», բուրժուական գաղափարախոսներն ամեն կերպ ձգնում են արևմտյան դեմոկրատիան ցուցադրել որպես քաղաքական կուլտուրայի բարձրագույն, կատարյալ չափանիշ, թեպետև նման բնորոշումը հիմնովին հակասում է բուրժուական իրականությանը, որն օտարում է մարդուն և որպես հետևանք բնակչության զգալի մասին անտարբեր դարձնում դեպի քաղաքական կյանքը: «Հավասար հնարավորությունների հասարակության» բարքերն ու կարգերը մերկացնող մեղադրական ահեղ փաստ է «ավելորդ մարդկանց» մեծ բանակի՝ 40 միլիոնանոց գործազուրկների առկայությունը զարգացած կապիտալիստական երկրներում:

Իմպերիալիզմի գաղափարախոսներին չափազանց անհանգստացնում են այն նվաճումները, որ ՍՄԿԿ-ն ձեռք է բերել նոր մարդու դաստիարակության, նրա ընդհանուր ու քաղաքական կուլտուրայի բարձրացման ասպարեզում: Այդ է պատճառը, որ նրանք ինֆորմացիոն-պրոպագանդիստական կոմպլեքսի բոլոր միջոցներով զրպարտում են մեր երկրի սոցիալ-քաղաքական սիստեմը, սովետական մարդու բարոյական ու քաղաքական կերպարը, սոցիալիստական ապրելակերպը: Ընդսմին, մեր գաղափարական հակառակորդները նույնացնում են քաղաքական իշխանությունը և քաղաքական կուլտուրան, երկուսն էլ որակում որպես հարկադրման միջոց: Հակակոմունիստները, զանազան տիպի «սովետաբանները» չարակամորեն խեղաթյուրում են սոցիալիստական ազգերի մերձեցումը, մեր երկրի ժողովուրդների եղբայրական համագործակցության արդյունավետ ու պլանաչափ զարգացումը:

Ռեալ սոցիալիզմի իրականությունը, ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականությունը հիմնովին ժխտում են իմպերիալիստական գաղափարախոսների զրպարտանքները: Այսօր նույնիսկ մեր գաղափարական հակառակորդներն են հարկադրված խոստովանել, որ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ազգային շրջաններում իսպառ վերացել է երբեմնի հետամնացությունը: Այդ է վկայում Սովետական Հայաստանի անցած ուղին: Եթե 1922 թ. համեմատությամբ արդյունաբերական արտադրանքը ՌՍՖՍՀ-ում աճել է 500, ապա Հայաստանում՝ 1.048 անգամ:

«Սովետական Հայաստանի ժողովուրդը խորապես գիտակցում է,— ասաց ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում,— որ ինքը երբեք չէր կարողանա այդքան արագորեն և այդքան հաջողությամբ սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումներ իրականացնել, համակողմանի առաջադիմության հասնել իր հողում, չի կարող տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում նոր բարձունքներ նվաճել մեն-մենակ՝ առանց սովետական եղբայր ժողովուրդների և առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի փիթխարի ու բազմակողմանի օգնության» (**ՀԿԿ XXVIII համագումարի նյութերը**, էջ 72—73):

Սովետական հասարակության ողջ կյանքն այսօր ընթանում է ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած քաղաքական կուրսով: Նրա որոշումները սահմանում են դեպի կոմունիզմ մեր առաջընթաց շարժման թե՛ բնույթը և թե տեմպերը: Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, աշխարհում խաղաղությունն ամրապնդելու համագումարի ստրատեգիական կուրսը նրա գլխավոր քաղաքական



արդյունքն է: Առաջադրված խնդիրների հաջող լուծումը կուսակցությունը կապում է մարդկային գործոնի դերի բարձրացման հետ: Որքան մասշտաբային են պատմական նպատակները, այնքան կարևոր է միլիոնավոր մարդկանց շահագրգիռ, պատասխանատու, գիտակից և ակտիվ մասնակցությունը դրանց իրագործմանը: Համագումարը գաղափարախոսական աշխատանքում գլխավոր կողմնորոշիչները համարեց մարդկանց դաստիարակումը կոմունիստական գաղափարայնության և սովետական հայրենիքին նվիրվածության, սոցիալիստական ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի, աշխատանքի և հանրային հարստության նկատմամբ գիտակցական վերաբերմունքի ոգով, այն ամենի նկատմամբ անհաշտության ոգով, ինչը խորթ է սոցիալիզմին, մեր կուլտուրային, կոլեկտիվիստական բարոյականությանը:

«Ամենաէականը, որի վրա այսօր անհրաժեշտ է կենտրոնացնել կուսակցական ներգործության ամբողջ ուժը,— ասաց Մ. Ս. Գորբաչովը համագումարում,— այն բանին հասնելն է, որ յուրաքանչյուր մարդ ըմբռնի ներկա մոմենտի սրությունը, նրա բեկումնային բնույթը: Մեր ամեն մի պլան օդում կախված կմնա, եթե այն անտարբեր թողնի մարդկանց, եթե մենք չկարողանանք արթնացնել մասսաների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, նրանց եռանդն ու նախաձեռնությունը»:

Վ. Ի. Լենինը իրավացիորեն մատնանշել է, որ կոմունիզմը նախ պետք է կառուցել մարդկանց սրտերում ու մտքերում: Հիրավի, երբ մենք մեր հասարակության բոլոր անդամների մեջ արմատավորենք բարձր քաղաքական կուլտուրա՝ գաղափարական-հոգևոր մեծ պոտենցիալով հանդերձ, այն ժամանակ ավելի մեծ հաջողությամբ կիրականացնենք սոցիալիզմի կատարելագործման վերաբերյալ մեր կուսակցության առաջադրած վսեմ ծրագրերը:

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՐԴԱՐՈՒԹՅԱՆ ԴԵՐԸ ԱՆՀԱՏԻ ԱԿՏԻՎ ԿԵՆՍԱԴԻՐՔՈՐՈՇՄԱՆ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

**Հ. ՄՈՔՈՅԱՆ**

Սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը իրենց գլխավոր նպատակն են համարել մարդկանց նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների մշտական բավարարումը, անհատի համակողմանի զարգացմանը նպաստող պայմանների ստեղծումը, սոցիալական արդարության սկզբունքի անշեղ կենսագործումը:

ՍՄԿԿ XXVII համագումարը մեծ ուշադրություն դարձրեց մեր հասարակությունում սոցիալական արդարության սկզբունքի կիրառմանը: Մարքսիզմ-լենինիզմը սոցիալական արդարության ներքո ենթադրում է այնպիսի հասարակական հարաբերություններ, որոնք հիմնված են արտադրության միջոցների հանրային սեփականության վրա, ապահովում են դրանց նկատմամբ մարդկանց հավասարությունը, նրանց ռեալ քաղաքական ու իրավական իրավունքները, սոցիալիզմի պայմաններում նյութական ու հոգևոր բարիքների բաշխումը՝ «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքով:

Սոցիալական արդարության կատեգորիան խոր, բազմակողմանի, դասակարգային, պատմականորեն զարգացող հասկացություն է: Հասարակության մեջ վերացական, արտապատմական արդարություն գոյություն չունի: Սոցիալական արդարության հիմքն են արտադրության տվյալ եղանակը, հասարակության մեջ դասակարգերի, սոցիալական խմբերի, ազգերի, ազգությունների, մարդկանց միջև առկա հարաբերությունները: Այն հասարակությունը, որ հիմնված է արտադրության միջոցների մասնավոր սեփականության վրա, չի կարող սոցիալապես արդարացի հասարակություն լինել, անկարող է նյութական ու հոգևոր բարիքների բաշխումն ապահովել սոցիալական արդարության սկզբունքին համապատասխան: Միայն սոցիալիստական հասարակությունն է սոցիալական արդարություն ապահովում հասարակական հարաբերությունների ողջ համակարգում, դասակարգերի, սոցիալական խմբերի, ազգերի, ազգությունների, մարդկանց միջև փոխհարաբերություններում: Այդպիսի հասարակությունն է ապահովում սոցիալական արդարության կիրառումը բաշխման հարաբերությունների ողջ համակարգի նկատմամբ՝ «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքով: Դրանով հանդերձ, սոցիալիստական հասարակությունն «անկարող է միանգամից ոչնչացնել նաև հետագա անարդարությունը, երբ սպառման առարկաները բաշխվում են «ըստ աշխատանքի» (այլ ոչ թե «ըստ պահանջմունքների») (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 33, էջ 119):

Սոցիալական արդարությունն ընդգրկում է սոցիալիստական հասարակական հարաբերությունների, անհատի և հասարակության, մարդկանց միջև գոյություն ունեցող փոխհարաբերությունների ողջ համակարգը, սոցիալիստական հասարակության յուրաքանչյուր աշխատավորի աշխատանքի քանակին ու որակին համապատասխան նյութական ու հոգևոր բարիքների բաշխման համակարգը:



Սոցիալական արդարության և ակտիվ կենսադիրքորոշման միջև կապն ուղղակի է: Ամեն ինչում սոցիալական արդարության պահպանումը ուժեղացնում է լավատեսության, երկրի տիրոջ զգացումը, նպաստում աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, ստեղծագործական ակտիվության բարձրացմանը: Եվ, ընդհակառակը, սոցիալական արդարության խախտումը բացասաբար է ներգործում անհատի գիտակցության և վարքի վրա, արգելակում ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման պրոցեսը:

Սոցիալական արդարությունն ընկած է սոցիալիստական հասարակարգի բուն էության հիմքում: Ամենից առաջ այն արտահայտվում է նրանում, որ արտադրության միջոցների նկատմամբ նրանք հավասար են: Սոցիալիզմի այդ մեծագույն նվաճումը հանդես է գալիս որպես կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի արմատական առավելություններից մեկը: Սեփականությունը ցանկացած արտադրության անհրաժեշտ պայմանն է: Այդ առնչությամբ Կ. Մարքսը գրել է. «...ոչ մի արտադրության, հետևաբար, ոչ մի հասարակության մասին չի կարող խոսք լինել այնտեղ, ուր գոյություն չունի սեփականության ոչ մի ձև» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 46, ч. I, с. 24): Սեփականությունը սահմանում է արտադրության սոցիալ-տնտեսական ձևը, ցույց տալիս արտադրության անձնական և առարկայական գործոնների միավորման եղանակները, որոնցով զանազանվում են հասարակական-տնտեսական ֆորմացիաները: Սեփականության հարաբերությունները սահմանում են նաև նյութական բարիքների յուրացման ձևերը:

Կապիտալիզմի օրոք արտադրության միջոցների նկատմամբ մասնավոր սեփականությունը հասարակությունը պառակտում է հակադիր դասակարգերի՝ հակադրելով արտադրության միջոցների տերերին ու բանվորներին, նրանց հարաբերությունների բնույթը սահմանում որպես մարդու կողմից մարդու շահագործման և դասակարգային պայքարի հարաբերություններ:

Համաժողովրդական սոցիալիստական սեփականության հիմքի վրա վերանում է մասնավոր սեփականությունը և արտադրության միջոցների նկատմամբ հաստատվում է հանրային սեփականություն: Դրանով իսկ վերանում է սոցիալական անհավասարության գլխավոր աղբյուրը՝ մարդու կողմից մարդու շահագործումը:

Վ. Ի. Լենինը սոցիալական արդարությունը դիտել է որպես հասարակական իդեալի կարևոր կողմ, որն ի սկզբանե արմատավորվել է ժողովրդի գիտակցության մեջ: «Սոցիալիստական հասարակության մեջ ազատությունը և հավասարությունը խաբեություն չեն լինի. աշխատավորները չեն մասնատվի մեկուսացված մանր տնտեսատիրությամբ. ընդհանուր աշխատանքով կուտակված հարստությունը կծառայի ժողովրդի մասսային և ոչ թե կկեղեքի նրան. աշխատավորների տիրապետությունը կոչնչացնի որևէ ազգության, կրոնի կամ մեկ սեռի կողմից մյուսի ամեն մի ճնշում» (**ԵԼԺ**, հ. 14, էջ 135):

ՍՍՀՄ սահմանադրությունը հաստատում է, որ «ՍՍՀՄ տնտեսական սիստեմի հիմքն է կազմում արտադրության միջոցների սոցիալիստական սեփականությունը՝ պետական (համաժողովրդական) և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության ձևով... Ոչ ոք իրավունք չունի սոցիալիստական սեփականությունն օգտագործելու անձնական շահառության և այլ շահադիտական նպատակներով»: Արտադրության միջոցների սոցիալիստական հանրային սեփականությունը արմատապես փոխում է արտադրության նպատակը, որը կողմնորոշված է յուրաքանչյուր առանձին անհատի համակողմանի զարգացմանը:

ՍՄԿԿ XXVII համագումարը առաջնակարգ նշանակություն տվեց ժողովրդի բարեկեցության բարձրացման ծրագրում մարմնավորված սոցիալական քաղաքականությանը, որն ընդգրկում է սովետական մարդկանց կյանքի բոլոր ոլորտները: «Սոցիալական արդարության սկզբունքի խստիվ կիրառումը,— Քաղաքական զեկուցման մեջ նշեց Մ. Ս. Գորբաչովը,— ժողովրդի միասնության, հասարակության քաղաքական կայունության, զարգացման դինամիզմի կարևոր պայմանն է... Դրան են մեզ պարտավորեցնում կուսակցության մշակած սոցիալ-տնտեսական արագացման գլխավոր կուրսը, մեր կուսակցության ծրագրային նպատակը. հասնել հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցության և ազատ, բազմակողմանի զարգացման» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, «Հայաստան» հրատ., 1986, էջ 62): Ան-

հրաժեշտ է ուժեղացնել վերահսկողությունը աշխատանքի ու սպառման չափի նկատմամբ, սահմանել աշխատավարձի ավելի խիստ կախվածություն աշխատանքի արտադրողականությունից, նրա որակական ցուցանիշներից, վճռականորեն արմատախիլ անել հավասարարությունը, թույլ չտալ անաշխատ փողերի վճարում, չվաստակած պարգևավճարներ, անզիջում պայքար մղել անաշխատ եկամուտների, սոցիալիզմի հիմնական սկզբունքից կատարվող այլ շեղումների դեմ:

Արտադրության միջոցների նկատմամբ հավասար վերաբերմունքը սահմանում է աշխատանքի և նրա վարձատրության նկատմամբ հավասար իրավունքը: Աշխատանքի իրավունքը սոցիալիզմի մեծագույն նվաճումներից է: Ոչ ոք, բացի բուն աշխատավորներից և նրանց աշխատանքից չի կարող ստեղծել նյութական արժեքներ, և ոչ ոք չի կարող աշխատավորների շահերից զատ շահադիտական նպատակներով օգտագործել նրանց աշխատանքի պտուղները:

Աշխատանքի և մասնագիտության ընտրության իրավունքը, որ ՍՍՀՄ-ում երաշխավորված է սահմանադրությամբ, լիովին բացառում է գործազրկությունը: Մինչդեռ կապիտալի երկրներում այն սոցիալական մեծ չարիք է դարձել: ԱՄՆ-ի սահմանադրությունում անգամ հիշատակում չկա աշխատանքի իրավունքի մասին: Այժմ այս «ազատ» երկրում կա 8,5 միլիոն գործազուրկ: Ճիշտ է, «Արևմուտքի մի շարք կապիտալիստական երկրներում արձանագրված է քաղաքացիների աշխատանքի իրավունքը, բայց այն զուտ խորհրդանշական բնույթ ունի: Այսպես, Իտալիայի սահմանադրության չորրորդ հոդվածը հռչակում է բոլոր քաղաքացիների աշխատանքի իրավունքը: Սակայն այդ «իրավունքը» շատ իտալացիների համար անիրականանալի երազանք է: Այստեղ գործազուրկների թիվը հասել է մոտ 2,5 միլիոն մարդու, իսկ Անգլիայում՝ ավելի քան 3 միլիոնի: Գրեթե համանման պատկեր է դիտվում բոլոր մյուս կապիտալիստական երկրներում: Գործազրկությունը մասսաներին բերում է աղքատություն և ստորացում, խոր հուսալքում: «Առհասարակ մարդկային անհատի հավասարության անվան տակ,— նշել է Վ. Ի. Լենինը,— բուրժուական դեմոկրատիան հռչակում է սեփականատիրոջ և պրոլետարիատի, շահագործողի և շահագործվողի ձևական կամ իրավական հավասարությունը, դրանով մեծագույն մոլորության մեջ գցելով ճնշված դասակարգերին» (**ԵԼԺ**, հ. 41, էջ 194):

Աշխատանքի իրավունքը ենթադրում է աշխատանքի վարձատրման հավասար իրավունք՝ նրա քանակին ու որակին համապատասխան: Արդի պայմաններում հասարակության արտադրողական ուժերը տակավին ի վիճակի չեն ապահովելու նյութական բարիքների առատություն, աշխատանքը դեռևս չի դարձել մարդու առաջին կենսական պահանջմունք, ուստի ըստ աշխատանքի բաշխումն այսօր օբյեկտիվ անհրաժեշտություն է: «Յուրաքանչյուր աշխատավորի վաստակի չափը,— ՍՄԿԿ XXVII համագումարում նշեց ընկեր Ն. Ի. Ռիժկովը,— պետք է խստիվ համապատասխանեցվի նրա աշխատանքի արդյունքներին: Աշխատանքի արտադրողականության բարձրացումից նրա վարձատրման աճի խիստ կախվածությունը արդի պայմաններում տնտեսավարման կարևորագույն պահանջն է...» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 361): Ըստ աշխատանքի վարձատրությունը սոցիալիզմի կառուցման սկզբունքն է և հանդիսանում է աշխատանքի նկատմամբ որակապես նոր, կոմունիստական վերաբերմունքի, անձի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման նյութական հիմքը:

Ըստ աշխատանքի բաշխումից զատ աշխատավորների բարեկեցության բարձրացման գործում նկատելի դեր են խաղում սպառման հասարակական ֆոնդերը: Դրանք նպաստում են բնակչության զանազան սոցիալական խմբերի ու խավերի նյութական բարեկեցության մերձեցմանը, հասարակության բոլոր անդամների համար ապահովում կրթություն ստանալու, իր կուլտուրական մակարդակը բարձրացնելու, առողջությունը պահպանելու և այլ հավասար հնարավորություններ: Այդ ֆոնդերն աջակցում են հասարակական շահի գիտակցմանը, մղում հանուն ընդհանուր բարիքի աշխատելու, ցուցաբերում ակտիվություն:

Սպառման հասարակական ֆոնդերի համակարգում ևս պետք է անշեղորեն կիրառվի սոցիալական արդարության սկզբունքը, որի մասին նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ. «Աշխատավորների բազմաթիվ առաջարկություններում բարձրացվում է արդարության սկզբունքի իրականացման գործում



սպառման հանրային ֆոնդերի դերի հարցը: Արդեն այժմ դրանց ընկնում է օգտագործվող նյութական բարիքների և սպասարկումների մեկ երրորդ մասը» (նույն տեղը, էջ 65):

Բնական է, որ աշխատավարձի և սպառման հասարակական ֆոնդերից կատարվող վճարումների աճը պայմանավորված է երկրի տնտեսական զարգացումով: Առանց էկոնոմիկայի աճի անհնարին է բարձրացնել նյութական բարեկեցությունը՝ աշխատանքի մարդու վիճակը: Չէ որ սպառել կարելի է այն, ինչ արտադրվել է:

Մեր երկրում սոցիալական արդարությունը մարմնավորված է իսկական ժողովրդապետության մեջ: Ժողովուրդը պետական իշխանությունն իրականացնում է սովետների միջոցով, որոնք ՍՍՀՄ քաղաքական հիմքն են: Բոլոր մյուս պետական մարմինները ենթակա են վերահսկման ու հաշվետու են ժողովրդական դեպուտատների սովետներին:

Բացահայտելով ինքնակառավարման էությունը՝ Մ. Ս. Գորբաչովը շեշտել է. «Մարքսը, Էնգելսը, Լենինը աշխատավորների ինքնակառավարմանն անցնելը պատկերացնում էին որպես պրոլետարիատի պրակտիկ խնդիր՝ իշխանության գլուխ անցնելու պահից: Այդ գաղափարի գլխավոր բովանդակությունը նրանք տեսնում էին կառավարմանը, սոցիալ-տնտեսական որոշումների մշակմանը, քննարկմանը, ընդունմանն ու իրականացմանը աշխատավորների ավելի ու ավելի մեծ զանգվածների իրական գործնական մասնակցություն ապահովելու մեջ: Լենինը սովետական պետական իշխանությունը և ժողովրդի ինքնակառավարումը երբեք չէր հակադրում իրար: Նա սովետները բարձր էր գնահատում այն պատճառով, որ դրանք ներառում են այդ երկու հատկությունները, բանվորների ու գյուղացիների իշխանության մարմիններ են և ապահովում են նրանց միավորումը, համախմբումը, ինքնակառավարումը» (Մ. Ս. Գորբաչով, **Ժողովրդի կենդանի ստեղծագործությունը**, «Հայաստան» հրատ., 1985, էջ 18—19):

Սոցիալիստական կարգը հաջողությամբ զարգանում է լոկ այն ժամանակ, երբ ժողովուրդն ինքն է ռեալ կերպով կառավարում իր գործերը, երբ միլիոնավոր մարդիկ ակտիվորեն մասնակցում են երկրի քաղաքական կյանքին: Հենց սա էլ աշխատավորների ինքնակառավարումն է՝ դրա լենինյան ըմբռնմամբ, դա է սովետական իշխանության էությունը: «Ինքնակառավարման հիմունքները զարգանում են ոչ թե մեր պետականությունից դուրս,— նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում,— այլ նրա ներսում՝ ավելի ու ավելի խոր թափանցելով պետական ու հասարակական կյանքի բոլոր ծալքերը, հարստացնելով դեմոկրատական ցենտրալիզմի բովանդակությունը, ամրապնդելով դրա սոցիալիստական բնույթը» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 77):

Աշխատավորական կոլեկտիվներն իրավունք ունեն մասնակցելու պետական և հասարակական գործերի քննարկմանն ու լուծմանը, արտադրության, սոցիալական զարգացման և այլնի պլանավորմանը: «Հասուն սոցիալիզմի պայմաններում,— գրված է Աշխատավորական կոլեկտիվների մասին օրենքում,— բարձրանում է աշխատավորական կոլեկտիվների դերը արտադրական, հասարակական ու պետական կյանքում, ընդլայնվում են հնարավորությունները ձեռնարկությունների, հիմնարկությունների ու կազմակերպությունների կառավարմանը բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության ակտիվ մասնակցության համար, իրականացվում է իրոք սոցիալիստական ինքնակառավարում, որը զարգանում է կոմունիզմի կառուցման ընթացքում: Աշխատավորական կոլեկտիվների մասին օրենքը նպաստում է նաև անհատի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորմանը, սոցիալական ակտիվության, կոլեկտիվիստական գիտակցության դրսևորմանը:

Համաժողովրդական բնույթ ընդունեց դպրոցի ռեֆորմի նախագծի քննարկումը: Միայն մեր հանրապետությունում նախագծի քննարկմանը մասնակցեց մոտ մեկ միլիոն մարդ, նրանցից ավելի քան 100 հազարը ելույթ ունեցան ժողովներում, խորհրդակցություններում, մամուլում, ռադիոյով ու հեռուստատեսությամբ: Երկրի աշխատավորների ցանկություններն ու դիտողությունները հաշվի առնվեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից:

Մեր երկրի աշխատավորները խստորեն դատապարտում են այնպիսի չարիքը, ինչպիսին ալկոհոլիզմն է և հարբեցողությունը: Այս երևույթները տնտեսական ու

բարոյական մեծ վնաս են հասցնում, նսեմացնում են անձի արժանապատվությունը: Այդ պատճառով էլ սովետական մարդկանց ճնշող մեծամասնությունը պահանջեց վերջ դնել հարբեցողությանն ու ալկոհոլիզմին: Աշխատավորների ցանկությանն ընդառաջելով, ՍՄԿԿ Կենտկոմը որոշում ընդունեց «Հարբեցողությունն ու ալկոհոլիզմը հաղթահարելու միջոցառումների մասին», ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը՝ «Հարբեցողությունն ու ալկոհոլիզմը հաղթահարելու, ինքնաօղեթորումն արմատախիլ անելու միջոցառումների մասին», իսկ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը՝ հրամանագիր «Հարբեցողության դեմ պայքարի ուժեղացման մասին»: Համապատասխան որոշումներ ընդունվեցին նաև մեր հանրապետությունում:

«Սոցիալիստական պետության կարևոր ֆունկցիան,— ասվեց ՍՄԿԿ XXVII համագումարում,— պայքարն է անաշխատ եկամուտների դեմ: Այսօր մենք պետք է խոստովանենք, որ վերահսկողության թուլացման հետևանքով և մի շարք այլ պատճառներով հայտնվել են մարդկանց խմբեր՝ պարզորոշ արտահայտված սեփականատիրական ձգտումներով, հասարակական շահերի նկատմամբ արհամարհական վերաբերմունքով... Անհրաժեշտ է համարվել արդեն ամենամոտ ժամանակներս իրականացնել լրացուցիչ միջոցառումներ՝ ուղղված պորտաբույծների, սոցիալիստական սեփականության հափշտակողների, կաշառակերների դեմ, նրանց դեմ, ովքեր բռնել են մեր կարգերի աշխատավորական բնույթին խորթ ուղի» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 65):

Սովետական մարդիկ որպես իրենց հարազատ գործ ընդունեցին կուսակցության XXVII համագումարի ընդունած երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրները: Սովետական ժողովուրդը հասկանում է, որ մեր հասարակությունում բարեխիղճ աշխատանքը, սոցիալիստական սեփականության ամրապնդումը՝ հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության, յուրաքանչյուր ընտանիքի նյութական բարեկեցության աճի գլխավոր աղբյուրն են, կոմունիստական դաստիարակության կարևորագույն պայմանը:

Ոչ մի բան այնպես չի նպաստում սովետական մարդու ակտիվությանը, ինչպես արդարության գործադրման նկատմամբ վստահությունը: Բնակարանը, պարենային մատակարարումը, ժողովրդական սպառման ապրանքների որակը, առողջապահության մակարդակը՝ այս ամենն անմիջականորեն ազդում են մարդկանց գիտակցության ու տրամադրության վրա:

«Անաշխատ եկամուտների դեմ պայքարն ուժեղացնելու միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է. «...քիչ չեն այն փաստերը, երբ մարդիկ անաշխատ եկամուտներ են ստանում՝ զբաղվելով հափշտակումներով, սպեկուլյացիայով, կաշառակերությամբ, անօրինական գործունեության այլ տեսակներով»: Կուսակցությունը պահանջում է ակտիվ և անզիջում պայքար մղել բոլոր հակահասարակական երևույթների դեմ, հասնել այն բանին, որ գործունեության բոլոր ոլորտներում անշեղորեն պահպանվեն սովետական օրենքները, սոցիալիստական արդարության պահանջները, ամուր փակվեն պետության և ժողովրդի հաշվին անօրինականորեն հարստացման բոլոր ուղիներն ու սողանցքերը:

Անհատի այնպիսի հատկանիշները, ինչպիսիք են հասարակությանն ավելի շատ օգուտ բերելու ձգտումը, հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության զգացումը, անհաշտելիությունը թերությունների նկատմամբ, առավել լրիվ դրսևորվում են սոցիալիստական մրցության մեջ, որն ունի տնտեսական, սոցիալ-քաղաքական և գաղափարադաստիարակչական ֆունկցիաներ: Մրցությունն իրոք կոչված է նպաստելու նախաձեռնության լայն ծավալմանը, գործողության մեջ դնելու մարդկանց ստեղծագործական եռանդը: Այդ ընթացքում տեղի է ունենում մարդու գիտակցության արմատական վերակառուցում, քաղաքացիականության զգացումի զարգացում:

Սոցիալիստական մրցությունը աշխատանքի մարդկանց միջև հարաբերությունների հատուկ տիպ է, նրանց հասարակական ու ամենից առաջ ողջ աշխատանքային համագործակցության ու մրցակցության ակտիվ ձև: Այս հատկությունները բխում են սոցիալիստական արտադրական հարաբերություններից: Սոցիալիստական մրցությունը բուն մասսաների նախաձեռնությամբ ծնված հզոր շարժում է: Այն աշխատանքի արտադրողականության բարձրացման ազդու միջոց է, հասարակական ու անհատական բարեկեցության աղբյուր, հումանիստական է, քանի որ ուղղված է նոր հասարակության կառուցմանը, ակտիվ ստեղծագործական աշխատանքի համար բարենպաստ պայմանների ստեղծմանը:

Սոցիալիստական մրցությունն արթնացնում և գործողության մեջ է դնում անհատի հնկայական ստեղծագործական ուժերը: Սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործման ներկա փուլում այն կրում է հիրավի համաժողովրդական բնույթ: Բանվորների հետ մեկտեղ, սոցիալիստական մրցությանն ավելի ակտիվորեն են մասնակցում կոլտնտեսականները, ինժեներատեխնիկական և գիտական աշխատողները, ծառայողները, երիտասարդությունը, կանայք, բոլոր ազգերի ու ազգությունների մարդիկ:

«Հայէլեկտրամեքենա», «Լույս» միավորումներում և հանրապետության մյուս լավագույն ձեռնարկություններում սոցիալիստական մրցության կազմակերպման փորձի ուսումնասիրումն ու տարածումը, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացման նպատակով կուսկազմակերպությունների հետևողական աշխատանքը հնարավորություն են ընձեռել ժողովրդատնտեսական պլանների իրականացման գործում հասնելու զգալի հաջողությունների:

Մարդկային գործոնի ակտիվացումը և դրա հետ կապված անհատի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորումը տևական պրոցես են: Հասարակության զարգացման յուրաքանչյուր փուլում նրանց ներկայացվում են նոր պահանջներ: Այսօր երկրի առջև ծառանում են նոր մասշտաբային խնդիրներ, որոնք պահանջում են մարդկային գործոնի, անհատի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման հետագա ակտիվացում:

Սոցիալիստական մրցությունն ապահովում է անհատի կամքի և գործողությունների, կոլեկտիվի ու հասարակության միասնությունը: Սոցիալիստական հասարակությունը շահագրգռված է անհատի ընդունակությունների բացահայտմամբ, նրա սոցիալական ակտիվության դրսևորմամբ: Միայն այդ դեպքում կարելի է հասարակության կողմից դրված սոցիալ-տնտեսական և քաղաքական խնդիրների նյութականացման գործում հաջողության հասնել:

Սոցիալիստական հասարակությունը չի կարող արդյունավետորեն գործել՝ առանց կյանքի բոլոր ոլորտներում մասսաների ստեղծարար գործունեության զարգացման նոր ուղիներ գտնելու: Որքան մասշտաբային են պատմական նպատակները, այնքան կարևոր է տնտեսատիրոջ նման միլիոնավոր մարդկանց շահագրգռված, պատասխանատու, գիտակից և ակտիվ մասնակցությունը դրանց իրագործմանը (տե՛ս **ՍՄԿԿ ծրագիրը,** էջ 33):

---

Ռուսական առաջին հեղափոխության

80-ամյակի առթիվ

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱԳՐԱՐԱՅԻՆ ԾՐԱԳԻՐԸ 1905-1907 ԹԹ. ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆՈՒՄ

**Ս. ՀԱԿՈԲՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

*ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ՀԱՐՑԸ մարքս-լենինյան ուսմունքի, պրոլետարական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի մասին հիմնական հարցի բաղկացուցիչ մասն է։*

*XX դարի սկզբին Ռուսաստանը կանգնած էր հեղափոխության շեմին։ Երկրում ծայրահեղորեն սրվել էին սոցիալ-տնտեսական և քաղաքական հակասությունները։ Այդ հակասություններից մեկն այն էր, որ այդ դարաշրջանում, երբ կապիտալիզմը համաշխարհային մասշտաբով թևակոխել էր իր զարգացման բարձրագույն՝ իմպերիալիզմի փուլը, այստեղ դեռևս շարունակում էին պահպանվել հին, իրենց դարն ապրած ճորտատիրության մի շարք մնացուկներ։ Այսպես, էկոնոմիկայում՝ կալվածատիրական լատիֆունդիալ հողատիրությունը, գյուղացիության ժամանակավոր պարտավորյալ և կախյալ դրությունը, համապարտ երաշխիքը, աշխատավճարումները, գյուղական համայնքը և այլն, իսկ քաղաքական վերնաշենքում՝ ճորտատեր-կալվածատերերի քաղաքական դիկտատուրան, հանձին ցարական ինքնակալության, որոնք կաշկանդում էին կապիտալիզմի հետագա արագընթաց զարգացումը և իրենցով իսկ պայմանավորում բուրժուադեմոկրատական հեղափոխության անհրաժեշտությունն ու անխուսափելիությունը Ռուսաստանում։ «Ռուսաստանի առաջին հեղափոխությունը,— նշվում է «Ռուսաստանի 1905—1907 թվականների հեղափոխության 80-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— նախապատրաստվել էր երկու դարերի սահմանագծում երկրի տնտեսական ու քաղաքական զարգացման ողջ ընթացքով։ Սոցիալ-տնտեսական զարգացման օբյեկտիվ պահանջմունքներն անհաշտելի հակասության մեջ էին մտել իր դարն ապրած քաղաքական վերնաշենքի հետ»։*

*XX դարի սկզբին Ռուսաստանում ստեղծվել էին բուրժուադեմոկրատական հեղափոխության սոցիալ-տնտեսական և քաղաքական բոլոր օբյեկտիվ նախադրյալները, որոնք և պայմանավորեցին հեղափոխական իրադրության հասունացումը երկրում։ Վ. Ի. Լենինը, բնութագրելով հետռեֆորմյան Ռուսաստանի հողատիրության և գյուղացիական զանգվածների սոցիալ-տնտեսական պայքարի ֆոնը, բազմիցս նշում էր, որ 10,5 մլն գյուղացիական ծխեր ունեն ընդամենը 75 մլն դեսյատին հող, մինչդեռ 30 հազար ազնվազարմ լենդլորդեր՝ 70 մլն դեսյատին (տե՛ս ԵԼԺ, հ. 16, էջ 247, 498, հ. 20, էջ 93)։ 1905 թ. ընդամենը 85 միլիոնանոց գյուղացիական բնակչությունից մոտ 70 միլիոնը հողազուրկ էր կամ սակավահող, որոնցից 16.401 հազար գյուղացիներ ունեին 0,23-ից մինչև 0,9 դեսյատին, իսկ 53.599 հազարը՝ 1-ից մինչև 1,75 դեսյատին հող (տե՛ս* С. П. Трапезников. Ленинизм и аграрно-крестьянский вопрос. М., 1967, стр. 90)։



*Բուրժուադեմոկրատական հեղափոխության առանցքային հարցերից մեկը գյուղացիական-հողային հարցն էր, որի կիզակետում կալվածատիրական լատիֆունդիալ հողատիրության ոչնչացման խնդիրն էր, մի խնդիր, որը, Վ. Ի. Լենինի գնահատմամբ, կազմում էր գյուղացիական պայքարի «մեխը» (տե՛ս ԵԼԺ, հ. 16, էջ 266, 291)։ Այդ իմաստով էլ 1905—1907 թթ. հեղափոխությունը, բացի բուրժուական, ժողովրդական, պրոլետարական լինելուց, Լենինը համարում էր նաև գյուղացիական։*

*Մարքսիզմ-լենինիզմը ագրարային հարցի գործնական լուծումն անմիջականորեն կապում է յուրաքանչյուր երկրի պատմական զարգացման առանձնահատկությունների հետ։ Այդ տեսակետից հեղափոխության նախօրյակին Ռուսաստանում կային մի շարք առանձնահատկություններ, որոնք պետք է իրենց դրոշմը թողնեին հեղափոխության բնույթի և շարժիչ ուժերի, ագրարային և մյուս արմատական հարցերի լուծման վրա։ Ինչպես եզրահանգում էր Լենինը՝ «Ագրարային հարցը կազմում է Ռուսաստանում բուրժուական հեղափոխության հիմքը և իրենով է պայմանավորում այդ հեղափոխության ազգային առանձնահատկությունը»(նույն տեղը, էջ 498)։*

*Եթե արևմտաեվրոպական երկրներում առաջին պլանում դրված էր պրոլետարիատի հարցը, ապա Ռուսաստանում ամենահրատապ և հույժ հարցերից մեկը ագրարային-գյուղացիական հարցն էր։ Ահա թե ինչու հեղափոխության մեջ ներքաշված քաղաքական տարբեր կուսակցություններ ու խմբեր, դասակարգային սուր պայքարի պայմաններում, պետք է անդրադառնային նաև գյուղացիական հարցին, առաջադրեին ու վերանայեին իրենց ագրարային ծրագրերը և դրանց հիման վրա մշակեին բուրժուադեմոկրատական հեղափոխության ստրատեգիական ու տակտիկական սկզբունքները։ Այդպես վարվեց բոլշևիկների կուսակցությունը։ «Ռուսական սոցիալ-դեմոկրատիան,— գրել է Վ. Ի. Լենինը,— իր ծագման հենց սկզբից ընդունել է ագրարային և հատուկ գյուղացիական հարցի հսկայական կարևորությունը Ռուսաստանում, այս հարցի ինքնուրույն վերլուծությունը մտցնելով իր բոլոր ծրագրային կանխագծումների մեջ» (ԵԼԺ, հ. 12, էջ 287)։*

*Սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը մի յուրօրինակ էվոլյուցիա է ապրել, այն փոփոխվել, ճշտվել ու լրացվել է ժամանակի ընթացքում։ Հեղափոխության տարիներին Լենինը ստուգում էր կուսակցության ագրարային ծրագիրը հենց այդ հեղափոխական շարժման փորձով, վերաճշտում, լրացնում և ավելի կոնկրետացնում այն։ Այդ տարիներին նա զարգացրեց և գրեթե ավարտուն տեսքի բերեց ՌՍԴԲԿ II համագումարում ընդունված կուսակցության առաջին ագրարային ծրագիրը՝ բուրժուադեմոկրատական և սոցիալիստական հեղափոխություններին համապատասխան։*

*Իմպերիալիզմի դարաշրջանում Ռուսաստանի բուրժուադեմոկրատական հեղափոխության հաղթանակի միակ պայմանը Վ. Ի. Լենինը տեսնում էր պրոլետարիատի հեգեմոնիայի պայմաններում բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մեջ։ Լենինը ցույց տվեց, որ բանվոր դասակարգը, առանց գյուղացիության հետ դաշինքի, չի կարող լուծել իր առջև դրված խնդիրները, մի հանգամանք, որն անտեսում էին մենշևիկները։ 1905 թ. գյուղացիական զանգվածային ելույթները վկայեցին, որ, իրոք, գյուղացիությունը բանվոր դասակարգի հուսալի դաշնակիցն է։ Ռուսաստանի գյուղացիության մեծամասնության կիսապրոլետարական սոցիալ-տնտեսական և իրավական կացությունն օբյեկտիվորեն նրան մերձեցնում էր ռուսական բանվոր դասակարգին՝ դարձնում իր բնական դաշնակիցը։ Լենինը տեսականորեն հիմնավորեց, որ «...վարձու բանվորների և աշխատավոր ու շահագործվող գյուղացիների շահերի միջև արմատական տարաձայնություն չկա» (ԵԼԺ, հ. 35, էջ 117)։ Նա նշեց, որ գյուղացիությունն օբյեկտիվորեն շահագրգռված է ոչ միայն բուրժուադեմոկրատական հեղափոխության, այլև կապիտալիզմի տապալման*

մար և շատ կողմերով կիրառելի են այն բոլոր երկրներում, որոնք պետք է իրականացնեն բուրժուադեմոկրատական բնույթի խնդիրներ։

Հեղափոխության ժամանակ ցարական կառավարության բռնած բացահայտ սևհարյուրակային ռեակցիոն դիրքը, ռուսական բուրժուազիայի հակահեղափոխական դավաճանական վարքագիծը և երկու պետական դումաների անպտուղ գործունեությունը ժողովրդական զանգվածներին պետք է բերեին այն համոզմունքին, որ առանց վճռական գոտեմարտի նրանք չեն ստանա ո՛չ հող, ո՛չ ազատություն։ Ի դեմս 1905—1907 թթ. հեղափոխության, ժողովուրդը փորձ կատարեց ագրարային, ինչպես նաև հեղափոխության մյուս արմատական հարցերը լուծել «ներքևից»։

Վ. Ի. Լենինը կուսակցության ագրարային ծրագիրը մշակում ու զարգացնում էր բուրժուական և մանրբուրժուական կուսակցությունների ու հոսանքների դեմ մղվող պայքարում։ Հեղափոխության վերելքը կյանքի կոչեց և աշխուժացրեց մի շարք մանրբուրժուական գյուղացիական կուսակցությունների ու խմբերի՝ էսէռներին, մաքսիմալիստներին, էնէսներին («ժողովրդական սոցիալիստներ»), տրուդովիկներին, որոնք տատանվում էին լիբերալ բուրժուազիայի և պրոլետարիատի միջև։ Լենինը ամենից ավելի անդրադարձել է «սոցիալիստ հեղափոխականների» (էսէռների) և 1906 թ. գարնանը Պետական դումայի գյուղացիական դեպուտատներից կազմավորված «Աշխատավորական խմբի» (տրուդովիկների) ագրարային նախագծերին։

Ինչպես էսէռների, այնպես էլ տրուդովիկների ագրարային ծրագրերը ելնում էին «հավասարարական» հողօգտագործման նարոդնիկական սկզբունքներից և արտահայտում էին գյուղացիության սեփականատիրական հոգեբանությունն ու մանրբուրժուական ձգտումները։ Սոցիալ-դասակարգային իմաստով «հավասարար» հողօգտագործումը մանր արտադրողի պահանջ էր, որը բուրժուադեմոկրատական հեղափոխության հաղթանակից հետո շահագործողական հասարակարգում հնարավոր չէ իրականացնել։

Իր դասակարգային էությամբ գյուղացիության վերնախավի շահերն արտահայտող էսէռների ագրարային ծրագիրը, որն ընդունվեց 1906 թ. սկզբին, նախատեսում էր միայն հողի մասնավոր սեփականության ոչնչացում՝ պահպանելով այն արտադրության մյուս բոլոր միջոցների վրա, չդիպչելով կապիտալիստական ապրանքային արտադրության և վարձու աշխատանքի համակարգի հիմքերին։

Էսէռների և մյուս մանրբուրժուական կուսակցությունների բարոզած սոցիալիզմն ընդհանուր ոչինչ չուներ գիտական՝ մարքսիստական սոցիալիզմի հետ։ Այդ կուսակցություններն ու խմբերը չէին հասկանում հասարակական-տնտեսական զարգացման օրինաչափություններն ընդհանրապես և դասակարգային պայքարի օրենքները՝ մասնավորապես։ Պատահական չէ, որ նրանց ագրարային ծրագրերում կարմիր թելի պես անցնում էր «հավասարարության» մանրբուրժուական գաղափարը։

Էսէռները հողի սոցիալիզացիան (հավասարար հողօգտագործումը) փորձում էին իրագործել ոչ թե պրոլետարիատի դիկտատուրայի օրոք, այլ բուրժուական «լայն դեմոկրատիայի» պայմաններում։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ բուրժուական ապրանքային արտադրության պայմաններում էսէռական «հավասարարությունը» անիրականալի է։ Աշխատանքային կամ սպառողական նորմայով «հավասարարական» հողօգտագործման էսէռների մանրբուրժուական պահանջն օբյեկտիվորեն նպաստում էր կապիտալիզմի զարգացմանը։ «Հողի «սոցիալիզացիայի» միտքը,— գրում էր Լենինը,— առանց կապիտալի սոցիալիզացիայի... մոլորություն է» (ԵԼԺ, հ. 12, էջ 116)։ Մինչդեռ հողի իսկական «սոցիալիզացիա» կյանքում կարող է իրականություն դառնալ միայն պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում։

Հատկանշական է, որ հեղափոխության տարիներին հայ իրականության մեջ էսէռների ագրարային ծրագրի պաշտպանությամբ հանդես եկան նախկին նարոդնիկ, «Մշակ»-ի գլխավոր խմբագիր Ալ. Քալանթարն ու մշակականները,



հայ բուրժուանացիոնալիստական «Դաշնակցություն» կուսակցությունը։ Վերջինիս ագրարային ծրագիրը Վ. Ի. Լենինը դնում էր էսէռների ծրագրի կողքին՝ որակելով այն ծայրահեղ ռեակցիոն ու զավեշտական (տե՛ս ԵԼԺ, հ. 16, էջ 471—472)։

Թեև բոլշևիկները քննադատում և ցույց էին տալիս մանրբուրժուական կուսակցությունների ու խմբերի ագրարային ծրագրերի և քաղաքական պլատֆորմների սխալականությունը, սակայն, ելնելով պրոլետարիատի ու գյուղացիության հեղափոխական պայքարի պրակտիկայից, անհրաժեշտ և օգտակար էին համարում բոլոր հեղափոխական և դեմոկրատական ուժերի միասնական ճակատի ստեղծումը, մի գործելակերպ, որը դարձյալ արդիական է հնչում մեր օրերում։

Ագրարային հարցը ՌՍԴԲԿ-ի ներկուսակցական պայքարի առանցքը դարձավ հատկապես IV (Միավորիչ) համագումարում (1906 թ. ապրիլ)։ Լենինյան հողի ազգայնացման ծրագրին մենշևիկները հակադրեցին Պ. Մասլովի տխրահռչակ մունիցիպալիզացիայի ագրարային ծրագիրը։ Վերջինիս բուրժուառեֆորմիստական էությունն այն էր, որ մենշևիկները ևս, կադետների նման, թույլատրելի համարելով հետգնումը, հրաժարվեցին կալվածատիրական հողերի բռնագրավման գյուղացիական պահանջից՝ այն փոխարինելով կադետական անատամ «օտարման» լոզունգով։ Բացի այդ մենշևիկները գյուղացիական հեղափոխական կոմիտեներ ստեղծելու փոխարեն առաջադրեցին համայնքային ինքնավարության մարմիններ՝ մունիցիպալիտետներ, հիմնելու գաղափարը, որի տնօրինությանը պետք է անցնեին կալվածատերերից «օտարված» հողերը, իսկ գյուղացիները պետք է վարձակալեին դրանք։

Մյուս կողմից, մենշևիկ տեսաբանները՝ Գ. Պլեխանովը, Լ. Մարտովը, Պ. Մասլովը, առարկելով հողի ազգայնացման մասին լենինյան հիմնական դրույթին, պնդում էին, թե իբր բուրժուական հեղափոխության ժամանակ հողի ազգայնացման պահանջը հակահեղափոխական է, նույնիսկ ռեակցիոն, որովհետև ինչպես իրենք էին մեկնաբանում՝ հողի ազգայնացումն իբր չի վերացնում «ցարիզմի տնտեսական հիմքը» և «երաշխիք չի ստեղծի ռեստավրացիայի դեմ» (տե՛ս նույն տեղը, էջ 374—377)։ Պլեխանովի և մյուսների նման փաստարկը բխում էր բուրժուադեմոկրատական հեղափոխության հարցում մենշևիկների դոգմատիկ տեսական, ստրատեգիական և տակտիկական ոչ ճիշտ կոնցեպցիայից, թե իբր բուրժուական հեղափոխությունից հետո սկսվում է բուրժուազիայի տիրապետության մի երկարատև խաղաղ ժամանակաշրջան։ Մենշևիկների կողմից հողի ազգայնացման ժխտումը կապված էր նաև այն բանի հետ, որ նրանք չհասկացան Մարքսի դիֆերենցիալ և բացարձակ ռենտաների էությունը։

Հարկ է նշել, որ ագրարային հարցն այնքան բարդ էր ու խճճված, որ բոլշևիկների մի մասը ևս ճիշտ չկողմնորոշվեց։ Դա առավել հստակ երևաց ՌՍԴԲԿ IV համագումարի ժամանակ, երբ բոլշևիկ պատգամավորների մի խումբ՝ Ի. Ստալինի, Ս. Սուվորովի (Բորիսով) գլխավորությամբ, հանդես եկավ այսպես կոչված բաժանման պահանջով, որը Լենինը բնութագրեց որպես սխալ, բայց ոչ վնասակար (տե՛ս ԵԼԺ, հ. 13, էջ 34)։

Բաժանականները գտնում էին, որ կալվածատերերից բռնագրավված հողերը պետք է բաժանել գյուղացիներին որպես մասնավոր սեփականություն։ Նրանց սխալն այն էր,որ չէին հասկացել բուրժուադեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու լենինյան տեսությունը, այսինքն կալվածատերերից բռնագրաված և գյուղացիությանը որպես մասնավոր սեփականություն բաժանված հողը էական արգելք կհանդիսանար հետագայում սոցիալիստական հեղափոխության համար։ Այլ խոսքով, ինչպես նշում էր Լենինը, բաժանականները միակողմանիորեն գյուղացիական շարժումը դիտում էին սոսկ անցյալի ու ներկայի տեսակետից, առանց նկատի ունենալու ապագայի տեսակետը (տե՛ս նույն տեղը)։

Բոլշևիկ-լենինյանների ագրարային ծրագիրը խոշոր հարված էր մենշևիկ տեսաբանների և մյուս մանրբուրժուական կուսակցությունների դոգմատիկ սխեմաներին ու պատկերացումներին, որոնք փորձում էին արևմտաեվրոպական երկրների բուրժուական հեղափոխությունների փորձն ու ծրագրերը մեխանիկորեն տարածել իմպերիալիզմի դարաշրջանի ռուսական բուրժուադեմոկրատական հեղափոխության վրա։

Այսպիսով, 1905—1907 թթ. հեղափոխությունը թեև պարտվեց, սակայն քաղաքական կյանքի արթնացրեց և հետագա նոր հեղափոխական գոտեմարտերի նախապատրաստեց միլիոնավոր ժողովրդական զանգվածներին։

Ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրում, «1905—1907 թվականների հեղափոխությունը՝ իմպերիալիզմի դարաշրջանում առաջին ժողովրդական հեղափոխությունը, ցուցադրեց բանվոր դասակարգի ուժը, եղավ պրոլետարիատի գալիք հաղթանակների նախերգանքը» (էջ 8)։

Ռուսաստանի 1905—1907 թթ. հեղափոխությունն ունեցավ նաև հսկայական միջազգային նշանակություն։ Այն լայն արձագանք գտավ աշխարհի մի շարք՝ հատկապես Արևելքի երկրներում՝ Իրանում, Թուրքիայում, Չինաստանում և այլուր, որը Վ. Ի. Լենինը բնորոշեց որպես «Ասիայի զարթոնք» (տե՛ս ԵԼԺ, հ. 23, էջ 177)։ Ռուսական առաջին բուրժուադեմոկրատական հեղափոխությունը մեծ լիցք հաղորդեց կիսագաղութային երկրների ազգային-ազատագրական՝ հակագաղութային ու հակաֆեոդալական շարժումներին։

Չնայած 1905—1907 թվականների հեղափոխության պարտությամբ ագրարային-գյուղացիական հարցի լուծումը հետաձգվեց, սակայն դրա լուծման պատասխանը մեզ տալիս է հենց այդ հեղափոխության փորձի ընդհանրացման հիման վրա ստուգված և ճշտված լենինյան ագրարային հստակ ծրագիրը, որի իրականացման համար մարտնչում էր բոլշևիկների կուսակցությունը։ Եվ չանցած մեկ տասնամյակ, մեծ Հոկտեմբերի պատմական դեկրետով այն կյանքի կոչվեց։

---

# ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ 1905—1907 ԹԹ.

**Ա. ՀԱՄԲԱՐՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Ռուսաստանի 1905—1907 թթ. բուրժուադեմոկրատական հեղափոխությունը իմպերիալիզմի դարաշրջանի առաջին ժողովրդական հեղափոխությունն էր։ Այն քաղաքական կյանքի կոչեց աշխատավոր լայն զանգվածներին և նշանավորեց սոցիալական խոր հեղաբեկումների սկիզբը։ Ինչպես նշվում է «Ռուսաստանի 1905—1907 թվականների հեղափոխության 80-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, բացահայտ քաղաքական պայքարի ասպարեզ էր մտնում բանվոր դասակարգը, ընդլայնվում էր գյուղացիների շարժումը, որոնք ձգտում էին ոչնչացնել կալվածատիրական հողատիրությունն ու ճորտատիրության այլ մնացուկները։ Իրենց ռուս եղբայրների հետ միասին ցարիզմի դեմ պայքարում էին Ուկրաինայի, Բելոռուսիայի, Մերձբալթիկայի, Անդրկովկասի, Միջին Ասիայի և մյուս ազգային շրջանների աշխատավորները։ Ազատագրական այդ պայքարի ավանգարդում կանգնած էր Վ. Ի. Լենինի կուսակցությունը, որը, արտահայտելով աշխատավոր զանգվածների իղձերն ու ձգտումները, նրանց քաղաքականապես դաստիարակում և կոփում էր դասակարգային մարտերի ընթացքում, համախմբում պրոլետարիատի շուրջը։

Բուրժուադեմոկրատական հեղափոխության հիմնական խնդիրը հողային հարցն էր։ 1905 թ. Եվրոպական Ռուսաստանի 50 նահանգներում 30 հազար կալվածատերեր ունեին 70 **մլն**, մինչդեռ 10,5 **մլն** գյուղացիական տնտեսություններ՝ 75 **մլն** դեսյատին (1 դեսյատինը=1,09 հեկտարի) հող (տե՛ս Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 16, էջ 498)։ Իրերի նման պայմաններում գյուղում ստեղծվել էր դասակարգային մեծ հակասություն՝ մի կողմից բազմամիլիոն գյուղացիության, իսկ մյուս կողմից՝ մի բուռ կալվածատերերի միջև։

Կապիտալիստական հարաբերությունների զարգացման ու գյուղացիության սոցիալական շերտավորման հետևանքով գյուղում առաջացել էր նաև մի այլ հակասություն՝ փոքրաթիվ գյուղական բուրժուազիայի և միլիոնավոր պրոլետարական ու կիսապրոլետարական զանգվածների միջև։

Հողի խնդիրն առաջնակարգ նշանակություն էր ստացել նաև կայսրության ծայրամասերում, այդ թվում՝ Անդրկովկասում։ Արևելյան Հայաստանում 1880-ական թվականներին, սեփականության իրավունքով, ցարական կառավարությանն էր պատկանում 6.249.401 դեսյատին (կամ երկրի ամբողջ տարածության 91,4 տոկոսը), կալվածատերերին՝ 441.328 (կամ 5,5 տոկոսը), վանքերին ու եկեղեցիներին՝ 140.000 (կամ 2 տոկոսը), իսկ ազգաբնակչության ճնշող մեծամասնությունը կազմող գյուղացիներին՝ ընդամենը 8.006 դեսյատին (կամ 0,1 տոկոսը) հող (տե՛ս **Հայ ժողովրդի պատմություն,** հ. 6, Երևան, ԳԱ հրատ., 1981, էջ 33—34)։

կապիտալիստական հարաբերությունների զարգացման հետևանքով սոցիալական երկրորդ հակասությունը առաջացել էր նաև արևելահայ գյուղում: 1884 թ. Երևանի նահանգում 51.105 պետական գյուղացիական տնտեսություններից 15.374-ը (կամ 30 տոկոսը) ունեին մինչև 5 դեսյատին, 32.630-ը (կամ 63,8 տոկոսը)՝ 5—15 դեսյատին, իսկ 3.101-ը (կամ 6,2 տոկոսը)՝ 15 և ավելի դեսյատին վարելահող[1]: Արևելյան Հայաստանի ուշ շրջանի հողատիրության վերաբերյալ, դժբախտաբար, տեղեկություններ չունենք, բայց հավանական է, որ XX դարի սկզբին սոցիալական այդ հակասությունները ավելի էին սրվել:

Եվրոպական Ռուսաստանի համեմատությամբ հողատիրությունն Արևելյան Հայաստանում ընդհանրությունների հետ միասին ուներ նաև տարբերություններ: Եթե կայսրության Եվրոպական մասում գերակշռում էր կալվածատիրականը, ապա Արևելյան Հայաստանում՝ պետական հողատիրությունը: Առաջինում գերիշխում էր կալվածատիրական խոշոր (կալվածատիրական ամեն մի ընտանիք ուներ միջին հաշվով 2.333 դեսյատին) (տե՛ս Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 16, էջ 247), երկրորդում մանր հողատիրությունը (կալվածատիրական յուրաքանչյուր ընտանիք ուներ միջին հաշվով 124 դեսյատին, նրանց ավելի քան 70 տոկոսը՝ մինչև 19 դեսյատին հող) (տե՛ս М. А. Адонц, Экономическое развитие Восточной Армении в 19 в., Е. изд. АН, 1957, с. 300—301): Եվրոպական Ռուսաստանում գյուղացիական ամեն մի ծուխ 1905 թ. ուներ միջին հաշվով 11,1 դեսյատին, իսկ Արևելյան Հայաստանում՝ 5—6 դեսյատին (տե՛ս Ա. Համբարյան, **Հայաստանի սոցիալ-տնտեսական հարաբերությունների համառոտ պատմություն**, «Հայաստան» հրատ., 1983, էջ 93): Եթե նկատի ունենանք նաև, որ Ռուսաստանում հողն ավելի բարեբեր էր, քան Հայաստանում, ապա կհամոզվենք, որ հայ գյուղացու դրությունն անհամեմատ ծանր էր:

Սակայն, ինչպես ռուս, այնպես էլ հայ և այլ ազգության գյուղացիները տառապում էին ցարիզմի գարշապարի տակ, հարստահարվում ու կեղեքվում ինքնակալության պաշտոնյաների, կալվածատերերի, կուլակների ու զանազան պորտաբույծների կողմից: Այդ ծանր դրությունից նրանք կարող էին դուրս գալ միայն ակտիվ պայքարի շնորհիվ: Եվ երբ Ռուսաստանում 1905 թ. հունվարին սկսվեց հեղափոխությունը, համարյա ամենուրեք գյուղացիները ոտքի ելան իրենց շահագործողների ու ճնշողների դեմ:

Վ. Ի. Լենինը և նրա զինակիցները հսկայական աշխատանք կատարեցին այդ շարժումները ծավալելու, կազմակերպելու և պրոլետարիատի պայքարի հետ միավորելու նպատակով: ՌՍԴԲԿ III համագումարում 1905 թ. ապրիլին որոշվեց, որ բանվոր դասակարգը պետք է պաշտպանի գյուղացիների հեղափոխական պահանջները՝ ընդհուպ մինչև կալվածատիրական, պետական, եկեղեցապատկան հողերի բռնագրավումը: Այն կոչ հղեց՝ ստեղծել ամենուրեք գյուղացիական հեղափոխական կոմիտեներ և միջոցներ ձեռնարկել գյուղական պրոլետարիատի ինքնուրույն կազմակերպման ու սոցիալ-դեմոկրատիայի դրոշի ներքո քաղաքային պրոլետարիատի հետ միաձուլման համար (**Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմություն**, «Հայաստան» հրատ., 1981 թ., էջ 96):

Վ. Ի. Լենինի ցուցումները և ՌՍԴԲԿ որոշումները Անդրկովկասում ու Արևելյան Հայաստանում պրոպագանդում և կենսագործում էին տեղական սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները: Դեռ 1905 թ. մարտի 19-ին ՌՍԴԲԿ Կովկասյան միության կոմիտեն դիմեց հայ գյուղացիներին մի կոչով, որտեղ նշում էր, թե խավարի ժամանակներն արդեն անցել են, շահագործվողներն ու ճնշվածները ոտքի են ելել և արդարացի պատերազմ հայտարարել իրենց կեղեքիչների դեմ: Այնուհետև ասվում էր. «Ուրեմն հառաջ, հայ գյուղացիներ, միացած քաղաքի բանվորների հետ դիմենք դեպի դեմոկրատական հասարակապետություն... արմատախիլ անենք զզվելի օրենքը և ստոր բռնակալությունը, որպեսզի ճանապարհ բանանք դեպի հավասար և համակրելի կյանքը, դեպի սոցիալիստական օրենքներն ու կարգերը, որոնց այնքան տենչանքով դիմում են քաղաքի բանվորները և աղքատացած գեղջուկը: Տապալվի՛

[1] *Տե՛ս* ЦГИА СССР, ф. 396, оп. 2, д. 1160: *(Հաշվումները կատարված են մեր կողմից։*



ստրկական լուծը: Կորչի՛ ցարական կառավարությունը: Կեցցե՛ ժողովրդի ընտրական ժողովը» (**Ռևոլյուցիոն կոչեր և թռուցիկներ. 1902—1921**, «Հայպետհրատ», 1960, էջ 120—121):

Շուտով ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի Բորչալուի կազմակերպությունը հայերեն լեզվով հրատարակած «Բորչալուի գյուղացիներին» նշանավոր կոչում նրանց առաջարկում էր միանալ բանվորներին, համալրել սոցիալ-դեմոկրատիայի շարքերը և նրա ղեկավարությամբ կռվել ցարի ու կալվածատերերի, վաշխառուների ու կուլակների դեմ: Միաժամանակ մերկացնում էր դաշնակցականներին՝ անվանելով նրանց գյուղացիների կեղծ բարեկամներ (նույն տեղը, էջ 131): Բոլշևիկները քննադատում էին դաշնակցականների այն վնասակար քարոզները, թե հայ ժողովուրդը, իբր, չունի շահագործողներ ու շահագործվողներ, թե նա ունի իր ազգային հոգսը՝ արևմտահայության փրկությունը, ուստի պետք է զբաղվի միայն այդ հոգսով և մի կողմ թողնի համառուսական հեղափոխությունը:

Ցարական կառավարությունը հեղափոխության առաջին իսկ օրից, ժողովրդական ելույթները ճնշելու նպատակով, գործադրեց ռեպրեսիաներ՝ ձերբակալելով ու աքսորելով շարժման կազմակերպիչներին ու մասնակիցներին և դաժան դատաստան տեսավ նրանց հետ: Ռեպրեսիաներին զուգընթաց դիմեց նաև խաբեության՝ խոստանալով ժողովրդին զանազան իրավունքներ ու նյութական վիճակի բարելավում: Միաժամանակ ցարական իշխանությունները հրահրում էին ազգամիջյան կռիվներ՝ ժողովուրդների ուշադրությունը ազատագրական պայքարից շեղելու նպատակով:

Անդրկովկասում ինքնակալը 1905 թ. հունվարին վերականգնեց փոխարքայությունը՝ միապետական կարգերին նվիրված գեներալ-լեյտենանտ Ի. Ի. Վորոնցով-Դաշկովին նշանակելով փոխարքա: Ժամանելով Թիֆլիս, նա դիմեց Անդրկովկասի ժողովուրդներին և պահանջեց պահպանել անդորրություն՝ հավատիացնելով, թե նրանք շուտով կստանան խոսքի, մամուլի, ժողովների ու միտինգների ազատություն, զեմստվոներ, «ժամանակավոր պարտավորյալ» հարաբերությունների դադարեցում, լրացուցիչ հողաբաժիններ և այլն:

Բայց, չնայած դրան, Անդրկովկասում տեղի ունեցան հեղափոխական բազմաթիվ ելույթներ, որոնք ձգտում էին տապալել բռնապետությունը և հաստատել դեմոկրատական կարգեր: Հիշատակենք Արևելյան Հայաստանում ռուսական առաջին բուրժուադեմոկրատական հեղափոխության վերելքի տարիներին տեղի ունեցած գյուղացիական շարժումների մի քանի նշանավոր դեպքեր:

1905 թ. հունվարի վերջին Վաղարշապատի բնակիչները սպանեցին իրենց գյուղապետին: Իշխանությունները չկարողացան հայտնաբերել կոնկրետ սպանողին և տուգանեցին բոլորին՝ 6.960 ռուբլով (տե՛ս «Մշակ», 1905, № 47):

Մարտի վերջին Ալեքսանդրապոլի գավառի Շիշթափա գյուղի բնակիչները զավթեցին իրենց կողմից վարձակալվող պետական հողամասը: Շուտով նրանց օրինակին հետևեցին մեծ ղարաքիլիսեցիները: Հաշտարար միջնորդը գտնում էր, որ իշխանությունները պետք է ուժի դիմեն, այլապես նրանց հեղինակությունը կընկնի ժողովրդի մեջ (տե՛ս Революционное движение в Армении, 1905—1907 гг. (Сборник документов и материалов), «Айпетрат», 1955, с. 256):

Ապրիլին Լոռիում Ղաչաղան գյուղի բնակիչները փորձեցին զավթել հայտնի կալվածատեր Վ. Մուխնյանի հողամասը, որի հետևանքով տեղի ունեցավ զինված ընդհարում նրանց և կալվածատիրոջ շահերը պաշտպանող ստրաժնիկների միջև (տե՛ս Դ. Ա. Մուրադյան, **Հայաստանը ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին**, Ե., ԳԱ հրատ., 1964, էջ 85):

Մայիսին Ապարանում հարուստների և չքավորների միջև տեղի ունեցավ ընդհարում հողաբաժինների վերաբաժանման համար: Հուլիսին Երևանի ու Էջմիածնի գավառների բազմաթիվ գյուղացիներ հրաժարվեցին կալվածատիրական հարկերի վճարումից ու պարհակների կատարումից (տե՛ս Революционное движение в Армении... с. 262—263):

Նոյեմբերին Սեմյոնովկա գյուղի բնակիչները դրսևորեցին հակացարական վարքագիծ՝ ինքնակալին հիմար անվանելով այն բանի համար, որ նա ոստիկանական

ստրաժնիկներին տալիս է բարձր ռոճիկներ: Ստրաժնիկի սպառնալիքին, թե նման արտահայտության համար պատիժ է նախատեսվում, գյուղացիները պատասխանեցին. «Այժմ ամենուր թույլատրվում է հայհոյել նաև ցարին» (նույն տեղը, էջ 64):

Բոլշևիկները ինչպես Ռուսաստանի այլ շրջաններում, այնպես էլ Անդրկովկասում, աշխատում էին հեղափոխական շարժումներին տալ կազմակերպված ու հաղթական բնույթ: 1905 թ. նոյեմբերին գումարվեց ՌՍԴԲԿ Կովկասյան միության IV կոնֆերանսը, որը գյուղացիական հարցի առթիվ որոշեց, թե պետք է ստեղծել հեղափոխական գյուղացիական կոմիտեներ և կապել գյուղացիական շարժումները պրոլետարիատի պայքարի հետ: Այնուհետև Ստ. Շահումյանի նախաձեռնությամբ ու գլխավորությամբ Բորչալուում գումարվեց կոնֆերանս, որը քննության առավ գյուղացիական շարժումների ակտիվացման և բանվորների ու գյուղացիների ելույթների միավորման հարցերը:

Կոնֆերանսների որոշումները շուտով տվեցին իրենց արդյունքները: 1905 թ. նոյեմբերի 23-ին Բորչալուի մի շարք գյուղերի բնակիչներ հարձակվեցին կալվածատերերի վրա, հրդեհեցին նրանց կալվածքները և թալանեցին ունեցվածքը: Այդ նույն ամսին բոլշևիկների կազմակերպած Ալավերդու բանվորների հայտնի գործադուլին և Սանահինի երկաթուղայինների ցույցին մասնակցեցին շրջակա գյուղերի բնակիչներ (տե՛ս **Հեղափոխական պայքարի վավերագրեր**, «Հայաստան» հրատ., 1984, էջ 323—325):

Ակտիվ ելույթների հետ միասին գյուղացիներն ամենուրեք հանդես էին գալիս նաև պասիվ պայքարով՝ գանգատներով ու բողոքներով, ցարական իշխանություններից պահանջելով հատկացնել լրացուցիչ հողաբաժին, իջեցնել հարկերը, վերացնել ապառքները, պաշտոնյաների ու կալվածատերերի չարաշահումները և այլն:

1905 թ. դեկտեմբերյան զինված ապստամբության օրերին բոլշևիկները խնդիր էին դնում, որ Անդրկովկասի, այդ թվում նաև Հայաստանի բանվորներն ու գյուղացիները պետք է գործուն կերպով արձագանքեն մայրաքաղաքի իրադարձություններին և օգնեն բարիկադների վրա արդեն մարտնչող ռուս պրոլետարիատին: Ստ. Շահումյանը «Кавказский рабочий листок»-ի 1905 թ. դեկտեմբերի 10-ի **Վերադարձ չկա** առաջնորդողում գրում էր. «Մենք պետք է դիմենք հեղափոխական պայքարի մի այլ զենքի, որից պրոլետարիատի հետ համահավասար կարող են օգտվել նաև հեղափոխական ժողովրդի ոչ պրոլետարական տարրերը: Ինքնակալությունը մեզ ստիպում է ձեռնարկել պայքարի համաժողովրդական միջոցին՝ զինված ապստամբությանը» (Ստ. Շահումյան, **ԵԼԺ**, հ. 1, էջ 148):

Ցարական կառավարությունը, արյան մեջ խեղդելով Դեկտեմբերյան զինված ապստամբությունը, հրահանգում էր շարունակել դաժան ռեպրեսիաները և ոչնչացնել հեղափոխական ամեն մի բռնկում: Նա պատժիչ արշավախմբեր էր ուղարկում գյուղերը, ձերբակալում «հանցագործներին» և նույնիսկ գնդակահարում: Դահիճները մի շարք տեղերում գործում էին «ձերբակալվածներ չունենալ, փամփուշտներ չխնայել» ցուցումներով:

Չնայած այդ ամենին հեղափոխական շարժումները ինչպես Ռուսաստանի այլ շրջաններում, այնպես էլ Անդրկովկասում ու Արևելյան Հայաստանում, շարունակվում էին նաև 1905 թ. Դեկտեմբերյան զինված ապստամբության պարտությունից հետո: 1906 թ. ապրիլին Ստոկհոլմում ՌՍԴԲԿ-ն հավաքվեց համագումարի և զբաղվեց հիմնականում իր ագրարային ծրագրի վերանայումով: Բոլշևիկները, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, առաջ քաշեցին հողի ազգայնացման լոզունգը: Դա հնարավորություն կտար ոչնչացնելու ֆեոդալական-կալվածատիրական հողատիրությունը և լայն պայմաններ կստեղծեր արտադրուժերի ու արտադրահարաբերությունների զարգացման համար:

Մենշևիկներն առաջարկեցին հողի մունիցիպալացման ծրագիրը, որը պահպանում էր գյուղացիների սեփականությունն իրենց հողաբաժնի նկատմամբ և իրավունք էր տալիս նրանց՝ վարձակալելու տեղական ինքնավար օրգանների տրամադրության տակ անցած կալվածատիրական հողերը: Վ. Ի. Լենինը դա համարում էր հետադիմական և ուտոպիական, քանի որ մասսաներին հեղափոխական գործողությունների կոչելու փոխարեն վնասակար պատրանքներ էր սերմանում ագրարային հարցը խաղաղ ճանապարհով, հետադիմական վարչակարգը պահպանելու պայմաններում լուծելու վերաբերյալ: Նա ցույց էր տալիս, որ մենշևիկները բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի փոխարեն քարոզում են կալվածատերերի և գյուղացիների համաձայնություն: Չնայած այդ ամենին, համագումարն ընդունեց մունիցիպալացման մենշևիկների ծրագիրը, քանի որ նրանք մեծամասնություն էին կազմում:

Վ. Ի. Լենինի ագրարային թեզերը Անդրկովկասում ու Արևելյան Հայաստանում պաշտպանում ու պրոպագանդում էին նրա զինակիցները: Ստ. Շահումյանը 1906 թ. հունիսին գրում էր. «Հող պահանջել գյուղացիության համար, նշանակում է պահանջել գրավումն (կոնֆիսկացիա) բոլոր արքունական, կայսերական, կալվածատիրական և այլ հողերի» (Ստ. Շահումյան, **ԵԼԺ**, հ. 1, էջ 193): Այնուհետև շարունակում էր, որ ամբողջ Ռուսաստանում գյուղացիությունն արթնացել է ու պահանջում է հող և ազատություն: Նա պատերազմ է հայտարարել կալվածատերերին ու լիբերալներին՝ դաշինքի ձեռք մեկնելով պրոլետարիատին:

Ս. Սպանդարյանը 1906 թ. սեպտեմբերին հանդես եկավ **Մեր դերը գյուղում** հոդվածով, որտեղ հանգամանորեն շարադրեց բոլշևիկների անելիքները հայ գյուղում: Նա ցույց էր տալիս, որ սոցիալ-դեմոկրատիայի գլխավոր նպատակն է «կազմակերպել գյուղի պրոլետարական կամ կիսապրոլետարական մասսան՝ գյուղական բանվորներին, հողազուրկներին» (Ս. Սպանդարյան, **Ընտիր երկեր**, «Հայաստան» հրատ., 1982, էջ 91): Այն պետք է ներարկի նրանց մեջ դասակարգային գիտակցություն և հաստատի «կապ գյուղի և քաղաքի բանվորության մեջ» (նույն տեղը), պետք է ձգտի, որ «շարժումը լինի ոչ թե տարերային, անձև, անկազմակերպ, սոսկ ժողովրդական զայրույթի և կատաղության բռնկում, պայթյուն, առանց որևէ որոշակի նպատակի, այլ գիտակից և կազմակերպված, հեռու էքսցեսներից և ավելորդ, աննպատակ ծայրահեղություններից» (նույն տեղը, էջ 92):

Ստ. Շահումյանն ու Ս. Սպանդարյանը ակտիվ պայքար ծավալեցին նաև հայ բուրժուական կուսակցությունների, մասնավորապես դաշնակցության վնասակար գործունեության դեմ: Ստ. Շահումյանը 1906 թ. հունիսին ցույց էր տալիս, որ ցարիզմի ու ազգայնական կուսակցությունների պատճառով «թուրք և հայ գյուղացիությունը՝ փոխանակ համերաշխությամբ կռվելու հանուն հողի և ազատության, անմիտ, եղբայրասպան կոտորածներով են զբաղված...» (Ստ. Շահումյան, **ԵԼԺ**, հ. 1, էջ 209—210):

Ս. Սպանդարյանը նույն թվականի սեպտեմբերին գրում էր, որ հայ ազգի կուսակցությունները, բաժանելով գյուղերն իրար մեջ, նրանց հանում են միմյանց դեմ և այդպիսով շեղում են գյուղացիության ուշադրությունը համընդհանուր ազատագրական պայքարից: «Այդ կուսակցություններն իրանց անվանել են միշտ «սոցիալիստ», իսկ գործով եղել են ամենաոխերիմ թշնամի սոցիալիստական գաղափարի...» (Ս. Սպանդարյան, **Ընտիր երկեր**, էջ 92):

Շնորհիվ Վ. Ի. Լենինի հայ զինակիցների եռանդուն ջանքերի 1906—1907 թթ. գյուղացիական շարժումները Հայաստանում ընդունում էին կազմակերպված բնույթ և մի շարք դեպքերում հասնում հաջողության: Ահա այդ տարիների գյուղացիական նշանավոր ելույթների մի քանի փաստեր:

1906 թ. գարնանը Լոռիում գյուղացիները դիմադրեցին ցարական իշխանություններին, երբ սրանք փորձեցին խլել նրանց անտառային տարածությունները: Պայքարն այն աստիճանի սուր բնույթ ընդունեց, որ պաշտոնյաները ստիպված եղան դադարեցնել սահմանագծումների աշխատանքները[1]:

1906 թ. գարնանը ուժեղ ընդհարումներ առաջացան Շամշադինի մի շարք գյուղերում: Գյուղացիները բռնագրավում էին կալվածատերերի հողերը: Ցարական իշխանությունները դաժանորեն ճնշեցին նրանց ելույթները (տե՛ս «Կայծ», 1906, № 7):

Այդ նույն ամսին Շարուր-Դարալագյազի գավառի Նետանլին գյուղի բնակիչները դիմագրավեցին ցարական հարկահաններին: Ստրաժնիկները կրակեցին նրանց վրա: Գյուղացիները պատասխանեցին կրակով և սպանեցին ստրաժնիկներից մեկին: Գավառապետը դաժանորեն ճնշեց նրանց ելույթը[2]:

---

1 Տե՛ս ЦГИА СССР, ф. 396, оп. 3, д. 1094, л. 242, оп. 4, д. 195, л. 189;
2 Տե՛ս ЦГИА ГССР, ф. 1, д. 207, л. 2.

Հուլիսին Հաղպատի գյուղացիները ծառացան վանքի դեմ, գրավեցին կալվածքները և նրանց եկամուտներով բացեցին դպրոց: Թիֆլիսի հայոց հոգևոր ղեկավարները իշխանությունների միջոցով ետ խլեցին կալվածքները, սակայն դպրոցի ծախսերի մի մասը հարկադրված եղան վերցնել իրենց վրա (տե՛ս **Ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում 1905—1907 թթ.:** Հոդվածների ժողովածու, ԵՊՀ հրատ., 1955, էջ 270—271):

Օգոստոսին Բորչալուի գավառի 40 հայ գյուղեր պայմանագիր կնքեցին կալվածատերերի հետ վարձակալական գները իջեցնելու, գավառից ազգամիջյան թշնամություն սերմանող բեգերին հեռացնելու և հայ ու ադրբեջանական գյուղացիների հողատարածքները որոշակիորեն սահմանագծելու մասին (տե՛ս «Մշակ», 1906, № 149):

Սեպտեմբերին Լոռու Կուրթան գյուղի բնակիչները բոլշևիկների ղեկավարությամբ հողատիրոջից պահանջեցին իջեցնել վարձակալական գները և, մերժում ստանալով, իրենք իրագործեցին իրենց որոշումը (տե՛ս «Նոր խոսք», 1906, № 5):

Գյուղացիական ելույթները Հայաստանում շարունակվեցին նաև 1906 թ. վերջին ամիսներին:

1907 թ. գարնանը գումարվեց ՌՍԴԲԿ Բորչալուի կազմակերպության III կոնֆերանսը, որը քննության առավ նաև ագրարային շարժումների հարցը: Նա կոչ հղեց գյուղացիներին՝ շարունակել պայքարը հողատերերի ու կուլակների դեմ՝ ամրապնդելով կապը պրոլետարիատի հետ: Նրա կոչում ասվում էր. «Միայն համերաշխ կռվով, միայն գյուղական և քաղաքային պրոլետարիատի միացած ուժերով կարելի է տապալել շահագործության և ճնշումների ռեժիմը և ձեռք բերել ազատություն ժողովրդի համար: Պետք է պատրաստվեք, որպեսզի միացած ուժերով ամբողջ Ռուսաստանի գյուղացիության հետ միասին ետ խլեք ազնվականների և կառավարության ձեռքի բոլոր հողերը: Ամբողջ հողը գյուղացիներին և ամբողջ ազատությունը ժողովրդին, այս է մեր սրբազան պահանջը» (**Ռևոլյուցիոն կոչեր և թռուցիկներ,** էջ 302—303):

Բորչալուի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների III կոնֆերանսը նոր լիցք հաղորդեց գյուղացիական շարժումներին Լոռիում: Գյուլագարակ գյուղում բնակիչները հրդեհեցին իրենց համագյուղացի Խ. Ծահինյանցի խանութը և ավերեցին այգիները, Գոլովինո գյուղում նրանք սկսեցին կտրատել իշխանուհի Բարաթովի անտառները և օգտագործել իրենց կարիքների համար, Ղաչաղան, Մղարթ, Ծաթեր, Կուրթան, Աքորի և այլ գյուղերում գյուղացիները կրճատեցին կալվածատերերին տրվելիք բերքի բաժինը և այլն (տե՛ս **Ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին,** Ե., ԳԱ հրատ., 1955, էջ 154):

1907 թ. գյուղացիական շարժումները շարունակվում էին նաև Հայաստանի մյուս շրջաններում: Այսպես, Երևանի գավառի Ելղովան և Գյոքիլիսա գյուղերում բնակիչները հրաժարվեցին կալվածատիրոջ տուրքերից և վռնդեցին նրա հարկահավաքներին, Արինջայում մերժեցին կալվածատիրոջ պահանջը՝ նրա բաժին մուլքը Երևան տեղափոխելու մասին: Այդ նույն վարքագիծը դրսևորեցին նաև Կոտայքի շրջանի Ջառ գյուղի բնակիչները: Երբ տանուտերը առաջարկեց գյուղացիներին վճարել կալվածատիրոջ բաժինը, նրանք պատասխանեցին, թե «ոչ ոքի թույլ չեն տա մուլք վճարել, որ կջարդեն և կայրեն կալվածատիրոջը, ինչպես Ռուսաստանում են անում» (տե՛ս Վ. Պարսամյան, **Ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում 1905—1907 թթ.,** ԵՊՀ հրատ., 1955, էջ 88—89):

Ղափանի Բաշքենդ և այլ գյուղերում բնակիչները 1907 թ. մարտին բոլշևիկների ղեկավարությամբ ծառացան ցարական վարչակարգի դեմ՝ փորձելով ոչ միայն ձեռք բերել հող, այլև վռնդել պրիստավին ու մյուս պաշտոնյաներին: Սակայն իշխանությունները ճնշեցին շարժումը, իսկ նրա կազմակերպիչներից մեկին՝ բոլշևիկ Կոնստանտին Միխայլովին, ձերբակալեցին ու նետեցին Մետեխի բանտ: Ցարական դատարանի մեղադրական ակտում նշվում էր, թե նա գյուղացիներին ասել է. «Եթե կառավարությունը մեզ հող չի տալիս, ապա մենք ինքներս կխլենք այն, դուրս կանենք գյուղից պրիստավներին ու չինովնիկներին: Թող կառավարությունն ու նրա



չինովնիկները լավ իմանան, որ գյուղացին այլևս իր գլուխը չի խոնարհի... Կորչե՛ն հողատերերը, կալվածատերերը և կապիտալիստները: Կեցցե՛ ազատությունը» (**Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր,** «Հայպետհրատ», 1967, էջ 114):

Հատկանշական է, որ հեղափոխության տարիներին գյուղացիները հանդես էին գալիս ոչ միայն իրենց հարստահարողների, այլև նրանց շահերը պաշտպանող բուրժուական կուսակցությունների, մասնավորապես դաշնակցականների դեմ: Զանգեզուրում, Ապարանում և այլուր նրանք մերժեցին դաշնակցականների պահանջները և նրանց վռնդեցին գյուղերից (տե՛ս «Նոր խոսք», 1906, № 3): Հետզհետե դաշնակցության ազդեցությունը հայկական գյուղում ընկնում էր: Կովկասի փոխարքան 1907 թ. արձանագրում էր, որ «դաշնակցական կուսակցության նշանակությունն ու ազդեցությունը ժողովրդի վրա արդեն անվերադարձ կորած է» (Всеподданнейшая записка по управлению Кавказским краем генерал-адъютанта графа Воронцова-Дашкова. Тифлис, 1907, с. 16):

Արևելյան Հայաստանի գյուղացիական ելույթները կազմում էին համառուսաստանյան գյուղացիական շարժումների բաղկացուցիչ մասը և որպես այդպիսին շատ ընդհանուր բան ունեին նրանց հետ: Ինչպես Եվրոպական Ռուսաստանում, այնպես էլ Արևելյան Հայաստանում գյուղացիները պայքարում էին հողի և ազատության համար, կռվում էին շահագործման ֆեոդալական ու կապիտալիստական, բայց հատկապես՝ ֆեոդալական ձևերի դեմ: Նրանց պայքարը դրսևորվում էր առավելապես պասիվ եղանակներով: Վերլուծելով 1905—1907 թթ. գյուղացիական շարժումները Ռուսաստանում, Լենինը գրում էր. «Մեր հեղափոխության մեջ գյուղացիության ավելի փոքր մասն է իրոք պայքարել գոնե փոքր-ինչ կազմակերպվելով այդ նպատակի համար, և բոլորովին փոքր մասն է զենքը ձեռքին ոտքի ելել իր թշնամիներին բնաջնջելու, ցարական ծառաներին ու կալվածատերերի պաշտպաններին ոչնչացնելու համար: Գյուղացիության մեծ մասը լաց էր լինում ու աղոթում, խրատաբանում էր ու երազում, խնդրագրեր էր գրում և «խնդրարկուներ» ուղարկում...» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 17, էջ 254):

Ինչպես եվրոպական Ռուսաստանում, այնպես էլ Արևելյան Հայաստանում գյուղացիական շարժումները բռնկվում էին և՛ կազմակերպված՝ ՌՍԴԲԿ տեղական կոմիտեների ղեկավարությամբ, և՛ տարերայնորեն, բայց ավելի շատ անկազմակերպ, տարերայնորեն: Այդ պատճառով էլ նրանք մեծ մասամբ ավարտվում էին պարտությամբ, թողնելով գյուղացիների վրա հոգեկան և նյութական դառը հետևանքներ: Խոսելով 1905 թ. հեղափոխության մասին, Լենինը նշում էր. «Դժբախտաբար, գյուղացիները գործում էին չափազանց ցրված, անկազմակերպ, ոչ բավականաչափ հարձակողական, և դա է հեղափոխության պարտության արմատական պատճառներից մեկը» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 30, էջ 399):

Թե՛ Եվրոպական Ռուսաստանի, և թե Արևելյան Հայաստանի տարբեր շրջաններում գյուղացիական շարժումները բռնկվում ու ծավալվում էին տարբեր չափով ու մակարդակով: Ռուսաստանում դրանք ուժեղ արտահայտվեցին Լեհաստանում, Մերձբալթյան երկրներում և կենտրոնական սևահողային նահանգներում, իսկ Հայաստանում՝ գերազանցապես Լոռիում:

Բայց Եվրոպական Ռուսաստանի համեմատությամբ, Արևելյան Հայաստանում գյուղացիական շարժումներն ունեին իրենց առանձնահատկությունները: Դրանցից մեկն այն է, որ նրանք, ինչպես իրավացիորեն նշում են ուսումնասիրողները, սոցիալականի հետ միասին ունեին նաև ազգային-ազատագրական բնույթ, որը պայմանավորված էր Ռուսաստանի ծայրամասերի, այդ թվում նաև Արևելյան Հայաստանի գաղութային վիճակով: Սակայն ազգային հարցը ամենուրեք երկրորդական էր: Առաջնայինը գյուղացիական խնդիրն էր:

Ի տարբերություն Լեհաստանի, Մերձբալթյան երկրների, կենտրոնական սևահողային նահանգների ու Վրաստանի, ուր գյուղացիական շարժումներն արտահայտվում էին իրենց բարձրագույն ձևերով՝ ապստամբությամբ, Արևելյան Հայաստանում նրանք դրսևորվում էին մասնակի ընդվզումներով, տեղական բռնկումներով ու ընդհարումներով: Դա պայմանավորված էր ցարական իշխանությունների կողմից կազ-

մակերպված հայ-ադրբեջանական կոտորածներով, բուրժուական կուսակցությունների, հատկապես մուսավաթականների ու դաշնակցականների ազգայնական վարքագծով, պետական ազատ հողերի սահմանափակությամբ, կալվածատիրական հողատիրության փոքր տեսակարար կշռով, կալվածատիրական մանր հողատիրության գերիշխումով, գյուղում կապիտալիստական հարաբերությունների թույլ զարգացումով, քաղաքային պրոլետարիատի անբավարար ձևավորումով և այլն։

Եվրոպական Ռուսաստանի մի շարք վայրերում բատրակները հաճախ ինքնուրույն, առանձին խմբերով էին ըմբոստանում իրենց շահագործողների դեմ, մինչդեռ Արևելյան Հայաստանում, վարձու աշխատանքի համեմատաբար թույլ զարգացման պատճառով, նրանք հանդես էին գալիս բացառապես գյուղացիության մյուս զանգվածների հետ համատեղ։

Եվրոպական Ռուսաստանի բազմաթիվ շրջաններում գյուղացիական շարժումներն իրենց գագաթնակետին հասան 1905 թ. աշնանը, այնուհետև վայրէջք ապրեցին։ Մինչդեռ Արևելյան Հայաստանում նրանք համարյա չունեցան այդպիսի մակընթացություններ ու տեղատվություն։ Աղբյուրներին մոտիկից ծանոթությունը հիմք է տալիս եզրակացնելու, որ 1905 թ. գյուղացիական շարժումները արևելահայ գյուղում համարյա չէին տարբերվում 1906—1907 թթ. շարժումներից։ Ի տարբերություն Եվրոպական Ռուսաստանի վերոհիշյալ նահանգների, արևելահայ գյուղում ո՛չ համառուսաստանյան հոկտեմբերյան գործադուլների և ոչ էլ դեկտեմբերյան զինված ապստամբության օրերին տեղի չունեցան խոշոր ելույթներ։ Ազգամիջյան ընդհարումները, բուրժուական կուսակցությունների ազգայնական, հակահեղափոխական գործունեությունը և այլ հանգամանքներ Արևելյան Հայաստանում գյուղացիական շարժումների վրա թողեցին իրենց բացասական հետևանքները։

Այնուամենայնիվ, 1905—1907 թթ. հեղափոխությունը մեծապես նպաստեց ինչպես ամբողջ Ռուսաստանի ժողովուրդների, այնպես էլ հայ ժողովրդի հասարակական-քաղաքական զարգացմանը։ Սեփական փորձով աշխատավոր զանգվածները, այդ թվում նաև գյուղացիները, համոզվեցին, որ իրենք առանձին-առանձին չեն կարող հաղթել։ Ուստի շարունակեցին ավելի ու ավելի համախմբվել պրոլետարիատի շուրջը, կանգնել Վ. Ի. Լենինի կուսակցության դրոշի ներքո։

---



# ԱՄԵՆ ՕՐ՝ ՆՈՒՅՆ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅԱՄԲ

Ս. ՆՈՒՐԻՋԱՆՅԱՆ

Քաջարանում բոլորը գիտեն, որ Պավլուշա Դավթյանի գերդաստանը «եկվոր է»։ Հայրը Մեղրու շրջանի Տաշտուն գյուղից եկել, բնակություն է հաստատել Քաջարանում, աշխատանքի անցել լեռնահետախուզական արշավախմբում։ Մեծ հայրենականը սկսվելուն պես մեկուկես տարեկան որդուն թողել է տանը ու մեկնել ռազմաճակատ։

— Հորս դեմքը պատկերացնում եմ պապիս պատմածով։— Եվ քարի պես ամրակուռ մարդու սև ու խոշոր աչքերը խոնավանում են։

Մայրն էլ երկար չապրեց։ Դե որբի կյանքը ի՞նչ կլինի։ Ու մեղմ ժպտալով ասում է.

— Մարդավայել կյանքի համը առաջին անգամ տեխնիկական ուսումնարանում զգացի։

Ուսումնարանն ավարտեց 1956-ին, բարձրացավ լեռան ատորոտի բաց հանքը ու մինչև օրս, ահա արդեն երեսուն տարի, կռիվ է տալիս քարի ու հողի հետ։ Այժմ նա ճանաչված մարդ է։ Նույնիսկ նրանք, ովքեր չեն եղել Քաջարանում, երես առ երես չեն տեսել Պավլուշային, կարող են պատմել նրա մասին, բրիգադի տղաների մասին։ Այդ ճանաչումը միանգամից չեկավ։ Մեկ-երկու օրում վարպետ չեն դառնում։ Վարպետի ձիրքը մարդուն տրվում է, ինչպես ասում են՝ վերուստ։ Գանձասար գալու չորրորդ տարում Պավլուշան այդ կոչումը նվաճեց ու կրում է արժանիորեն։

— Ո՞րն է կյանքիդ ամենահիշարժան պահը,— լրագրողի համար սովորական դարձած այս հարցը տալիս եմ Պավլուշային հենց այնպես, զրույցի մեջ խորանալու, «իրար գտնելու» համար։

Բայց նկատում եմ, որ զրուցակցիս դեմքը մեկեն պայծառանում է, ու մեղմ ժպտալով՝ սկսում է խոսել, ասես ինքն իր հետ.

— Դա պահ չէր, հավիտենություն էր՝ ամփոփված մի քանի րոպեի մեջ... այդպիսի իրադարձությունները ճիշտ հասկանալու համար պետք է ապրել, ինչպես ասում են «դերի մեջ մտնել»։ Այդ երջանկությունը ես ապրել եմ ՍՍՀՄ Գերագույն սովետի անցյալ տարվա վերջին նստաշրջանի բացման օրը...— Պավլուշա Մուրադովիչ, Ձեզ խնդրում են անցնել նախագահություն,— դիմելով ինձ, ասաց բարետես, խարտյաշ մազերով ռուս մի ընկեր։ Կողքս կանգնած մի խումբ դեպուտատներ, որոնց հետ նոր էի ծանոթացել, ուշադիր նայեցին ինձ (գուցե ինձ այդպես թվաց)։ Հուզմունքից սիրտս սկսեց բաբախել. Ստալինգրադի ճակատամարտում զոհված զանգեզուրցի լեռնագործ Մուրադի անունը հիշատակվում է Կրեմլի Մեծ պալատում... քայլերս ուղղում եմ դեպի նախագահություն։ Նախամուտքում ինձ հանձնեցին մի հեռագիր։ Նայեցի հետադարձ հասցեին ու ապրեցի այն պահը, ինչը համարում են հավիտենություն... Հեռագիրը Քաջարանից էր, իմ աշխատանքային ընկերներից... Դա զեկույց էր աշխատանքային հաղթանակի մասին։

Նայելով Պավլուշային, ես տեսնում էի, որ կոմունիստ էքսկավատորավարն այդ պահին էլ ակնհայտ երջանկություն էր ապրում։

Երկրի բարձրագույն մարմնի դեպուտատ ընտրվելու համար և ընտրվելուց առաջ

այդ մեծ պատիվը պետք է նվաճել: Նվաճել՝ տարիների, տասնամյակների վաստակով, ամբողջ կյանքով:

— Յանկացած մեծ ու փոքր գործի հաջողության և անհաջողության սկզբնապատճառը մարդն է, նրա աշխատանքը, կոնկրետ անհատը: Ամեն ինչ պայմանավորված է նրանով ու նրա աշխատանքով: Ես այդ հետևությանն եմ հանգել իմ կյանքի փորձով: Իմ խորին համոզմամբ մարդն աշխատանքի մեջ է ձևավորվում: Բերեմ մեր բրիգադի օրինակը: Յուրաքանչյուր ոք այստեղ համոզված է, որ իրեն կնկատեն, կգնահատեն, արածն անհատույց չի մնա: Լավ աշխատանքի արդար գնահատականը կոլեկտիվի ամեն մի անդամի մեջ հավատ է սերմանում ոչ միայն ազնիվ աշխատանքի, այլև արդարության նկատմամբ ընդհանրապես: Այն գիտակցությունը, որ քո աշխատանքով ոչ միայն բարիք ես ստեղծում, այլ նաև բարձրացնում ես հայրենի երկրի պատիվն ու հեղինակությունը, մարդու մեջ առաջ է բերում պատասխանատվության մեծ զգացում ժամանակի ու ժողովրդի հանդեպ... Ավելացնեմ նաև, որ մեզ մոտ լավ աշխատողը ոչ միայն խրախուսվում է բարոյապես, այլ նաև վարձատրվում է ըստ արժանվույն: Բրիգադի անդամների միջին աշխատավարձը կազմում է 500 ռուբլի: Բոլորն ապահովված են բնակարանով, շատերը տնամերձ այգիներ ունեն, անասուն են պահում: Վերջին տարիների ընթացքում արմատապես բարելավվել են բանվոր-ծառայողների կուլտուր-կենցաղային պայմանները: Վահանավանքում և Կարմրաքարում ունենք առողջարան-պրոֆիլակտորիում: Լրիվ լուծված է բանվոր-ծառայողների երեխաների մսուր-մանկապարտեզի հարցը: Քաջարանում աշխատող բանվորը ցանկության դեպքում կարող է հանգստանալ ու բուժվել հանրապետության և Միության առողջարաններում: Ասում եմ՝ ցանկության դեպքում, որովհետև բոլորը չէ, որ ուզում են հանգստանալու համար շրջանից դուրս գալ: Չէ՞ որ Ղափանն ու Քաջարանը բնության շատ գողտրիկ անկյուններ ունեն, որոնցից օգտվում են մեր լեռնագործները: Ընդհանուր առմամբ մեզ մոտ սոցիալական հարցերը վատ չեն լուծված և դրանց առաջիկայում ավելի մեծ ուշադրություն կնվիրվի: Բայց մենք չպետք է դատարկ երազողներ դառնանք: Սոցիալական, կուլտուրական, կենցաղային մեծ ու փոքր հարցերի լուծումը պահանջում է նյութական բազա, որն ստեղծվում է միայն ու միայն լարված աշխատանքով:

— ԼԵՌՆԱԳՈՐԾՆԵՐԸ ՈՒԺԵՂ, ԱՆԿՈՏՐՈՒՄ բնավորության տեր մարդիկ են:

Այս խոսքերը Պավլուշան ասում է ոչ առանց հպարտության: Բնավորության այդ գծերը մեկ կամ մի քանի մարդու ուժերով չես դաստիարակի: Դրանք ժառանգվում են սերնդե-սերունդ, հղկվում, մշակվում, անցնում մյուսին: Ծույլը, վախկոտը լեռնագործ չի դառնում, իսկ եթե պատահականորեն այդպիսի մեկը հայտնվում է նրանց շրջանում, շուտով համոզվում է, որ դա իր տեղը չէ:

Տարիների ընթացքում իրենց գործի իսկական վարպետներ Վերդի Արզանյանը, Սերգեյ Հարությունյանը, Արծրուն Առաքելյանը, Անուշավան Սարգսյանը, Ծամխոլ Բաղդասարյանը, Բաբկեն Խաչատրյանը երիտասարդության մեջ դաստիարակել են կոլեկտիվիզմի, փոխադարձ օգնության, ընդհանուր գործի համար պատասխանատվության, մասնագիտական հպարտության զգացում: **Անձնական օրինակի զորության** նկատմամբ Պավլուշան մի առանձին հավատ է տածում: Գուցե հենց այն պատճառով, որ իր՝ Պավլուշայի բնավորության, վարքագծի մեջ էլ շատ բան փոխառվել է լեռնագործների նախորդ սերունդներից:

— Ես սովորել եմ ոչ միայն անուն հանած վարպետներից: Ամեն մարդու մոտ էլ կան ընդօրինակման արժանի գծեր...

Տարիների ընթացքում կոմունիստ էքսկավատորավարը կամաց-կամաց սկսեց առաջ նայել, ընդօրինակածին ավելացնել «իրենը»: Ու հասավ այն պահը, երբ ուրիշներն սկսեցին սովորել նրանից: Լեռնագործների մոտ ամուր հաստատված սովորույթներից մեկն էլ դա է. այսօր քեզ են հոգատարությամբ շրջապատում, ամեն քայլափոխի հսկում, սովորեցնում, վաղը նույն բանը ինքդ պետք է անես երիտասարդների հանդեպ:

Ժառանգել լավը, ուսանելին, ժառանգել՝ նորովի օգտագործելու և զարգացնելու համար: Այս չգրված օրենքին հավատարիմ են մնացել Զանգեզուրի անվանի լեռնագործները՝ Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, էքսկավատորավար Արծրուն Առաքելյանը, սոցիալիս-



տական աշխատանքի հերոս, խոր փորման հաստոցավար Աշոտ Մելքոնյանը, ՍՍՀՄ իններորդ գումարման Գերագույն սովետի դեպուտատ Արկադի Ոսկանյանը, ՍՍՀՄ տասներորդ գումարման Գերագույն սովետի դեպուտատ Հովնան Իսրայելյանը: Նրանց մասին աշխատանքային ընկերներն ասում են. «Գետնի վրա ամուր են կանգնած»: Փոխաբերական այս արտահայտությունը պարունակում է և՛ կյանքի փորձ, և՛ մարդկային իմաստնություն, և՛ բարիք ստեղծելու կարողություն, աշխատասիրություն: Նրանք լավ գիտեն աշխատանքի արժեքը և այդ իմացությունը հետնորդներին հաղորդելու գործի կարևորությունը: Եվ, իրոք, ինչպես նկատել է մի գիտուն, «մենք նրա համար ենք հեռուն տեսնում, որ կանգնած ենք մեր նախորդների ուսերին»:

— Հաջողության հասնելու կարևոր գործոն է համերաշխ կոլեկտիվ ստեղծելը: Համերաշխ՝ բառիս լայն իմաստով. և՛ ձեռնարկության, և՛ արտադրամասի, և՛ բրիգադի մասշտաբով: Մարդը արձակուրդում եղած ժամանակ պետք է կարոտի իր կոլեկտիվին, նրա հետ հանդիպումը տոն համարի իր համար: Մեր բրիգադում 48 մարդ է աշխատում՝ տարբեր գյուղերից ու քաղաքներից եկած, նաև տարբեր ազգության: Հիմա նրանք բոլորն էլ իրենց քաջարանցիներ են համարում: Ոչ ոք չի կարող հիշել մի դեպք, երբ նրանցից որևէ մեկը մյուսի հետ գժտված լինի: Ընդհակառակն, աշխատանքում ու կենցաղում իրար փոխադարձ օգնելը, նեղ օրերին միմյանց թիկունք կանգնելը դարձել են կենցաղավարության պարտադիր կանոն:

Ժամանակակից լեռնահանքային արդյունաբերությունը արտադրությունների մի ամբողջ համալիր է, որտեղ հաջողության կարելի է հասնել միայն կոլեկտիվի ջանքերի մեծագույն լարման, տեխնիկական վերազինման, կադրերի մասնագիտական որակավորման չեշտակի բարձրացման շնորհիվ:

— Գնալով բարդանում է լեռնահանքային արդյունաբերության տեխնիկան,— առանց թաքցնելու մասնագիտական հպարտությունը, ասում է Պավլուշան,— առաջվա սակավազոր էքսկավատորների փոխարեն այժմ մեզ մոտ մուտք են գործել 6—8 խորանարդ մետր տարողությամբ հայրենական ու արտասահմանյան էքսկավատորներ: Նախապատրաստվում ենք ընդունելու ավելի հզոր մեքենաներ: Նույն վերազինումն է կատարվել նաև ավտոտնտեսությունում, ուր հիմա գերակշռողը 25—40 տոննա հզորության ավտոմեքենաներն են: Հասկանալի է, որ այդ մեքենաները պահանջում են մասնագիտական կատարելություն, խոր գիտելիքներ, նուրբ վերաբերմունք, ճշտապահություն: Թող զարմանալի չթվա «նուրբ վերաբերմունք» արտահայտությունը: Որքան կատարելագործվում, նրբանում են մեքենաներն ու սարքավորումները, այնքան բարձրանում է պահանջկոտությունը նրանց խնամքի նկատմամբ:

Չպետք է մոռանալ նաև, որ նոր տեխնիկայի համար հատույցը պետք է ավելի արագ ապահովվի: Ուրեմն՝ արագացման մասին խոսակցությունը կամպանիա չէ, այլ արմատական վերակառուցում՝ մասնագիտական ու հոգեբանական, պլանային ու կազմակերպչական: Այլ խոսքով, ինչպես կուսակցությունն է պահանջում արդի ժամանակաշրջանում, վերակառուցումը պետք է կատարվի կոնկրետ գործերում, ամենուր, ամեն ժամանակ: Դարձյալ անդրադառնանք մեր հանքի տեխնիկական վերազինման ու դրան համապատասխան մասնագետ կադրերի պատրաստման հարցին: Ի՞նչ արժեք ունի այն վարպետը, որը լավ գիտե միայն իր դարն ապրած «Ծկոդա» էքսկավատորը և չի կարողանում մասնագիտանալ նոր մեքենաների վրա: Առաջ այդպիսի վարպետին մեծ պահանջներ չէին ներկայացվում: Մտայնությունը գրեթե ամենուր նույնն էր. «Մարդը հասցրել է խորապես տիրապետել մի մեքենայի, որն իր ժամանակին համարվում էր այդ բնագավառի վերջին խոսքը, դա արդեն նվաճում է»: Այսօր այդպես մտածել չի կարելի: Ուրիշ կերպ ասեմ՝ մարդկային մի սերունդը պետք է փոփոխի ու շահագործի մեքենաների տասնյակ սերունդներ:

— Իսկ դա ինչի՞ց էր գալիս,— չկարողանալով զսպել հետաքրքրությունս, ընդհատում եմ Պավլուշային:

— Առաջ ապրում էինք օրվա հոգսերով, վաղվա մասին լրջորեն չէինք մտածում: Ծատ ջրեր հոսեցին, մինչև որ ըմբռնեցինք արագ զարգացման անհրաժեշտությունը: Մեր բրիգադում շատ ջանքեր են գործադրվում ժամանակի ոգուն համաքայլ ընթանալու համար: Երբ հայտնի է դառնում, որ ամիսներ հետո հանքը նոր էքսկավատոր է ստանալու, մենք համապատասխան վարպետ ենք գործուղում այն ձեռնարկությունը, որն արտադրում է նոր մեքենան: Հասկանալի է՝ այդ ընտրությունը կա-

տարում է հանքի տեխնիկական խորհուրդը: Երբեմն մեկի փոխարեն ուղարկում ենք 2—3 մարդ: Առիթը պետք է օգտագործել նոր տեխնիկային ավելի շատ մարդկանց ծանոթացնելու համար: Չեմ հիշում մի դեպք, երբ Քաջարան բերված որևէ նոր մեքենա պարապուրդ տա համապատասխան մասնագետ չլինելու պատճառով:

Հիմա մեզ մոտ, ամենուր վերակառուցում է գնում: Մենք՝ բանվորներս, ուրախ ենք, որ վերջապես, ինչպես ասում են, սառույցը տեղից շարժվեց, բայց արդյո՞ք ամեն ինչ է արվում այնպես, ինչպես ժամանակն է պահանջում: Վերցնենք թեկուզ շատ կարևոր ու հրատապ նշանակություն ունեցող՝ խնայողության հարցը: Սովետական պետությունը Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի ստեղծման ու զարգացման համար ոչինչ չի խնայել՝ կապիտալ ներդրումներ, տեխնիկա, նյութական արժեքներ, շինանյութեր, մեքենաներ... Սկզբնական շրջանում տեխնիկան օգտագործվում էր անխնա. փորձը պակաս էր, ժամանակը՝ սուղ: Ոմանք դրանից այն հետևությունն արին, թե այստեղ ամեն ինչ կարելի է. «Քաջարանը հարուստ է և նրան սազական չէ կոպեկների խնայողության հարց դնել»: Ցավալի է, որ այդպիսի մտայնությամբ մարդիկ կան նաև մեր օրերում, մեր կողքին:

Հարկավոր է վերջ տալ այդ մտայնությանը, վերջ տալ մեկընդմիշտ: Երկիրը, ճիշտ է, հարուստ է, և առաջին հերթին հարուստ է նրա ընդերքը: Դրա «իրեղեն» ապացույցներից մեկն էլ Գանձասարն է: Բայց չէ՞ որ նա էլ անսպառ չէ: Եվ, բացի այդ, խնդիրը միայն լեռնաշխարհի ընդերքի գանձերը հանելը չէ: Հարյուրամյակներ առաջ էլ մարդիկ Զանգեզուրի գանձառատ ընդերքից հանածոներ էին ստանում: Կարևորն այն է, որ դա արվի քիչ ծախսումներով, որ Քաջարանի և Ղափանի ընդերքից հանված պղինձն ու մոլիբդենը լինեն ամենաէժանը երկրում: Դրա համար բոլոր հնարավորությունները կան՝ հանածոները մոտ են երկրի մակերեսին, հանքավայրը հարուստ է, ձեռնարկությունը զինված է ժամանակակից տեխնիկայով, կիրառվում են տեխնոլոգիական առաջավոր մեթոդներ, մարդիկ դարձել են իրենց գործի իսկական վարպետներ: Այդ բոլորը հիմք է տալիս խնայել ամեն ինչում, հաշվի տակ վերցնել և՛ ամեն մի կիլոգրամ պայթուցիկ նյութը, և՛ ամեն մի գրամ քիմիական հակազդիչը, և՛ ամեն մի կիլովատ-ժամ էլեկտրաէներգիան:

Հաճախ կրկնում ենք. «Մենք երկրի տերերն ենք», բայց ի՞նչ տանտեր, եթե նա շռայլում է, եթե հաշվի չի առնում ամեն մի կոպեկը...

ԱՅՍՕՐ ՊԱՎԼՈՒՇԱ ԴԱՎԹՅԱՆԻՆ ԳԻՏԵՆ հանրապետությունում ու ամբողջ երկրում: Բայց նրան ավելի լավ գիտեն Քաջարանում, ուր նա 29 տարի անընդմեջ բրիգադ է ղեկավարում: Այդ ընթացքում նրա կոլեկտիվում երեք հարյուրից ավելի մարդ է աշխատել և գրեթե բոլորն էլ վարպետներ են դարձել: Դա խոսում է և՛ դաստիարակության՝ Պավլուշայի դպրոցի, և՛ մշակված ու յուրացված սովորույթների, և՛ բանվորական պատասխանատվության մասին:

— Մեր բրիգադն այժմ սերնդափոխություն է ապրում,— այս խոսքերը Պավլուշան ասում է գալիք օրվա նկատմամբ մտահոգությամբ:— Արդեն մոտ ապագայում գործի ողջ ծանրությունն իր ուսերին կվերցնի երիտասարդությունը: Ընդհանուր առմամբ մենք լավ երիտասարդներ շատ ունենք, որոնց հետ մեծ հույսեր ենք կապում: Օրինակ, էքսկավատորավարներ Սերգեյ Խաչատրյանը, Ռազմիկ Առաքելյանը, Մամիկոն Ավետիսյանը, հաստոցավար Արա Հարությունյանը... Նրանք արդեն ճանաչված մարդիկ են կոմբինատում, ոմանց մենք պատվավոր լեռնագործի կոչում ենք տվել, մի քանիսն էլ «հերթի» են սպասում:

— Երիտասարդությանը պետք է շատ ավելի վստահել, քան այժմ է արվում,— ոգևորված ասում է Պավլուշան: Եվ ոչ միայն նրա համար, որ մեր ապագան է, այլև նրա համար, որ ավելի համարձակ է, նախաձեռնող, զերծ պահպանողականությունից: Նախաձեռնելու և ստեղծագործելու ընթացքում երիտասարդին պետք է համակողմանի օգնել և այն էլ՝ ոչ միայն խորհուրդներով: Իմ կարծիքով, ամեն մի հասուն մարդու համար սա պետք է հաստատուն վարքագիծ լինի: Ընդհանուր առմամբ երիտասարդությունը մեզ մոտ դժգոհելու հիմքեր չունի: Նա շրջապատված է և՛ ավագ սերնդի, և՛ ղեկավար կազմակերպությունների ուշադրությամբ: Քաջարանում, օրինակ, երիտասարդության տրամադրության տակ դրված են մշակույթի հիանալի պալատ, սպորտդպրոց, միջնակարգ-մասնագիտական մի քանի հաստատություններ և, վերջապես, 5—6 տասնյակի չափ մասնագիտություններ ու դրանցից



ազատ օգտվելու հնարավորություններ: Այս ամենը լավ է, բայց վատն այն է, որ երբեմն մենք երիտասարդներին զրկում ենք «տեղական պայմանների համապատասխան» նախաձեռնություն ցուցաբերելու հնարավորությունից: Պատահում է այսպես. երիտասարդը հանդես է գալիս առաջին հայացքից անսովոր թվացող համարձակ մի նախաձեռնությամբ: Իսկույն հայտնվում են «քննադատներ» և օգնելու փոխարեն սկսում են ամեն կերպ խանգարել: Մի անգամ ականատես եղա այս առումով բնորոշ մի խոսակցության: Արտաքուստ ոչնչով աչքի չընկնող երիտասարդն ընդունելություն էր խնդրել մի ղեկավարի մոտ և նրան ներկայացրել արտադրության ինտենսիվացման հետ կապված հետաքրքիր առաջարկ: Պաշտոնատար անձը սկզբում լսում էր կարծես թե ուշադիր, բայց հետո այնպիսի դիրք ընդունեց, ասես նրան տանջում է ատամի ցավը: Նա այդ օրը սպանեց երիտասարդի եռանդը, նրա ստեղծագործելու ջիղը: Ամեն անգամ այսպիսի վերաբերմունքի հանդիպելիս ինքդ քեզ հարց ես տալիս. «Մարդն արդյո՞ք իր տեղումն է...»:

...Պատահում է նաև այսպես: Համարձակ, թերությունների նկատմամբ անհաշտ վերաբերմունք ունեցող երիտասարդին հաճախ ասում են. «Վերջ տուր քննադատությանդ: Միևնույն է, ոչնչի չես հասնի, ինչո՞ւ ես գլուխ ջարդում, անախորժությունների մեջ ընկնում...»:

Մեծերից լսվող այս խորհուրդը ոչ միայն ավելորդ, այլև վնասակար է, եզակի փաստերից արված նման հետևությունները երիտասարդին շեղում են ճիշտ ուղուց:

Իհարկե, ես այն կարծիքին չեմ, որ մեր իրականության մեջ թերություններ չկան: Կան և այն էլ շատ: Դրանց մի մասը գալիս է կադրերի և հատկապես ղեկավար կադրերի սխալ ընտրությունից: Ոչ ոք ղեկավարին ավելի լավ չգիտե, քան ենթակա անձինք: Բայց որևէ մեկին առաջ քաշելիս ամենից քիչ հաշվի են առնում կամ բոլորովին հաշվի չեն առնում տվյալ կոլեկտիվի կարծիքը: Եվ, ահա, մեկին վերադասը երաշխավորում է, մարդիկ հավատում են (եթե պետք է, նաև քվեարկում են), բայց կարճ ժամանակ անց պարզվում է, որ վերադասն էլ է սխալվել, իրենք էլ: Ղեկավարին նորից տեղափոխում են, իսկ հետևանքների համար ոչ ոք պատասխան չի տալիս:

Երիտասարդ կադրերի առաջքաշման հարցում մեզ մոտ գլխավոր ելակետային սկզբունքն այն է, որ նրանք իրենց մեջ ամուր պահեն բարոյական ու սոցիալական իդեալները: Նրանք, ովքեր ամեն ինչի մեջ անձնական շահ են տեսնում, իսկ այդպիսիներ, ցավոք, դեռ կան, արժանանում են մեր կոլեկտիվի մերժողական վերաբերմունքին: Բանվորական կոլեկտիվներում անողոք են այդպիսիների նկատմամբ, և դա դաստիարակության շատ կարևոր գործոն է:

Անկեղծ լինելու համար ասեմ, որ այժմ մեր հանքում և նույնիսկ իմ բրիգադում մարդիկ կան, որոնք ինձնից ամենևին էլ վատ չեն աշխատում, իսկ առանձին ամիսների ինձնից ավելի շատ արտադրանք են տալիս: Բայց զանազան խրախուսանքների ներկայացնելիս ղեկավարները, կոլեկտիվը նույնպես, ձեռնպահ են մնում: Պարզ է, սոսկ արտադրանքի քանակով չի սպառվում մարդու դրական բնութագիրը: Այստեղ հանգամանքներ շատ կան, որոնց մեջ կարևոր են համեստությունը, կոլեկտիվի նկատմամբ հարգալից վերաբերմունքը, բոլոր պարագաներում մարդկայինը պահպանելու կարողությունը և այլն:

ՄԵՐ ՕՐԵՐՈՒՄ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅՈՒՆ Է դարձել սովետների հնարավորությունների առավել արդյունավետ օգտագործումը, իսկ սովետի լիազորներկայացուցիչը նրա դեպուտատն է: Եվ չկա մի հարց՝ սոցիալական թե բարոյական, կենցաղային թե հասարակական, որը տվյալ սովետի դեպուտատին չվերաբերվի: Քաջարանի մշակույթի պալատի այն սենյակը, որի դռան վրա գրված է՝ «ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Պավլուշա Դավթյանի ընդունարան», արտաքուստ քիչ է տարբերվում մյուսներից: Բայց այստեղ, օրվա որոշակի ժամերի, միշտ եռուզեռ կա: Երկրի բարձրագույն մարմնի՝ դեպուտատի մոտ են գալիս բանվոր ու ծառայող, երիտասարդ ու տարեց, տղամարդ ու կին: Գալիս են խնդրանքով, օգնություն ստանալու համար, գալիս են, երբ կարիք ունեն պաշտպանության, իսկ հաճախ էլ՝ պարզապես խորհրդակցելու:

Լայն է հարցերի շրջանակը, որոնք հուզում են դեպուտատին, որոնցով զբաղվում է նա: Բնակարան և կենցաղ, առողջապահություն և առևտուր, հասարակական

տրամադրություն և բնության պահպանություն՝ այս բոլոր հարցերով էլ աշխատավորները մտնում են Պավլուշա Դավթյանի ընդունարանը, մտնում այն հավատով, որ այդ հարցը դառնալու է նաև դեպուտատի հոգսը:

— Ես այսպես եմ կարծում. եթե մարդը գալիս է ինձ մոտ ընդունելության, դա նախ և առաջ մեծ պատիվ է ինձ համար: Ինչ էլ լինի, քաղաքացին հեշտությամբ չի գնում ընդունելության, իսկ եթե արդեն դիմում է դրան, նշանակում է օգնության կարիք ունի: Ուրեմն, նրա այցը պարտավորեցնող է: Ուրեմն, նա պետք է գոհ գնա, եթե նույնիսկ հարցը չլուծվի: Ընդունելության մի քանի րոպեի ընթացքում կարելի է ամրապնդել հավատը լավի նկատմամբ, կարելի է նաև փշրել այդ հավատը:

Բանվոր դեպուտատի ընդունարանում հավատը չի փշրվում...

Մի խումբ աշխատավորներ, մի քիչ էլ վրդովված, դիմեցին Պավլուշային կարևոր հարցով: Քաջարանի «Թթու ջուր» կոչվող հանգստավայրը դուրս է մնացել արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների ուշադրությունից: Բնության այդ երբեմնի գեղատեսիլ անկյունը, «քեֆչիների» տրամադրությանը թողնված, վերածվել է աղբանոցի: Հարկավոր է տեր կանգնել, «Թթու ջրին» վերադարձնել նրա բարի համբավը:

Դեպուտատը տագնապ բարձրացրեց: Հարցի լուծմանը մասնակից դարձան քաղաքային սովետը, շինարարական տրեստի և պղնձամոլիբդենային կոմբինատի առանձին տեղամասեր: «Թթու ջրում» եռուզեռ սկսվեց, որի նպատակն էր վերականգնել բնության այս գողտրիկ անկյան երբեմնի հռչակը, նոր ուղղություն և նշանակություն տալ նրան, այն դարձնել աշխատավորների մասսայական հանգստի վայր:

Տեղական կազմակերպությունների հետ կապված խնդիր էր սա և համեմատաբար հեշտ լուծվեց: Բայց երբեմն ծագում են հարցեր, որոնց լուծումը, չնայած թվացող պարզությանը, կապված է լինում որոշակի դժվարությունների հետ: Ահա մի օրինակ: Բանվորներից մեկի երեխան հիվանդ էր: Անհրաժեշտ էր ձեռք բերել համապատասխան առողջարանային ուղեգիր: Ղափանի շրջանում դրանցից չեն ստացվում, իսկ հանրապետությունում ստացվածը մատների վրա կարելի է հաշվել: Տեղում ոչ-ոք օգնել չէր կարող: Դեպուտատը «չարաշահեց» իր դիրքը. ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի ժամանակ մոտեցավ միութենական առողջապահության մինիստրին և պատմեց այդ մասին: Շուտով Ղափանում ստացվեց «անվանական» ուղեգիրը:

Երբեմն հարկ է լինում նույն հարցով զբաղվել տևականորեն ու համառորեն: Հասունացել է Ղափանում պիոներների պալատ կառուցելու հարցը: Այդ մասին շատ է խոսվել ամբիոններից, այդ հարցով դեպուտատին շատ են դիմել ընտրողները: Երբ Դավթյանն այդ կապակցությամբ առաջին անգամ եղավ ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրությունում, նրան գրեթե մերժեցին: Անհրաժեշտ էին հաշվարկներ, փաստաթղթեր, հիմնավորումներ: Օգնության եկան կուսակցության Ղափանի շրջանային կոմիտեն և շրջսովետի գործկոմը: Առհասարակ այս մարմինների հետ բանվոր դեպուտատի կապը շատ սերտ է ու գործնական: Պավլուշան ամեն կերպ ձգտում է խելացիորեն օգտվել կուսակցական ու սովետական փորձառու աշխատողների խորհուրդներից, համագործակցել նրանց հետ ամենաբազմազան բնագավառներում: Հիմա արդեն ոչ ոք չի կասկածում. Ղափանը կունենա իր պիոներների պալատը, Քաջարանը՝ իր ծածկած շուկան:

— Հարցերի շրջանակը, որոնք հուզում են Պավլուշա Դավթյանին, հիրավի լայն են ու բազմազան,— ասում է ՀԿԿ Ղափանի շրջանային կոմիտեի առաջին քարտուղար Ռ. Ղոնյանը:— Աշխատավորական կոլեկտիվում թրծված, բանվորական անաղարտ խառնվածքով դեպուտատն ապրում է ոչ միայն հարազատ ձեռնարկության, կոլեկտիվի, արտադրության, այլև ամբողջ շրջանի, հանրապետության ու երկրի հոգսերով, ջանում է ամեն կերպ աջակցել մարդկանց: Կարելի է թվարկել շատ մարդկանց, շարունակում է շրջկոմի քարտուղարը, որոնց վրա հենվում են մեր առաջավոր ձեռնարկությունները ու տնտեսությունները, որոնց ստեղծագործ մտքով ու կարող ձեռքերով գրվում է մեր շրջանի տարեգրությունը... Այդ ցուցակում իր ընդգծված տողն ունի Պավլուշան: Որքան հասարակության մեջ շատ լինեն նման անհատներ, այնքան հեշտ կլուծվեն ժամանակի առաջ քաշած մեծ խնդիրները:

«ԻՐԵՆ ՀԱՐԱԶԱՏ, ՍՐՏԱՄՈՏ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ մարդը հանգստանում է»:



Սրանք Կոնստանտին Ֆեդինի խոսքերն են, որ հիշեցի, երբ Պավլուշայի ու նրա ընկերների հետ զրուցում էինք մասնագիտությունների մասին ընդհանրապես, նրա ընտրած մասնագիտության մասին՝ մասնավորապես: Կատակով մտքեր փոխանակեցինք, թե Պավլուշան, իբր, ոչ թե էքսկավատորավար է, այլ, ասենք, օդաչու, բժիշկ, ճարտարապետ, մանկավարժ՝ այն ամենը, ինչ երբևէ կարող էր ընտրած լինել Պավլուշան: Բայց ի վերջո եկանք մի ընդհանուր եզրակացության՝ Պավլուշան այն է, ինչ կա և, եթե հիշելու լինենք Ֆեդինի խոսքերը, Պավլուշան հանգստանում է միայն «իր» էքսկավատորի ղեկին, հարազատ կոլեկտիվում: Խոսք չկա, լավ «հանգիստ» է՝ ամեն մի հերթափոխի ընթացքում 1.500 անգամ էքսկավատորի շերեփը մխրճել պայթեցված ապարի մեջ, բարձրացնել ու թեքվել դեպի սպասող ավտոմեքենան: Այդպես՝ ամեն օր, ամբողջ տարին... Եթե հնարավոր լիներ 30 տարվա ընթացքում անվանի էքսկավատորավարի փորած ու բարձած հանքաքարը, հողն ու ապարը ի մի հավաքել, կստացվեր մի իսկական սար, հար և նման այն սարերին, որոնցով այնպե՜ս հարուստ է Զանգեզուրը: Այս խոլ ապառաժների վրա մարդու գործը կապված է մեծ դժվարությունների, որոշ իմաստով՝ նաև ռիսկի հետ: Բնությունն այստեղ անողոք է, տեղանքը՝ դժվարին: Այստեղ երկչոտներն անելիք չունեն:

— Տարօրինակ, անբացատրելի կապ կա այս լեռնաշխարհի «հիմքից շուռ եկած» անդունդների, երկնահաս գագաթների և այունեցու բնավորության միջև: Մարդն ու բնությունը՝ երկուսն էլ համառ, երկուսն էլ անզիջում, բայց իրար կապված....

Մասնագետներն ավելի լավ կարող են բացահայտել այն գաղտնիքները, որոնց շնորհիվ Պավլուշան և նրա աշխատանքային շատ ընկերներ կարողանում են այս դժվարին լեռնաշխարհում հնարավոր դարձնել անհնարինը, ամենօրյա նորմայի վերածել այն, ինչը ուրիշների համար հազվադեպ օրերի ռեկորդ-ցուցանիշ է:

— Մարդը պետք է սիրի իր մասնագիտությունը, այլապես աշխատանքը կդառնա ձանձրալի,— Պավլուշան մի պահ կանգնեց, զգացվում էր՝ խոսքը կիսատ է:— Կյանքում տարբեր մարդիկ են լինում: Ոմանք ավելի շատ աշխատում ու բարիք են ստեղծում, քան խոսում, ոմանք էլ ավելի շատ խոսում են, քան աշխատում: Ժողովուրդը սիրում է նրանց, ովքեր լռությամբ իրենց գործն են անում: Շատ բան պայմանավորված է նրանով, թե մարդն ինչպես է վերաբերվում իր մասնագիտությանը: Խիստ կարևոր է, որ ամեն մարդ անսխալ ընտրի իր մասնագիտությունը, իսկ եթե սրտովը չէ, երբեք չպետք է կամքին հակառակ գնա: Ամեն ոք կյանքում իր կոչումն ունի, պետք է անսխալ գտնել այդ կոչումը...

Էքսկավատորավար Պավլուշա Դավթյանը գտել է իր կոչումը: Եվ այդ կոչումն էլ նրան արժանացրել է բարձրագույն պարգևների. ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատի կուրծքը զարդարում են Աշխատանքային կարմիր դրոշի, «Պատվո նշան» շքանշանները, նա բազմիցս հաղթող է ճանաչվել համամիութենական և հանրապետական սոցմրցության մեջ, ընտրվել կուսակցական, սովետական ղեկավար մարմինների կազմում...

Զրույցի ժամանակ մտածում էի. «Արդյոք այդքանը շատ չէ՞ մի մարդու համար»: Եվ, որպես հին բարեկամի, ցանկացա կիսվել հետը:

— Այդ ամենից գլուխդ չի՞ պտտվում,— հարցրի նրան:

Մի պահ լռեց, ապա ժպտաց ու ասաց.

— Այդ հարցը ուրիշներն էլ են տվել: Կարող եմ վստահ ասել՝ ո՛չ, չի պտտվում: Եվ գիտե՞ք ինչու: Էքսկավատորը թույլ չի տալիս: Ամեն անգամ, երբ մտնում եմ մեքենայի խցիկը, ինձ համար ամեն ինչ սկսվում է նորից: Դեմս տեսնում եմ կամակոր լեռը, որի հետ պիտի սկսեմ իմ ամենօրյա մաքառումը: Ուզում եմ ասել՝ այսօր էլ իմ աշխատանքին նայում եմ նույն դիրքից, ինչ տարիներ առաջ:

Ամեն օր՝ նույն պատասխանատվությամբ, ահա աշխատավոր մարդու կյանքի նշանաբանը:

# ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻ ՀԱՎԱՏԱՄՔԸ

**Վ. ՅԱԶՈՒՎՅԱՆ**
*ՀԿԿ Սպանդարյանի շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչի տեղակալ, քաղլուսկաբինետի վարիչ*

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ վիճակագրական վարչության կուսկազմակերպության քաղաքական լուսավորության ցանցի գիտական կոմունիզմի դպրոցի ունկնդիրները այդ օրը քննարկում էին երկրի սոցիալ-տնտեսական զարգացման բեկումնային ժամանակաշրջանի՝ տասներկուերորդ հնգամյակի պրոբլեմները: Պրոպագանդիստը՝ վարչության նախագահի առաջին տեղակալ Ռ. Թարջիմանովը, հանգամանորեն ներկայացնում է հնգամյակի հիմնական ուղղությունները, պատմում նրա պատմական նշանակության մասին: Նա նշում է, որ ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդիրը, ինչպես սահմանել է ՍՄԿԿ XXVII համագումարը, գիտատեխնիկական վերազինման ու վերակառուցման, ստեղծված արտադրական պոտենցիալի ինտենսիվ օգտագործման, կառավարման սիստեմի, տնտեսական մեխանիզմի կատարելագործման բազայի վրա էկոնոմիկայի զարգացման տեմպերի և արդյունավետության բարձրացումն է և այդ հիման վրա սովետական ժողովրդի բարեկեցության հետագա վերելքի ապահովումը: Հիշատակվում են բազմաթիվ ցուցանիշներ, թվեր և փաստեր: Պրոպագանդիստը ձգտում է յուրաքանչյուր ունկնդրի օգնել՝ գիտակցելու, որ նոր հնգամյակը խոշոր քայլ է ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած տնտեսական ու սոցիալական քաղաքականության իրականացման գործում, որը նպատակամղված է յուրաքանչյուր ճյուղի, քաղաքի ու շրջանի, հանրապետության, ամբողջ երկրի ժողովրդատնտեսական համալիրի և ընդհանուր առմամբ հասարակության հետագա զարգացման արագացմանը: Ամեն մի աշխատավոր պետք է լինի այդ ծրագրի իրականացման ակտիվ մասնակիցը, իր աշխատատեղում կոնկրետ, անձնական ավանդ ներդնի ընդհանուր գործում:

Ունկնդիրների լրացումներն ու հարցադրումներն առավել հետաքրքրություն և աշխուժություն են մտցնում պարապմունքում: Պրոպագանդիստն ամփոփում է նյութը: Նրա պարզ ու մատչելի, թեման ամբողջովին ընդգրկող խոսքը համակում է լսարանին: Նա պարզաբանում է ունկնդիրների բարձրացրած բոլոր հարցերը, վերջում մեթոդական ցուցումներ, կոնկրետ հանձնարարություններ տալիս ունկնդիրներին, առաջադրում հաջորդ պարապմունքի պլանը:

Այս քաղդպրոցի գործունեությանը բնորոշ է յուրաքանչյուր թեմայի տեսական հիմունքների խոր ուսումնասիրության և առաջադրված հարցերի ու պրոբլեմների իրականացման ուղիների որոնումը: Դա են հաստատում անցած ուսումնական տարվա բեղմնավոր աշխատանքի արդյունքները, որի հիմնական բովանդակությունը ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերն էին, կուսակցության, ժողովրդի, սովետական մարդկանց գործունեությունը համագումարի որոշումների իրականացման, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու գլխավոր գծի կենսագործման համար:



Կանոնավոր անցկացված պարապմունքների ընթացքում պրոպագանդիստի հիմնական խնդիրն է եղել լիովին օգտագործել կուսակցության ծրագրի, ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման, համագումարի որոշումների գաղափարական հարստությունը՝ այն նպատակամղելով ունկնդիրների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորմանը, քաղաքական կուլտուրայի, աշխատանքային և սոցիալական ակտիվության բարձրացմանը:

Ավելի քան քսան տարի է, ինչ պրոպագանդիստ Ռ. Թարջիմանովն իր գիտելիքները, փորձն ու հմտությունը սիրով ու պատասխանատվության բարձր զգացումով է հաղորդում կոլեկտիվի անդամներին: Նա աշխատում է անձնական ստեղծագործական պլանով, ուսումնական ամբողջ պրոցեսը, կուսակցության համագումարի փաստաթղթերի պրոպագանդումը և ուսումնասիրությունը սերտորեն շաղկապում քաղաքական ու տնտեսական հրատապ խնդիրների լուծման հետ՝ հաշվի առնելով ունկնդիրների նախասիրություններն ու ցանկությունները, այն պրոբլեմներն ու հարցադրումները, որոնք անհրաժեշտ են թեման ուսումնասիրելու, պարապմունքը նպատակասլաց և բովանդակալից անցկացնելու համար: Պրոպագանդիստը լավ գիտե յուրաքանչյուր ունկնդրի հակումները, ունակություններն ու կարողությունները և գործն այնպես է կազմակերպում, որ ամեն մի պարապմունք խոր հետք թողնի, նըպաստի նրա գիտելիքների հարստացմանն ու խորացմանը:

Պրոպագանդիստը լավ է պատկերացնում, որ քաղաքական ուսուցման մեթոդաբանական հիմքը մարքսիզմ-լենինիզմն է՝ որպես կենդանի զարգացող ուսմունք, գործողության ճշմարիտ ուղեցույց: Նա պարապմունքների ընթացքում լայնորեն է օգտագործում հատկապես լենինյան տեսական ժառանգությունը, ՍՄԿԿ պատմական փորձը, որը կուսակցության և ժողովրդի անգնահատելի սեփականությունն է, ունկընդիրներին հիշեցնում լենինյան այն պատգամը, որ «Միայն նա է արժանի կուսակցության անդամի... կոչմանը, ով ուշի-ուշով ուսումնասիրում, խորհում և ինքնուրույն կերպով որոշում է իր կուսակցության հարցերն ու **բախտը**» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 23, էջ 90):

Պրոպագանդիստը մշտապես կատարելագործում է իր աշխատանքի ձևերը: Նա հանձնարարելի ուշադրություն է նվիրում գրքի վրա կատարվող աշխատանքին, հանձնարարվող նյութի կոնսպեկտավորման մեթոդիկայի յուրացմանը, ունկնդիրներին ծանոթացնում տվյալ թեմայի վերաբերյալ գրականության ցանկին, սկզբնաղբյուրներին, միկրոտապես օգտագործում տարբեր բնույթի դիդակտիկ նյութեր (քարտեզներ, փաստաթղթերի ֆիլմեր, հազվագյուտ հրատարակություններ, ձայնագրություններ, պատճեններ և այլն):

Ունկնդիրների ակտիվությունը բարձրացնելու նպատակով նա կիրառում է բանավեճի, ակտիվ զրույցի մեթոդը, սովորեցնում քաղաքական կրթության և ինքնակրթության ձևերը, հանձնարարում պատրաստել զեկուցումներ, թեզիսներ, ռեֆերատներ: Պարապմունքներում մի քանի անգամ ռեֆերատներով հանդես են եկել ունկնդիրներ Ս. Հախումյանը, Վ. Մագաուզյանը, Ի. Մարտիրոսովան և ուրիշներ: Վերջին շրջանում հաճախ են կազմակերպվում «գործնական խաղեր», որոնց նկատմամբ առանձնապես մեծ հետաքրքրություն են դրսևորում ունկնդիրներ Զ. Աղաջանյանը, Ա. Ղազարյանը: Առանձին պարապմունքներ անցկացվում են ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում, քաղաքի թանգարաններում:

Ուսուցման ակտիվ ձևերի օգտագործումը մեծապես նպաստում է պարապմունքների արդյունավետության, ունկնդիրների ակտիվության բարձրացմանը, կյանքի, գործնական խնդիրների հետ ուսուցման կապի ամրապնդմանը:

Դպրոցում ընդգրկված են 19 ունկնդիրներ, որոնցից 17-ը ՍՄԿԿ անդամ են: Նրանք հիմնականում վարչության բաժինների վարիչներ են և ունեն բարձրագույն կրթություն:

Պրոպագանդիստը լավատեղյակ է նրանցից յուրաքանչյուրի կյանքին, աշխատանքին, հաջողություններին ու դժվարություններին, հաղորդակից է նրանց հոգսերին, անգամ հետաքրքրվում է վերջիններիս երեխաների դաստիարակության հար-

ցերով: Այս ամենը նրան հնարավորություն է տալիս ավելի ակտիվորեն ներգործել լսարանի վրա, ամբողջ պարապմունքը, ուսումնասիրվող թեման դարձնել պարզ ու մատչելի: Իր՝ պրոպագանդիստի, անձնական օրինակն էլ յուրովի է նպաստում առաջադրված խնդրի իրագործմանը. աշխատանքում խիստ հետևողական է ու պահանջկոտ՝ ինչպես իր, այնպես էլ աշխատանքային ընկերների նկատմամբ: Այսպես, օրինակ, ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունն ուսումնասիրելիս պրոպագանդիստը հանդես եկավ ամփոփիչ հարցերով: Ունկնդիրներ Մ. Արամյանը, Ս. Մուսոյանը, Վ. Օրցիևան, Է. Ծիշմանյանը, Ռ. Աթանեսյանը և ուրիշներ, որոնք բարեխղճորեն էին նախապատրաստվել պարապմունքին, սպառիչ պատասխաններ տվեցին առաջադրված հարցերին: Ունկնդիրների ուշադրությանն արժանացան հատկապես սովետական մարդկանց բարեկեցության, աշխատանքի և կյանքի պայմանների բարելավման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման հիման վրա աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման, աշխարհում կայուն խաղաղության պահպանման, գիտության, կուլտուրայի անշեղ վերելքի ապահովման վերաբերյալ ծրագրում պարունակվող դրույթները:

Աշխույժ, գործարար քննարկման պայմաններում են անցել ՍՄԿԿ կանոնադրության փոփոխություններին, ՍՍՀՄ սոցիալ-տնտեսական զարգացման 1986—1990 թթ. և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններին նվիրված պարապմունքները:

Պրոպագանդիստը նոր ուսումնական տարում գլխավոր ուշադրությունը կենտրոնացնում է հիմնարար պրոբլեմի՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ստրատեգիայի ուսումնասիրման վրա: Նա յուրաքանչյուր ունկնդրի գիտակցությանն է հասցնում այն ճշմարտությունը, որ հենց այստեղ է գտնվում մեր բոլոր՝ մերձակա ու հեռանկարային, տնտեսական ու սոցիալական, քաղաքական ու գաղափարախոսական, ներքին և արտաքին խնդիրների լուծման բանալին, որ միայն արագացման ճանապարհին կարելի է հասնել մեր հասարակության նոր, որակական վիճակի:

Դպրոցի ունկնդիրների աշխատանքային և հասարակական գործունեությունը ցույց է տալիս, թե պրոպագանդիստի բանավոր խոսքը ինչպես է վերածվում կոնկրետ գործի, նպաստում նրանց հասարակական ակտիվության բարձրացմանը: Նրանք բոլորն էլ ունեն մշտական կամ ժամանակավոր հանձնարարություններ, բարեխիղճ աշխատողներ են, շատերը պարգևատրված են շքանշաններով ու մեդալներով:

Ռ. Թարջիմանովի երկարամյա պրոպագանդիստական աշխատանքը տվել է իր դրական արդյունքը: Ունկնդիրների հետ տարվող նպատակային աշխատանքը մեծապես նպաստել է նրանց կողմից ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի տնտեսագիտական վերլուծության թեմատիկայի ընդլայնմանը և հաշվետվական օբյեկտներում կատարվող ստուգումների արդյունավետության բարձրացմանը: Պարապմունքների ընթացքում արտադրական խնդիրների հետ առնչվող հարցերի քննարկման շնորհիվ վարչության արդյունաբերության, շինարարության, կապի և տրանսպորտի բաժիններում սկսել են կիրառվել աշխատանքի կազմակերպման նոր ձևեր ու մեթոդներ:

Աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում ունեցած ծառայությունների և պրոպագանդիստական ակտիվ աշխատանքի համար պրոպագանդիստ Ռ. Թարջիմանովն արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի Լենինյան պատվոգրի: Նրա պրոպագանդիստական աշխատանքի փորձը հատուկ քննարկման հարց է դարձել ՀԿԿ Սպանդարյանի շրջկոմի բյուրոյում, որը հանձնարարել է այն խորապես ուսումնասիրել և լայնորեն տարածել շրջանի մյուս կուսակցական կազմակերպություններում:

Ռ. Թարջիմանովը գաղափարապես զինված կոմունիստ է՝ խոր հավատով ու համոզմունքով լեցուն մարքսիզմ-լենինիզմի գաղափարների, կուսակցության, մեծ Լենինի գործի հաղթանակի նկատմամբ: Եվ այդ ջերմ հավատը նա սիրով, հետևողականորեն և հմտորեն հաղորդում է ունկնդիրներին: Նա սիրում է պրոպագանդիստի դժվարին, բայց պատվավոր գործը: Ազատ ժամանակի զգալի մասը անցկացնում է վարչության գրադարանում՝ հարստացնելով իր գաղափարական-քաղաքական գիտելիքները: Օգտվելով թերթերից, ամսագրերից, ձեռնարկներից, ուսումնասիրելով մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, համագումարյան փաստաթղթերը՝ նա յուրաքանչյուր թեմային համապատասխան հարուստ նյութեր է քաղում, խորությամբ և բազմակողմանիորեն նախապատրաստվում պարապմունքին: Պրոպագանդիստը հաճախ է դիմում հանրապետական քաղլուստան, Սպանդարյանի կուսշրջկոմի քաղլուսկաբինետի օգնությանը, ստանում անհրաժեշտ խորհուրդներ, հետևվում ռադիոյով և հեռուստատեսությամբ տրվող հաղորդումներին, մասնակցում կազմակերպվող սեմինարներին:

Պրոպագանդիստի աշխատանքի հաջողությունը արդյունք է նաև այն բանի, որ կուսակցական կազմակերպությունը մշտապես հոգ է տանում կոլեկտիվի անդամների գաղափարական ու քաղաքական դաստիարակության մասին, պարբերաբար քննարկում գաղափարախոսական աշխատողների հաշվետվությունները ու ինֆորմացիաները, ցույց տալիս անհրաժեշտ մեթոդական օգնություն:

Դրա լավագույն վկայություններից է ունկնդիրների հասարակական-քաղաքական պրակտիկայի անցկացումը: Սկզբնական կուսկազմակերպությունը լուրջ ուշադրություն է նվիրում նաև պրոպագանդիստական կադրերի ատեստավորման կազմակերպմանը:

Այս բնութագրումը բավական է՝ ներկայացնելու մեր կուսակցության գաղափարախոսական ճակատի ակտիվ աշխատողներից մեկին՝ Ռ. Թարջիմանովին, որն իր անձնվեր աշխատանքի շնորհիվ արժանացել է ինչպես հարազատ կոլեկտիվի, այնպես էլ գաղափարախոսական ակտիվի հարգանքին: Նրա փորձի ուսումնասիրությունն ու տարածումը կնպաստեն կոմունիստների մարքս-լենինյան ուսուցման ձևերի և մեթոդների կատարելագործմանը, ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերի խոր ուսումնասիրմանը:

---

# ԼԵՆԻՆՅԱՆ ԳՎԱՐԴԻԱՅԻ ՄԱՐՏԻԿԸ

(Ա. Բ. ԿԱՐԻՆՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



**ՄԵԾ ԼԵՆԻՆԻ ՀԱՎԱՏԱՐԻՄ** աշակերտ, Ստեփան Շահումյանի զինակից, ռուսաստանյան երեք հեղափոխությունների մասնակից, անվեհեր պրավդիստ-հրապարակախոս, Բաքվի հերոսական կոմունայի արդարադատության ժողկոմ, Սովետական Հայաստանի և Անդրկովկասյան Ֆեդերացիայի ականավոր կուսակցական ու պետական գործիչ՝ ահա Արտաշես Բալասիի Կարինյանի (Գաբրիելյանի) կյանքի ընքանչելի ուղու ամենաամփոփ բնութագիրը:

Նա ծնվել է 1886 թ. նոյեմբերի 24-ին, Անդրկովկասի պրոլետարական կենտրոնում՝ Բաքվում: Հայրը Լեռնային Ղարաբաղի Շուշի քաղաքից էր և աշխատում էր նավթահանքերում: Մայրը՝ Տիգրանուհին, Վրթանես Փափազյանի քույրն էր և մեծ ազդեցություն է գործել որդու վրա՝ տոգորելով նրան ընթերցասիրությամբ: Բաքվում Կարինյանն անցկացրեց մանկությունն ու պատանեկությունը, սովորեց գիմնազիայում: 1906 թ. ընդունվեց Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը և այն ավարտեց 1910 թվականին:

Բանվորական միջավայրը, նավթագործների մասսայական գործադուլները, հատկապես 1904 թ. գործադուլը, մայիսմեկյան ցույցերը և այլն պատանի Կարինյանի վրա հեղափոխականացնող ազդեցություն ունեցան. վաղ հասակից նա սկսեց իր հասարակական-քաղաքական գործունեությունը և, աներեր կերպով ընտրելով հեղափոխականի ուղին, մեծ ու պանծալի ճանապարհ անցավ:

Դեռ գիմնազիայում ուսանելու տարիներին Կարինյանը խմբագրում ու հեկտոգրաֆով հրատարակում է «Ձայն» հայերեն և «Նաբատ» ռուսերեն անլեգալ հանդեսները: Նա դառնում է հեղափոխական պրոպագանդիստ, ընդհատակյա գրական խմբակի ղեկավար: 1906 թվականին «Բրուտ» կեղծանվամբ հրատարակում է «Գրականություն և կյանք» գրական-հրապարակախոսական գրքույկը՝ նվիրված Մաքսիմ Գորկուն: Հետագայում Կարինյանը բազմիցս դիմել է «հեղափոխության մրրկահավի» ստեղծագործություններին՝ բարձր գնահատելով և պրոպագանդելով դրանց հեղափոխական գաղափարները:

1906 թ. սկսած Կարինյանը հանդես է գալիս բոլշևիկյան մամուլում: Թիֆլիսում առաջին բոլշևիկյան լեգալ հայկական «Կայծ» թերթը 1906 թ. Լևոն Բրուտենցի կեղծանվան տակ տպագրեց Կարինյանի «Մեր նորագույն անարխիստների մասին» հոդվածը: Հեղինակը համարձակորեն հանդես էր գալիս էսէռների, անարխիստների, դաշնակների և հակամարքսիստական այլ հոսանքների դեմ:

1907 թ. Կարինյանն անձամբ ծանոթանում է ականավոր լենինյան Ստեփան Շահումյանի հետ: Ս. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Պ. Ջափարիձեի, Վ. Կասպարովի, Լ. Կնունյանցի (Բոգդան Կնունյանցի եղբոր) և բոլշևիկյան այլ գործիչների հետ սերտ մերձեցումը վճռորոշ նշանակություն ունեցավ Արտաշես Կարինյանի կյանքում և նրա մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման գործում: Շահումյանի անմիջական ազդեցության ներքո Կարինյանը մերկացրեց հայ «սպեցիֆիկներին», Լենինի բնորոշմամբ՝ այդ բունդական կրեատուրային, հայկական իրականության մեջ պրոպագանդեց լենինյան գաղափարները: Հատկանշական է, որ այն ժամանակ, երբ ռուսաստանյան առաջին հեղափոխության վայրէջքի և ցարիզմի դաժան հալածանքների պայմաններում սոցիալ-դեմոկրատ մտավորականների, հատկապես մենշևիկների մի մասը հեռացավ հեղափոխությունից ու կուսակցության մեջ գրավեց լիկվիդատորական դիրքեր, հենց այդ ժամանակ՝ 1907 թ., Ա. Կարինյանը Բաքվում դարձավ բոլշևիկյան կուսակցության անդամ, համոզված լենինյան և իր ողջ կյանքը նվիրեց սոցիալական ու ազգային ազատության համար ժողովրդի մղած ծանր պայքարին:

1907 թ. հոկտեմբերի 30-ին Կարինյանը կովկասցի ուսանողների խմբի կազմում (Սարգիս Լուկաշին (Սրապիոնյան), Շալվա Էլիավա, Սերգեյ Քավթարաձե և ուրիշներ՝ թվով 20—25 մարդ) մասնակցում է կուսակցության առաջնորդ Լենինի հետ հանդիպմանը՝ Տերիոկիի (Ֆինլանդիա) հայտնի ժողովին, որը կազմակերպվել էր Պետերբուրգի բոլշևիկյան կոմիտեի կողմից: Այստեղ նա առաջին անգամ ունկնդրում է Լենինին, լսում ընթացիկ մոմենտի մասին նրա ելույթը, որն անջնջելի հետք է թողնում բոլոր ներկաների վրա: «Մենք՝ դեռևս երիտասարդ հեղափոխական ռոմանտիկներս,— հետագայում գրել է Ա. Կարինյանը,— փափագում էինք տեսնել պրոլետարիատի անհողդողդ առաջնորդին և լսել նրա կենդանի խոսքը: Մոտ երեք ժամ խոսեց Վ. Ի. Լենինը, ավելի ճիշտ՝ զրուցեց, քանի որ նա անընդհատ հարցեր էր տալիս ու ինքն էլ պատասխանում: Պատասխանները հիմնված էին փաստերի, թվերի վրա, դիալեկտիկական զարգացման տրամաբանության վրա... Այո, հեղափոխությունն անխուսափելի է: Այն չի ջախջախվել, այլ կրել է ժամանակավոր պարտություն, այն աճում է, ամրապնդվում, որպեսզի վերածվի ավելի հզոր ալիքի»: Կարինյանը սովորում էր Լենինից ու նրա զինակիցներից: Հանդես գալով Բաքվի բանվորների առջև, նա պրոպագանդում էր լենինյան միտքն այն մասին, որ առջևում հեղափոխական նոր փոթորիկներն են:

1905—1907 թթ. հեղափոխության պարտությունից հետո բոլշևիկները, բոլոր ուղղություններով պայքարելով վրա հասած ծանր ռեակցիայի դեմ, մեծ ուշադրություն էին հատկացնում հոռետեսական տրամադրություններին, գաղափարախոսության ոլորտում նկատվող անկումայնությանը, ուժգնացող շովինիզմին ու բուրժուական նացիոնալիզմին հակահարված տալուն: Այդ դժվարին պայքարում Կարինյանը բոլշևիկների առաջավոր գծում էր: Նա հանդես էր գալիս բոլշևիկյան մամուլում, ամենաակտիվ մասնակցություն ունենում պրակտիկ հեղափոխական աշխատանքին, անդադրում պայքարում հայ, ադրբեջանցի, վրացի, կովկասյան բոլոր ազգությունների աշխատավորների ինտերնացիոնալ համախմբվածության համար:

Պետերբուրգից Կարինյանը գալիս է Բաքու, ընդհատակից ղեկավարում Բիբի-Հեյբաթի, Բալախանիի, Սև քաղաքի և Բաքվի մյուս շրջանների բանվոր պրոպագանդիստների խմբակները: Շահումյանի և Սպանդարյանի հանձնարարությամբ «Բակինսկի ռաբոչի» բոլշևիկյան թերթը իր երկու համարներում 1908 թ. տպագրում է Կարինյանի «Սինդիկալիստները և քաղաքական պայքարը» կարևոր հոդվածը:

Մարքսիզմի տեսական պրոբլեմները լուսաբանելու և բուրժուական նացիոնալիզմը մերկացնելու նպատակով 1911 թվականին Շահումյանի առաջարկով ստեղծվում է «Նոր խոսք» հայկական գրական-հասարակական ամսագիրը: Կարինյանը դրա պատասխանատու քարտուղարն էր ու խմբագրական կոլեգիայի անդամը, իսկ Շահումյանի ձերբակալությունից հետո՝ շուտով նաև փաստական խմբագիրը:

Նա կապ է հաստատում բանտի հետ և Շահումյանի հանձնարարությամբ տպագրում մի ամբողջ շարք հոդվածներ ու գրախոսություններ, որոնք ներդրում էին հայկական մարքսիստական գրականության մեջ: Դա վկայում է այն մեծ վստահության մասին, որ Շահումյանը տածում էր նրա նկատմամբ: Այդ շրջանում բանվոր պրոպագանդիստների խմբակների պարապմունքներում Կարինյանը մտերմանում է հիանալի բանվոր-բոլշևիկ Քազի-Մամեդի հետ, որի կենսագրությունը իր մի այլ ընկերոջ՝ Բաքվի կոմունայի ղեկավարներից Մեշադի Ազիզբեկովի կենսագրության հետ միասին հետագայում՝ 1919 թ. տպագրում է հայերեն առանձին գրքույկով: Արտաշես Կարինյանը իր ողջ էությամբ միշտ եղել է բոլշևիկ-ինտերնացիոնալիստ:

Կարինյանի կյանքի ու գործունեության մեջ միշտ որոշիչը եղել են լենինյան գաղափարները: Պետերբուրգում և Բաքվում նա հետևողականորեն մերկացնում էր մենշևիկ-լիկվիդատորներին, իրականացնում հեղափոխական ուժերի համախմբման լենինյան տակտիկան: Կարինյանը աներեր կերպով լենինյան դիրքերում մնաց նաև 1912 թ. Պրագայի կոնֆերանսից հետո, երբ բոլշևիկները կազմակերպորեն ձևավորեցին իրենց ինքնուրույն կուսակցությունը: Ցարական պահնորդությունը չէր կարող չնկատել այդ ամենը և Բաքվի նավթագործ բանվորների համընդհանուր գործադուլի ակտիվ նախապատրաստման համար մի խումբ բանվորների հետ մեկտեղ ձերբակալեց և նրան ու հինգ տարով արտաքսեց Ցարիցին: Բանտն ու աքսորը չընկճեցին հավատարիմ լենինյանին, որը, մեկնելով Պետրոգրադ, շարունակում է կուսակցական աշխատանքը:

Կարինյանը ակտիվ պրավդիստ էր. 1913-ից սկսած՝ նա «Պրավդայում» տպագրել է մի շարք հոդվածներ ու գրախոսություններ, մասնավորապես պրոլետարական գրողների առաջին ժողովածուի, Մաքսիմ Գորկու պատմվածքների մասին, Ա. Բիբիկի «Դեպի լայն ճանապարհ» գրքի մասին, ուր արտացոլվում էին լիկվիդատորական տրամադրություններ և այլն: Առաջին համաշխարհային պատերազմն սկսվելուց հետո Կարինյանը կուսակցական մամուլում հանդես է գալիս նրա իմպերիալիստական էության մերկացմամբ, պատերազմի, խաղաղության ու հեղափոխության լենինյան տեսության ու տակտիկայի պրոպագանդմամբ: 1915 թ. նա աշխատակցում է Թիֆլիսում հրատարակվող «Պայքար» սոցիալ-դեմոկրատական հայկական թերթին:

Արտաշես Կարինյանը Պետրոգրադում գործուն մասնակցություն է ունենում 1917 թ. փետրվարյան հեղափոխությանը: Ապրիլի 3-ին՝ էմիգրացիայից Լենինի Ռուսաստան վերադառնալու օրը, Պետրոգրադի Ֆինլանդական կայարանում Ն. Պոդբելսկու, Ս. Բոգդատևի, Ս. Լուկաշինի և առաջնորդին դիմավորող մյուս բոլշևիկների թվում էր նաև Ա. Կարինյանը: Նա լսել է Լենինի պատմական ելույթը, որով սոցիալիստական հեղափոխության կոչ էր արվում: «Իմանալով, որ գալիս է Վ. Ի. Լենինը,— իր հուշերում գրել է Կարինյանը,— մենք գնացինք Ֆինլանդական կայարանի հրապարակ և նորից տեսանք Լենինին, լսեցինք նրա բոցաշունչ ճառը: Հեղափոխական բանվորների, զինվորների, նավաստիների հետ առաջնորդի այդ հանդիպումը ցնցող տպավորություն գործեց մեզ վրա»: Հաջորդ օրը Կարինյանը Տավրիկյան պալատում լսում է նաև Ապրիլյան թեզիսների մասին Վ. Ի. Լենինի՝ երկու ժամ տևած զեկուցումը:

1917 թ. սեպտեմբերին Կարինյանը, որպես Բաքվի կազմակերպության ներկայացուցիչ, բոլշևիկյան ֆրակցիայի 136 պատգամավորների կազմում մասնակցում է Ժամանակավոր կառավարության կողմից գումարված Դեմոկրատական խորհրդակցության աշխատանքին: Հոկտեմբերին նա արդեն Բաքվում էր: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո բոլշևիկ-լենինյանի կյանքում նոր փուլ է սկսվում՝ հանուն Բաքվի կոմունայի, Անդրկովկասում Հոկտեմբերի հաղթանակի պայքարի փուլը: Շահումյանի և Ջափարիձեի առաջարկով Կարինյանը նշանակվում է «Բաքվի սովետի տեղեկագրերի» խմբագիր. նա Բաքվի խորհրդի ու նրա գործադիր կոմիտեի անդամ էր, իսկ 1918 թ. ապրիլից՝ նաև Բաքվի կոմունայի արդարադատության ժողկոմ:

Բաքվում սովետական իշխանության ժամանակավոր անկումից հետո Կարինյանը, կյանքը մեծ վտանգի ենթարկելով, կարողանում է դուրս գալ քաղաքից: Քաղաքացիական կռիվների տարիներին նա Կովկասի շատ կոմունիստների թվում աշխատում է ՌՍՖՍՀ Ազգությունների ժողկոմում, եղել է «Կոմունիստ» ամսագրի և «Կարմիր դրոշակ» (հայերեն) լրագրի



խմբագիրը, «Հյուսիսային Կովկաս» ագիտացիոն-հրահանգչական գնացքով մեկնել է սպիտակգվարդիականներից ազատագրված Կաբարդինա-Բալկարիա, Չեչնյա, Ինգուշեթիա, Դաղստան: Պետրոգրադում ղեկավարում է Նարվա-Պետերհոֆյան շրջանի կուսդպրոցը: Նա կրկին ու կրկին լսում է Վ. Ի. Լենինին, հանդիպում Չիչերինի, Ձերժինսկու, Լունաչարսկու, Կալինինի, Կրուպսկայայի և կուսակցության ու սովետական պետության ականավոր այլ գործիչների հետ: Հաճախակի լինում է իր վաղեմի կուսակցական ընկերոջ, 1920—1921 թթ. ՌԿ(բ)Կ Մոսկվայի կոմիտեի քարտուղար Ալեքսանդր Մյասնիկյանի մոտ, աշխատում է Վաղլամ Ավանեսովի ու Վահան Տերյանի հետ, գլխավորում Լենինի ելույթների ու կուսակցական ծրագրային փաստաթղթերի հայերեն հրատարակության աշխատանքները:

1921 թ. ՌԿ(բ)Կ Կենտկոմը Ա. Կարինյանին ղեկավար աշխատանքի է ուղարկում նորաստեղծ Սովետական Հայաստան: Ապրիլի կեսին նա Օրջոնիկիձեի հետ գալիս է Երևան: Մինչև Մյասնիկյանի ու Լուկաշինի ժամանելը (նույն տարվա մայիսի սկիզբը) նա աշխատում է որպես ՀԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար, բոլոր ջանքերը գործադրում դաշնակների փետրվարյան ավանտյուրայի հետևանքները վերացնելու համար: Անձամբ մեկնում է Զանգեզուր՝ Հայաստանում քաղաքացիական կռիվներին խաղաղ ճանապարհով վերջ դնելու նպատակով բանակցելու համար: Կարինյանի կյանքում սկսվում է մի նոր բեղմնավոր շրջան՝ Հայաստանում և ամբողջ Անդրկովկասում սովետական իշխանության հաստատման ու զարգացման պայքարի շրջանը: Ա. Կարինյանը ՀԿ(բ)Կ Կենտկոմի և կուսակցության Անդրերկրկոմի անդամ էր, հանրապետության արդարադատության ժողկոմ, Հայաստանի Կենտգործկոմի նախագահի տեղակալ, ապա և՝ նախագահ, Անդրֆեդերացիայի Կենտգործկոմի նախագահության և ՍՍՀՄ Կենտգործկոմի անդամ:

Կարինյանը կատարում է կուսակցական-պետական կարևոր հանձնարարություններ: Լինելով արդարադատության ժողկոմ, որպես փորձված իրավաբան, նա մասնակցում է երիտասարդ սովետական հանրապետության պետական կարևոր փաստաթղթերի, մասնավորապես Սովետական Հայաստանի առաջին հիմնական օրենքի՝ սահմանադրության մշակմանը: 1921—1922 թթ. Կարինյանը մեկնում է արտասահման (Թուրքիա, Հունաստան, ԱՄՆ) և այնտեղ մեծ աշխատանք տանում Հայաստանի վերածննդի գործում սովետական իշխանության խնդիրներին ու նպատակներին սփյուռքի աշխատավոր հայությանը ծանոթացնելու, նրան մայր հայրենիքի շուրջը համախմբելու ուղղությամբ:

Կուսակցական և պետական գործունեության հետ մեկտեղ Ա. Կարինյանը անդուլ զբաղվում էր գիտական և մանկավարժական-դասախոսական աշխատանքով, Երևանի և Թբիլիսիի բուհերում պարբերաբար հանդես գալիս մշակութային ժառանգության, հայ և ռուս գրականության դասականների մասին դասախոսություններով: 1929 թվականից խմբագրել է «Անդրկովկասի ժողովրդական տնտեսություն» (Թբիլիսի), «Նոր ուղի» (Երևան) հանդեսները: 1932—1933 թթ. եղել է ՀամԿ(բ)Կ Անդրերկրկոմի կուսպատմության ինստիտուտի դիրեկտորի տեղակալ: Դեռևս 1930 թ. անվանի գիտնականներ Մ. Աբեղյանի, Հ. Աճառյանի, Գ. Ղափանցյանի և մյուսների հետ միասին Արտաշես Կարինյանը հաստատվում է հանրապետության գիտությունների ինստիտուտի իսկական անդամ: 1943-ից Կարինյանը ամբողջովին անցնում է գիտական գործունեության հանրապետության նորաստեղծ գիտությունների ակադեմիայում:

Խոսելով Ա. Կարինյանի գրական ժառանգության և նրա՝ որպես գիտնականի մասին, անհրաժեշտ է նշել նրա հրապարակախոսական բեղմնավոր գործունեությունը, հատկապես նախահեղափոխական շրջանում, ընդհատակում եղած ժամանակ: Արտաշես Կարինյանը Լենինի հավատարիմ աշակերտն էր, նացիոնալիստական գաղափարախոսության անհաշտ հակառակորդը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության ջատագովը: Այսպես նրան գիտեին Անդրկովկասի ժողովուրդները:

Կարինյան-գիտնականի հետաքրքրությունները ընդգրկում էին հայ հասարակական մտքի ու մամուլի, հայ-ռուսական գրական-մշակութային կապերի, հեղափոխական շարժման պատմության գիտական պրոբլեմների խիստ լայն շրջան: Գիտական մեծ արժեք են ներկայացնում նրա այնպիսի աշխատությունները, ինչպես «Երկերի ժողովածուն», որտեղ ի մի են բերված հայ և ռուսական բոլշևիկյան մամուլում տպագրված նրա հրապարակախոսական

հոդվածները, 1920-ական թվականների աշխատությունները՝ «Իմպերիալիստական պատերազմը և Հայաստանը», «Դաշնակցությունն ընդդեմ փաստերի», «Հայ ազգայնականների ուղին», «Անդրկովկասը 1905-ին», «Նավթը և հայկական հարցը», «Դաշնակցությունը և իր զինակիցները» և այլն: Կարինյանի գրչին են պատկանում մարքս-լենինյան գրականագիտության վերաբերյալ երկասիրություններ: 1956—1960 թթ. լույս տեսան «Հայ պարբերական մամուլի պատմության ակնարկներ» խոշոր հետազոտության առաջին և երկրորդ հատորները, որոնք մի ամբողջություն են կազմում և գիտական լուրջ ներդրում են հայ պարբերական մամուլի պատմության ուսումնասիրման գործում: Առաջին հատորն ընդգրկում է Հնդկաստանի հայ մամուլի, երկրորդը՝ Եվրոպական հայ մամուլի պատմությունը: Երրորդ և չորրորդ հատորները, որոնք դեռևս չեն հրատարակվել, նվիրված են բուն Հայաստանի (արևմտյան ու արևելյան) մամուլի պատմությանը: Կարինյանի ստեղծագործությունները ներթափանցված են բոլշևիկյան կուսակցականության ոգով:

Մեծ է Կարինյանի ծառայությունները նաև հանրապետության գիտական կադրերի պատրաստման գործում: Չի կարելի առանց երախտագիտության խոսել այն մասին, որ Կարինյանը միշտ ժամանակ էր գտնում ունկնդրելու և օգնելու բոլոր նրանց, ովքեր իր աջակցության ու խորհուրդների կարիքն ունեին:

Գիտական մեծ վաստակի համար Ա. Կարինյանը 1956 թվականին ընտրվում է Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս: Եղել է նրա հասարակական գիտությունների բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղարը, ակադեմիայի փոխպրեզիդենտը: 1960—1963 թթ. Կարինյանը ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր Լենինյան մրցանակների պետական կոմիտեի անդամ էր: Նա բազմիցս ընտրվել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամ:

Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը բարձր են գնահատել Ա. Կարինյանի հեղափոխական գործունեությունը, կուսակցական-սովետական և գիտական աշխատանքը: Նա պարգևատրվել է Լենինի երկու, Հոկտեմբերյան հեղափոխության և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով, իսկ ծննդյան 90-ամյակի կապակցությամբ արժանացավ սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման: Հեղափոխական գործունեության առաջին իսկ օրերից մինչև իր աքանչելի կյանքի վերջը (նա մեռավ 1982 թ.) Արտաշես Կարինյանը իր բոլոր ուժերը, ողջ եռանդը նվիրեց կուսակցության գործին, այն կուսակցության, որի անդամն էր նա ամբողջ 75 տարի:

**Ս. ԽԱՐՄԱՆԴԱՐՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր

# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԵՐԳԻՉԸ

## (ՍԱՄԵԴ ՎՈՒՐԳՈՒՆԻ ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

«ԵՍ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԱԴՐԲԵՋԱՆԻ հրաշալի բանաստեղծ Սամեդ Վուրղունին սիրում եմ իմ ժողովրդի անշահախնդիր ու մեծ սիրով,— գրում էր Ավետիք Իսահակյանը,— նա իր հարազատ ժողովրդի անմարելի աստղն է, որի մեջ փայլատակում են գեղեցիկ երազանքներ, խոհեր ու տենչեր... Իմ բարեկամ Ս. Վուրղունի հոբելյանը սոսկ գրականության հոբելյանը չէ, այլ ժողովրդական տոն է, պոեզիայի ու մարդկայնության տոն...»:

Լիիմաստ ու ամփոփ մի պատմություն, հիասքանչ ու հմայիչ մի աշխարհ, մեր Կովկասը սրտի նույն թելի վրա նույն հմայքով երգող բազմալեզու ժողովուրդների միասնական կամքի ու միասնական հոգու, անհիշելի հավիտենից հնչող միասնության երգն է: Հմայիչ այս աշխարհի հիասքանչ ժողովուրդները միշտ էլ «անշահախնդիր ու մեծ սիրով են սիրել» իրենց այն զավակներին, որոնք երազելով ազգային երջանկության մասին պայքարել են համամարդկային երջանկության համար:

Ահա թե ինչպես էր արտահայտում այդ նույն միտքը Գաբրիել Սունդուկյանը 1911 թվականի նոյեմբերի 29-ին Թիֆլիսից Բաքու, «Նիջաթ» («Փրկություն») ընկերությանը ուղարկած հեռագրում. «Հոգեպես ուրախանում եմ Կովկասի թանկագին զավակ Միրզա Ֆաթալի Ախունդովի հիշատակը մեծարելու առթիվ»: Նույն միտքն էր արտահայտում Ջալիլ Մամեդղուլիզադեն 1928 թվականի փետրվարին Երևանում, Ալեքսանդր Շիրվանզադեի հոբելյանը նշելիս. «Շիրվանզադեն իմ բարեկամն է: Այո, նա իմ հայրենակիցն է իբրև շիրվանցի: Իմ հայրենակիցն է նաև որպես երևանցի: Ես հարյուր ու հարյուր անգամ ընդունել սեղմելով իմ սրտին, ասում եմ. «Կեցցե՛ս, երկար ապրես թանկագին Շիրվանզադե: Սա Բաքվի պրոլետարիատի բարի մաղթանքն է քեզ: Սա ամբողջ ադրբեջանական ժողովրդի մեծագույն ցանկությունն է քեզ»: Վրաց ժողովրդին ուղղված պատմական նամակում Հովհաննես Թումանյանը գրում էր. «Մենք, Կովկասյան ժողովուրդներս, եղբայրներ ենք հավերժ կողք-կողքի, ինչպես մեր հայրենի լեռները՝ ամեն մեկն իր տեղում, իրենց շողշողուն գագաթներով միշտ կանգնած միմյանց թիկունքին և իրենց հիմքերով միացած»:

Այդ միասնական կամքի, միասնական հոգու մասին Համո Սահյանին այսպես էր ասում Սամեդ Վուրղունն իր վերջին հրաժեշտի պահին. «Իմ պատանեկությունն էլ անցել է Ղազախում, Հայաստանի սահմանի վրա: Անենք ինչ՝ սահման: Մենք ապրում ենք ոչ թե կողք-կողքի, այլ՝ իրար մեջ: Հայ նախարարներն ու ադրբեջանցի խաները սահման էին քաշել մեր հողերի միջև, բայց ժողովուրդների սրտերին ոչ ոք սահման դնել չի կարողացել: Ժողովրդի համար հայ ու ադրբեջանցի չեն եղել, եղել են աշխատանք, աղ ու հաց, բարեկամություն, փոխադարձ սեր, փոխադարձ հարգանք ու պատիվ: Ժողովուրդներն իրար օջախից կրակ են տարել, իրար կժից՝ ջուր: Թախիծ են փոխանակել իրար հետ և ուրախություն:

Մի քանի տարի առաջ Սևանա կղզում քամին վերցրեց գլխարկս, մայրամուտի մտերիմ քամի էր, գալիս էր Ադրբեջանի կողմից և կարծես ուզում էր ասել՝ «հանիր գլխարկդ եղբայրական հնությունների առաջ, բայց հայ աղջիկը, ոտնելով, բռնեց գլխարկս և չթողեց ընկնի գետին: Տեսնում եք, ինչ խորհրդանշական դեպք է: Մեր ժողովուրդները խոնարհվել, գլխարկ են հանել իրար սրբությունների առաջ և իրար գլխարկ երբեք գետնով չեն տվել...»:

Հավերժ եղբայրության ամփոփ մի տարեգրություն է ամբողջությամբ վերցրած մեր գեղարվեստական գրականությունը՝ թե՛ հայ, թե՛ ադրբեջանական: Նա լի է «օջախի և գերեզմանի հարևաններ» (Ա. Իսահակյան) հայ և ադրբեջանական ժողովուրդների անկեղծ բարեկամության մասին ջերմորեն գրված փայլուն ու անմոռանալի էջերով: Հիշենք Խ. Աբովյանի ու Հ. Թումանյանի, Ա. Իսահակյանի և Դ. Դեմիրճյանի, Ե. Չարենցի, Հ. Քոչարի և հայ գրականության բազմաթիվ այլ երախտավորների ստեղծած գունագեղ, սրտամոտ պատկերները: Նշենք, որ Նիզամիից ու Խա-

գանից, Մ. Ախունդովից ու Ջ. Ջաբարլիից մինչև Անար ու Էլչինը չկա ադրբեջանական գեղարվեստական խոսքի մի վարպետ, որն իր ժողովրդի անշահախնդիր սերն ու հարգանքը մատուցած չլինի հայ ժողովրդին:

Անկեղծ բարեկամության ու հարազատ եղբայրության այս անլռելի երգի մեջ առանձնապես բարձր է հնչում Սամեդ Վուրղունի մարդասեր ու կենսասեր ձայնը: Նա ապրողի իրավունքով սերունդների հետ զրուցող, մեծ հոգու, վառ տաղանդի տեր բանաստեղծ է: Մայրենի լեզվի բոլոր հնչյուններն իրենց շնչող, քնքուշ նրբերանգներով մեղեդային ու ներդաշն էին հնչում նրա ստեղծագործություններում, բացի «մի կերպ» բառից: Նա «մեղադրում» էր լեզվաբաններին այդ բառը բառարան մտցնելու համար, զգուշացնում մարդկանց՝ «մի կերպ ապրելու» հիվանդությամբ վարակվելուց, կոչ անում բոլորին՝ անթառամ վարդի պես զարդարել հայրենի հողը, չհալչող ձյան պես նվաճել բարձունքները, նուրբ զգացմունքների պես մշտական ապաստան գտնել սրտերում, հիասքանչ երգերի պես հնչել մարդկանց շուրթերին:

Հենց այդպիսին էր ինքը՝ Սամեդ Վուրղունը: Նա «փանջարայից» չնայեց աշխարհին, այլ իր պայծառ կյանքը մինչև վերջ նվիրաբերեց մարդկությանը, ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը, խաղաղության համար մղվող պայքարին, սովետական գրականության գանձարանը հարստացրեց շատ ու շատ արժեքավոր գոհարներով, արդիականության հետ ներդաշն հնչող, կենդանի արվեստի բոլոր հատկությունները կրող այնպիսի մնայուն երգերով, որոնք երբեք չեն դառնա ժամանակին իր դերը կատարած ու մոռացված թանգարանային նմուշներ: Բացառիկ վարպետությամբ ու անսպառ եռանդով, մարդու և կյանքի համար բաբախող սրտի արյունով գրված նրա երգերը այսօր էլ փայլուն դեր են կատարում ադրբեջանական գրականության զարգացման գործում: Նրա ստեղծագործությունը մարդասեր ու կենսասեր երգչի սրտից բխող հիմն է, կյանքի ու պայքարի, կենսուրախության ու հավիտենականության հիմն: Նման երգերի, նման ավանդի շնորհիվ Սամեդ Վուրղունն այսօր էլ մեզ հետ է. հուզվելիս՝ մեր սրտում, խոսելիս՝ մեր շուրթերին, խորհելիս՝ մեր մտքում:

Վուրղունը կյանքի երգիչ էր, մարդու երգիչ, ավելի ճիշտ՝ մարդու սիրահար էր, կյանքի սիրահար: «Թշնամի եմ վաղուց ես խարդախ մութին,— գրում էր նա,— երջանկությունը մեզ այս կյանքն է տալիս, այլ ոչ թե երազի խաբուսիկ փերին»: Ձեռքին քնար, մատներին կոշտեր, նա մրցելու էր կանչում Բայրոնին, գրելու մեզ երջանկություն բերող կյանքի մասին, իր զավակներով հարուստ մեր հայրենիքի մասին, սոցիալիստական իրականության մասին: Իր հերոսներին հարազատ մոր նման միշտ բարի ցանկացող հայրենիքը Սամեդ Վուրղունի համար հասարակությունից, ժողովրդից, մարդուց անբաժան էր: Նրան և նրա ստեղծագործություններին խորթ է այն ամենը, ինչը որ հարազատ չէ մարդ և կյանք հասկացություններին, այն ամենը, ինչը աղարտում է կյանքը և մարդուն:

Խորհրդանշական է, որ Սամեդ Յուսիֆ օղլի Վեքիլովը 20-ական թվականներին պոեզիա եկավ հենց այդ կոչումով, Վուրղուն անունով: **Վուրղուն** հայերեն թարգմանվում է **սիրահար**: Անշուշտ, խոսքն այստեղ ինչ որ մեկին սիրելու, իր սիրտը նրան նվիրելու մասին չէ, այլ մարդկության, ժողովուրդների, նրանց կեցության բարձր իդեալների հանդեպ սիրո և հարգանքի մասին է, դեպի կյանք, դեպի մարդկությունը ունեցած պարտքի մասին: Այն սիրո, այն տառապանքի մասին է, որ կյանքի շնչով լի բովանդակություն, պայծառ մտքեր, հասարակական մեծ իմաստ ունեցող տողեր, գեղարվեստական ամուր հիմք է բերում գրականությանը, նոր ուժ ու սնունդ տալով թարմացնում, ավելի իմաստալից, ավելի մարտական մի ամբիոն է դարձնում նրան:

*Կանչիր, բանաստեղծ, արծվին իր բնից,*
*Ճախրիր ծովերը նրա թևերով,*
*Առաջին սիրո հրով բերկրալից*
*Դու էլ անցիր իմ լույս ճանապարհով,*
*Թող ամեն տողը քո անուշ երգի*
*Հազար սրտերի հազար խինդ բերի:*

Հազար սրտերին հազար խինդ բերելու սիրահար Վուրղունը առաջին իսկ բանաստեղծություններով պատերազմ հայտարարեց մարդու նկատմամբ պարտք ու սեր չունեցող հոգու թշվառության հանդեպ: Դա կռիվ էր հարազատ հայրենիքի, նրա նոր ու երջանիկ ճակատագրի համար, դա երդում էր պոեզիան նոր բովանդակությամբ, պայծառ հավատով, հասարակական մեծ մտքերով ու գաղափարներով հարստացնելու մասին: Դա գրականությանը քաղաքացիական խիզախություն հաղորդելու երդում էր:

Ասպետորեն նվիրված գրական իր հավատամքին, սոցիալիստական ռեալիզմի գեղագիտական սկզբունքներին, արվեստի քաղաքացիականության, ժողովրդայնության ու կուսակցականության պահանջներին, Սամեդ Վուրղունն իր դավանած ճշմարտության արահետով, իր անզուգական ստեղծագործությամբ «բացեց կյանքի նորանոր ծալքերը, որ մարդկանց հոգին ու ցավն իմանա»: Իր պայծառ ու պանծալի կյանքի ընթացքում նա հասցրեց շատ բան անել, բանաստեղծական գոհարներով հարստացրեց հայրենի գրականությունը, իր իսկ ապրած ժամանակը՝ իր գեղեցիկ կյանքով ու գործով, խոհերով, այն մեծ սիրով, որ տածում էր մարդու, հայրենիքի, աշխարհի ու կյանքի հանդեպ: Առաջին իսկ բանաստեղծություններով («Բանաստեղծի երդումը», «Զեկույց», «Ապրիլ», «Լապտեր») նա մրցության հրավիրելով արևին, խոսում էր միլիոնների ձայնով, միլիոնների շնչով, երգում՝ լուսաշող կյանքի մասին, նոր կյանք կառուցող նոր մարդու նորագույն որակների ու հատկանիշների մասին, հանդես գալով որպես ճշմարտության, արդարության պահապան:

Միշտ ըմբռնելով իրական կյանքի, փաստերի, երևույթների իսկական իմաստը՝ 30-ական թվականներին Սամեդ Վուրղունը հանդես էր գալիս որպես հասարակական կարևոր տեղաշարժերի գեղարվեստական տարեգիր: Լայն ժողովրդականություն էին վայելում նրա տառապանքի բովով անցած, ընտիր ձևերի մեջ բյուրեղացած, մտքի ու սրտի միասնությամբ կնքված մնայուն բանաստեղծություններն ու պոեմները: Փաստ է, որ մեծարժեք գեղարվեստական կտավը չի կարող մի ժողովրդի կողմից ընդունվել ջերմորեն, իսկ մյուսի կողմից՝ մերժվել: Քաջ գիտակցելով այդ, Սամեդ Վուրղունը ձգտում էր, որ կտավներն ունենան համամարդկային հնչեղություն: Դեռ երիտասարդ հասակում նրա քնարերգության մեծագույն նվաճումները թարգմանվում ու հավասար ջերմությամբ ընդունվում էին և մյուս ժողովուրդների կողմից: «Սամեդ Վուրղունը,— գրում էր Լուի Արագոնը,— արդի համաշխարհային և սովետական գրականության բարձունքն է»: Հեռավոր Պակիստանից ուղարկած նամակում Նիկոլայ Տիխոնովը նշում էր. «Թանկագին Սամեդ, շատ ցավալի է, որ դու այսօր մեզ հետ չես: Այն երկրում, ուր մենք այսօր գտնվում ենք, լավ գիտեն ու սիրում են քեզ շատերը...»: Հայտնի լեհ գիտնական Անանիաշ Զայոնչկովսկին ուշի-ուշով վերլուծելով Վուրղունի «Ադրբեջան» բանաստեղծությունը՝ գրել է. «Միայն այս ստեղծագործության համար նրան կարելի է իսկական ժողովրդական երգիչ համարել»: 1956 թվականին, երբ անհույս հիվանդ էր բանաստեղծը, իր հոգեցունց և հուսադրական նամակում Գեորգի Լեոնիձեն գրում էր նրան. «Թանկագին բարեկամ ու եղբայր, սիրելի Սամեդ... ոտքի ել, կրկին վառվիր ու բոցավառիր բոլորին...»:

50-ական թվականներին Սամեդ Վուրղունի ստեղծագործություններն իրենց մայրենի լեզվով էին ընթերցում անգլիացին ու գերմանացին, արաբն ու բուլղարացին, չեխն ու սլովակը, լեհն ու ռումինացին, թուրքն ու պարսիկը, չինացին ու հնդիկը, հունգարացին ու մոնղոլը... Աշխարհի 20 երկրների գրողների ստեղծագործությունների հետ Նյու Յորքում տպագրվել էին նրա բանաստեղծությունները «Միավորված ազգերի զինվորական պոեմներ» ժողովածուում, հետագայում նաև իտալական «Ինտերնացիոնալ գրականություն» ամսագրում: Բազմալեզու ընթերցողները Սամեդ Վուրղունին ճանաչում էին նաև որպես տաղանդավոր դրամատուրգի: Նրա պիեսները հաջողությամբ բեմադրվում էին Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի, Երևանի, Թբիլիսիի, Դուշանբեի, Կալինինի, Վոլժսկի թատրոններում, իսկ չափածո դրամաները թարգմանվել և բեմադրվել են Չինաստանում, ԳԴՀ-ում, Չեխոսլովակիայում, Բուլղարիայում և արտասահմանյան այլ երկրներում:

Բանաստեղծ-մտածող, բանաստեղծ-նորարար, իր ժամանակակիցների հերոսական սխրանքները մարմնավորող Սամեդ Վուրղունի հմայքը, նրա բարոյական աշխարհի բարձրագույն չափանիշները առանձնապես հարազատ են հայ ընթերցողներին: Նրա հանդեպ հայ ժողովրդի, Հայաստանի ծնողական սիրո արտահայտությունն է Ա. Իսահակյանի նամակը. «Դու հսկա և տաղանդավոր սովետական բանաստեղծ ես: Հայ ժողովուրդը հիացած է քո բազմազան ու անփոխարինելի պոեզիայով: Հայ ընթերցողներն իրենց սեղանի գիրքն ու սրտակից բարեկամն են համարում քո աշխատությունները»: Այդ սիրո արտահայտությունն է, որ Վուրղունին թարգմանել են Գ. Սարյանը, Ն. Զարյանը, Պ. Սևակը, Վեսպերը, Հ. Սահյանը, Թ. Հուրյանը, Ա. Գրաշին... ավելի քան 20 հայ բանաստեղծներ: Այդ սիրո արտահայտությունն է, որ Վուրղունի մարդկային ու պոետական խառնվածքի մասին սրտագին հոդվածներ ու ուշագրավ հուշեր են գրել Ա. Իսահակյանը, Ե. Չարենցը, Գ. Սարյանը, Ն. Զարյանը, Վ. Անանյանը, Գ. Էմինը, Ս. Խանզադյանը, Հ. Սահյանը և հայ գրականության շատ ու շատ այլ երախտավորներ: 1949 և 1976 թթ. նրա բանաստեղծություններն ու պոեմները առանձին ժողովածուներով լույս են տեսել հայերեն: Իր սիրելի բարեկամին հայ ժողովրդի հարգանքի մեծ տուրքն են Սամեդ Վուրղունի անունով կոչվող գյուղը Իջևանի շրջանում, նրա արձանի բացումը Մեղրու շրջանի Ալդարա գյուղում, «Սովետական գրող» հրատարակչության կողմից այս տարի

ու ժողովրդական դեմքերի հանրահայտ տաղերգող:

Երկար տարիներ Սամեդ Վուրղունը ղեկավարել է Ադրբեջանի գրողների մեծ բանակը, բազմիցս ընտրվել Ադրբեջանական ՍՍՀ և ՍՍՀՄ Գերագույն սովետների դեպուտատ, երկու անգամ արժանացել ՍՍՀՄ պետական մրցանակի: Նա Ադրբեջանական ՍՍՀ արվեստի վաստակավոր գործիչ էր, գիտությունների ակադեմիայի իսկական անդամ, հանրապետության առաջին ժողովրդական բանաստեղծ: Նրա բարի ու առնական պոեզիայի ամենաուժեղ լարերից է ժողովուրդների բարեկամությունը, որն ակունքավորվում է ի՛ր ժողովրդի, ի՛ր հայրենիքի հանդեպ սիրուց: Բայց նա երբեք չսահմանափակվեց դրանց շուրջ մտորումներով միայն: Նույն անկեղծությամբ նա հրճվում էր համաշխարհային հռչակ ունեցող արվեստագետների ստեղծագործություններով, սիրով ծանոթանում և՛ ամենամոտիկ, և՛ հեռավոր ժողովուրդների կյանքին, պատմությանը, մշակույթին: Թարգմանում էր Պուշկինի, Գորկու, Շևչենկոյի, Ռուսթավելու, Ճավճավաձեի, Ջամբուլի և այլոց երկերը:

Խորհրդանշական համընկնում է, որ Պուշկինն իր «Եվգենի Օնեգինը» ավարտել էր 30 տարեկան հասակում, Սամեդ Վուրղունն էլ այն թարգմանեց, երբ նույնպես 30 տարեկան էր: «Ես առանձնապես հիացա, երբ Սամեդ Վուրղունը սկսեց կարդալ «Եվգենի Օնեգինի» իր թարգմանությունը: Երբ Վուրղունը կարդում էր, ես զգում էի, թե ինչպիսի խորությամբ է նա հասկանում Պուշկինին»,— գրել է Եղիշե Չարենցը, որին Կովկասի մեծ բանաստեղծ էր անվանում Վուրղունը: «Վաղուց, շատ վաղուց պատրաստվում էի թարգմանելու Չարենցի բանաստեղծությունները: Նա Կովկասի մեծ բանաստեղծն է, բարեկամներ էինք: Ժամանակին նրանցից մի ժողովածու է թարգմանվել ադրբեջաներեն, բայց քիչ է ժառանգությանը ծանոթանալու համար: Հոգուս պարտքն է թարգմանել նրա բոլոր նշանավոր գործերը»: Չարենցին հայերեն էր կարդում Վուրղունը, հայերեն արտասանում նրա «Ամենապոեմի» նախաբանը: Նա մեծ հարգանքով էր խոսում Ա. Իսահակյանի մասին, նրան աշխարհի ժողովուրդների կողմից սիրված բանաստեղծ էր անվանում: «Վարպետը ամբողջ սովետական գրականության փառքն է, նրա զարդը: Ամեն անգամ հանդիպելիս ես նրան երկար կյանք եմ ցանկանում, գլուխ եմ խոնարհում այսպիսի հանճարներ տվող Հայաստանի հողի առջև»: Հայ գրականության մասին գրած հոդվածում Սամեդ Վուրղունը նշում էր, որ բազմադարյան հայ մշակույթի գանձարանում հատուկ տեղ ունի անմահ բանաստեղծ, քաղաքացի Հովհաննես Թումանյանը: Բանաստեղծը հիացմունքով էր խոսում Միքայել Նալբանդյանի մասին, իրեն հատուկ վարպետությամբ նա թարգմանել էր նրա «Ազատություն» բանաստեղծությունը: Հայրենական պատերազմի ահեղ օրերին, 1942 թ. հուլիսին, Սամեդ Վուրղունի ձեռագրով գրված թարգմանական աշխատանքների ընդարձակ ցուցակում նշվում էին Ն. Զարյանի, Մ. Արազու, Դ. Դեմիրճյանի, Ա. Վշտունու, Գ. Սարյանի, Ս. Զորյանի այն ստեղծագործությունների անունները, որոնք պետք է թարգմանվեին ադրբեջաներեն:

Պատահական չէ, որ Վուրղունը հայ գրականություն մտավ «Սեր» բանաստեղծությամբ: Նրա առաջին հայ թարգմանիչը եղավ Գեղամ Սարյանը: Սամեդ Վուրղունը սիրում էր հայ ժողովրդին, նրա հարուստ ու հնագույն գրականությունը, մեծ հիացմունքով խոսում Հայաստանի մասին: Մանկությունը Հայաստանի սարերում, հայ ընկերների հետ անցկացրած բանաստեղծը, հասակ առնելուց հետո առավել սիրեց ու կապվեց նրա հետ:

*Նորից տեսա քեզ, Դիլիջանի ձոր,*
*Իմ միտքը քո հին օրերն են գալիս,*
*Կյանքը քարվանի ճանապարհ է մի,*
*Հները գնում, նորերն են գալիս:*

*Դրախտ է սա մի, երկինքը վկա,*
*Որտե՞ղ կա մի հող, այսքան արևկա,*
*Հավատ կա այստեղ, անկեղծություն կա,*
*Իմաստուններն այս վայրերն են գալիս:*

Սամեդ Վուրղունը Հայաստանի ոչ միայն ցանկալի հյուրն է եղել, այլև նրա մշտական գրանցված բնակիչը: Միայն «Դիլիջանի ձորը» բանաստեղծությամբ չէ, որ նա սրտաբաց հարևանի երախտագիտությամբ, Հայաստանի մշտական բնակչի հրճվանքով երգել է հայ ժողովրդի հավատի, անկեղծության ու հոգևոր պատմության առաքինության մասին: ՍՍՀՄ գրողների միության «Սասունցի Դավթի» հազարամյակին նվիրված պլենումի եզրափակիչ նիստում նա որդիական երախտագիտությամբ ասում էր. «Սալամ ու սե՛ր Դավթի նման որդիք ծնող մայրերին քո: Իմ սրտից սեր ու ջերմ հրճվանք ստեղծագործ Հայաստանին»:

«Դավիթ», «Դիլիջանի ձորը», «Յոլդաշ, ընկեր, ամխանագո», «Ժողովուրդների օրրանը» բանաստեղծությունները, Արշակի կերպարը «Վագիֆ» դրամայում, «Սասունցի Դավթի» հազարամյակին, Խաչատուր Աբովյանի մահվան հարյուրամյակին նվիրված հանդիսավոր նիստերում նրա արտասանած ճառերը, ամեն տարվա հունվարի 1-ին Ավետիք Իսահակյանին ուղարկվող հեռագրերը ադրբեջանական ժողովուրդն իրավամբ համարում է իր սրտի խոսքը եղբայրական հայ ժողովրդին:

Եղբայրության օրրանի մասին, հայ և ադրբեջանական ժողովուրդների բարեկամության մասին Վուրղունն ասում էր. «Թող որ տաշեղ լինի բարեկամի նվերը, բայց այդ տաշեղով ես ծովեր կանցնեմ: Մեր ժողովուրդների բարեկամությունը կյանքից է մտել գրականության մեջ և այդ հսկային, ինչպիսին գրականությունն է, միշտ էլ պահպանել ու պահպանում է ժողովուրդը: Բարեկամնե՛ր, հագեք զգեստն արևի, ցնծում է սիրտս, երբ դուք հագնում եք ալ»: Նա սիրում էր Հայաստանի բնաշխարհը, բայց ամենաշատ նրա տաղանդավոր, ստեղծարար ժողովրդին, հնագույն պոեզիայի հսկա ներկայացուցիչներին, ցանկանում էր հայ մշակույթի նվաճումներից ավելի շատ բան հասցրած, հաղորդած լիներ իր ժողովրդին, իր ընթերցողներին. «Զարմանալի աշխարհ է Հայաստանը, ձորերի մեջ՝ ձորեր, սարեր՝ սարերի վրա... գագաթներին՝ ձյուն, լանջերին՝ ցորենի արտեր, անտառ ու ծաղիկ, ստորոտներում՝ դեղձ ու խաղող... Դիլիջան, Արարատյան հովիտ, Զանգեզուր... պոեզիա... Աբովյան, Թումանյան, Չարենց... քիչ առաջ մտքով Դիլիջանի ձորն էի մտել և կամաց կամաց գալիս էի ձեզ տեսության: Ինչպես է ժողովուրդը, ինչ է անում Իսահակյանը...»,— սրանք էին հայ ժողովրդի անկեղծ բարեկամ Սամեդ Վուրղունի վերջին խոսքերը Հայաստանի և հայ ժողովրդի մասին:

Պատասխանելով այն հարցին, թե ինչումն է Վուրղունի հանդեպ համաժողովրդական սիրո գաղտնիքը, Կոնստանտին Սիմոնովը գրել է. «Սամեդը հիանալի բանաստեղծ էր, անվեհեր մարդ, հավատարիմ ընկեր: Նա լավ գիտեր, թե ինչ է նշանակում ժողովուրդների անկեղծ բարեկամությունը, բանաստեղծների բարեկամությունը, տղամարդկանց բարեկամությունը: Այդ է պատճառը, որ նա շատ բարեկամներ ունի մեր երկրի բոլոր անկյուններում, նրա սահմաններից դուրս»: Հաստատելով այդ միտքը, Ալեքսանդր Ֆադեևն ասել է. «Ինչ լավ է, որ Սամեդ Վուրղուն կա աշխարհում»:

Եթե նրա կյանքի թելն այդքան վաղ չկտրվեր, ապա այս տարի Երևանում իր գրչեղբայրներ Համո Սահյանի ու Սերո Խանզադյանի հետ կնստեր իր ծննդյան 80-ամյակին նվիրված հոբելյանական նիստի պատվավոր բազկաթոռին ու իր հասցեին կլսեր հայ ժողովրդի խորին պատկառանքով լի բարի մաղթանքների ու երախտագիտության խոսքերը: Բայց ցավալի է բոլորիս համար, որ նրա ծննդյան 80-ամյակի հետ միացված է մահվան 30-ամյակը: Երեսուն տարի առաջ դադարեց բաբախելուց նրա ազնիվ սիրտը: Վախճանվեց Կովկասի մեծ զավակ, ժողովուրդների բարեկամության ջատագով, խաղաղության անկուն մարտիկ, մեծ բանաստեղծ Սամեդ Վուրղունը՝ իր սրտի խոսքը մինչև վերջ չասած: Ոչ ոք չիմացավ, թե ինչքան չբացված կոկոններ, չհյուսված երգեր տարավ նա իր հետ: Դեռ երիտասարդ հասակում նա ասում էր. «Ես մի կտոր հացի համար չեմ գրում, չեմ ասել ես՝ ինձնից թող մնա զրո, դեռ պիտի Բայրոնին կանչեմ մրցելու, կրծքումս մի ճերմակ տետրակ ունեմ դեռ»: Այո՛, նա չըհասցրեց մինչև վերջ լրացնելու իր ազնիվ սրտի ճերմակ տետրակը: Բայց մեզ ավանդ մնացին այն անփոխարինելի, անմրցելի, անմահ երգերը, որ իր կյանքի, տաղանդի, անըսպառ եռանդի ուժով ստեղծել է նա: Այդ երգերն այսօր ապրում ու ապրեցնում են լուսաշող կյանքի, կապույտ արևոտ ափերի երգչին, ժողովրդի անմար աստղին, գրականության անմահ փառքերից մեկին, միշտ սիրո, միշտ գուրգուրանքի և ափսոսանքի արժանի մեծատաղանդ բանաստեղծին, կյանքի, պոեզիայի, մարդու սիրահարին: Անզոր է ժամանակը արվեստի, գեղեցիկի նկատմամբ: Սամեդ Վուրղունի նման մեծ արվեստագետներին ժամանակը չի հեռացնում մեզնից: Սովետական գրականությունը նրան դասում է հավերժ ապրող այն տաղանդների թվին, որոնք չեն մնում այն կետի վրա, որտեղ գտել է նրանց մահը, այլ շարունակում են զարգանալ հասարակության գիտակցության մեջ:

Սամեդ Վուրղունի կյանքն ու գործը արվեստի համալսարան է այսօրվա մեր բոլոր սերունդների համար, նա ներկա է որպես օրինակ ու խորհրդատու, որպես ուսուցիչ ու ընկեր: Որտեղ հայրենիքն է՝ այնտեղ էլ Վուրղունն է, որտեղ բարեկամությունն է՝ այնտեղ էլ Սամեդն է, որտեղ անզուգական ու արդիական հնչեղություն ունեցող պոեզիան է՝ այնտեղ էլ Սամեդ Վուրղունն է: Համազգային երջանկության մասին երազող, համամարդկային երջանկության համար պայքարող մեծ արվեստագետները ոչ մահանում են, ոչ էլ ծերանում, այլ համաժողովրդական փառքի են արժանանում:

**ԻՍՐԱՖԻԼ ՄԱՄԵԴՈՎ**
**Պատմական գիտությունների թեկնածու**

# ՑԱՆԿ

## 1986 թվականին «Լենինյան ուղիով» ամսագրում տպագրված հոդվածների և նյութերի







### ԱՌԱՋՆՈՐԴՈՂ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ԴԵՊԻ XXVII ԿՈՒՍՀԱՄԱԳՈՒՄԱՐ



### ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՆԱԽԱԳԾԵՐԸ



### ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Հանձնված է շարվածքի՝ 17.11.86 թ.։ Ստորագրված է տպագրության՝ 12.12.86 թ.։ ՎՖ 06445։
Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։
Տպաքանակը՝ 17732։ Պատվեր՝ 2169։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2։